# ՄԱՀԱՐՁԱՆՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

ԱՌԱՔԻՆԻ ՊԱՏԱՆԻՈՅՆ

ՅԱԿՈԲԱՅ Յ. ՄԿՐԵԱՆ

Mkrean, Hovhannes
Mahardzank ew hishatakaran...

# ՄԱՀԱՐՁԱՆՔ

ԵՒ

# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

ԱՌԱՋԻՆԻ ՊԱՏԱՆԻՈՅՆ




ԿԱՆԳՆԵԱԼ

Ի ԲԱՐԵԿԱՄԱՑ ԵՒ Ի ՎՇՏԱԿԻՐ ՀՕՐԷՆ



Կ. ՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1877



ՅԱԿՈԲԻԿ Յ. ՄԿՐԵԱՆ



ՈՐ ՅԵՐԿԻՆՍ Ի ՎԵՐ ՉՈՒԵՍ
Ո՛Վ ՅԱԿՈԲՈՒԿ ԻՄ ՈՐԴԵԱԿ,
ԱՌ ՑԱՆԿԱԼԻՆ ՔՈ ՅԻՍՈՒՍ
ԱՌՆՈՒԼ ՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՕԹԵԱԿ։
ՀԱՅՑԵԱ ԽՆԴՐԵՄ ՎԱՍՆ ՀՕՐԴ
ՏԵՂԻ՝ ՓԱՌԱՑԴ ԱՌ ԸՆԹԵՐ,
ՉԻ ՓՈՒԹՈ՛Վ ԵԿԵԱԼ ՀԱՍԻՑ
Ի ՑԵՍ ԴԻՄԱՑԴ ԼՈՒՍԱԲԵՐ։
ՄԱՅՐ ՔՈ ԸՆԴ ԻՍ ՑԱՌԱՊԻ
ԽՆԴՐԷ ԶՀԱՏՈՐԴ ԻՒՐ ՀՈԳԻՈՅ,
ԽԱՒԱՐ Է ԱՐԴ ՄԵԶ ԵՐԿԻՐ
ԱՌԱՆՑ ՍԻՐՈՅ ՔՈՅԴ ԼՈՒՍՈՅ։
Ո՛Հ, ԳԻՏԵՄՔ, ԹԷ ԱՅԺՄ Ի ՏԱՆ
ԵՐԿՆԱՒՈՐ ՀՕՐԴ ԳՏԱՆԻՍ,
ԿՈՉԵԱ՛ ԵՒ ԶՄԵԶ ԱՆԴԱՆՕՐ
ԼԻՆԵԼ ԸՆԴ ՔԵԶ Ի ԲԱՐԻՍ։

ՎՇՏԱԿԻՐ ՀԱՅՐՆ

# ԱՌ

# ԳԵՐԱԶՆԻՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԷՓԷՆՏԻ

## ԸՆՏԻՐ ԵՒ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՈՐԴԻ

## ՎՍԵՄԱՓԱՅԼ ՅԱԿՈԲ ԷՓԷՆՏԻԻ

# ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ



*Թէ քանի անտանելի եւ անհնարին է տոկալ ընդ ծանրութեամբ ցաւոցն որ իբրեւ զիմս են; Դու չ'գիտես զայն, եւ ոչ եւս գիտիցես. եւ չ'գիտելդ եւ չ'կրելդ եւ չ'ճանաչելդ իսկ զայն՝ իմ առաջին բաղձանք են եւ մաղթանք:*

*Հայր Քո որդեսէր, նոյն եւ մարդասէր ու Աստուածասէր, գիտաց զայն եւ կրեաց քանիցս. եւ պահ մի եւ անձն ունէր ընկճիլ եւ նուաճիլ ի ներքոյ սրտաճմլիկ հարուածոցն, եթէ չէր Երկնային Նախախնամութեանն արագապէս ժամանեցուցեալ զՔեզ ի բուժումն վշտացն եւ ի մխիթարութիւն, Քոյովդ մտացի եւ հանճարեղ գործունէութեամբ, այնպիսւոյ Հօր՝ այդպիսի արժանաւոր եղեալ Որդի:*

*Մի՛, մի՛ եղիցի Քեզ լինել իբրեւ զՀայրդ՝ բաց յԱռաքինութենէդ. մի՛ լիցիս երբէք սրտաբեկ եւ վշտակիր իբրեւ Նայն եւ իբրեւ զիս. այլ բերկրեսցիս, այլ հրճուեսցիս աղաւնեաւմ զաւակօք ի յամայր ամս, ընդ առաքինակից Ամոլիդ՝ երջանկութեամբ եւ խաղաղութեամբ:*

*Դո՛ւ, ո՛վ* **Նորատունկ** *Տաճարիդ Աստուածահաստատ Ծառոյն բարութեան եւ գթութեան, Դու եւ յԻս անարժանս ձգեցեր զհովանիդ, եւ սփոփեցեր զիս որպէս զՔո հայր, օժանդակեալ արդեամբ ի կանգնումն տխուր ՄԱՀԱՐՁԱՆԱՑՍ, որոյ Յիշատակն սուրբ է ինձ եւ նուիրական, որպէս եւ Քոյդ լիցի միշտ օրհնեալ յայսմհետէ մինչեւ յաւիտեան:*

**Ազնուական Գերդաստանիդ**
**Երախտապարտ Աղօթարար**
**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ**

*Ի 17 Յունիսի 1877,*
**Ի Կ. ՊՈԼԻՍ.**

# ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ



Ոհ՛, ով՛ Տէր, զիս արտասուաց
Ամա՞ն եղեր Հայոց մանկտւոյն.
Ոչ՛ կարեմ այլ հանդուրժել
Խաւարեցան լալօնք աչացս.
Միթէ՞ գետ իմ Ախուրեան
Որ զգետարտօսր հանեմ առաջ
Եւ նեղում թափեմ աստէն
Ի թաւալեալ յայդ ՄԱՀԱՐՁԱՆՈԴ:
Հայեա՛ց Տէ՛ր. նայեա՛ց ընդ իս,
Ոհ՛, ցաւ եղեւ իմ տառապանք:

ԽՐԻՄԵԱՆ
«ՀՐԱՒԻՐԱԿ ԱՐԱՐԱՏԵԱՆ»

ԱՂԵԿԻԶԵԱԼ հօր վշտակրի միայն է յատուկ զգալ եւ գիտել՝ թէ զիարդ խորարմատ է խոցն ի խորս անդ սրտին, եւ զիարդ դառն եւ սոսկալի կսկիծ մահուան սիրելի որդւոյն, յորժամ լինիցի նա դեռ եւս ի ծաղկափթիթ հասակին՝ թեւակոխեալ ի կատարելութիւն մարդկութեան։

Ո՜հ, Զի՞նչ քան զայն մորմոքելի, քան զայն սարսափելի, տեսանել յանդիման աչաց՝ զԱրեւ կենացդ շիջեալ իբրեւ զճրագ շիջելափառ. զհատոր սրտիդ՝ ի լերդակողիցդ կորզեալ եւ քարշեալ յարտաքս, զմիակ մխիթարութիւնդ, զյոյսդ ապագայ, զբարեկամդ ի նեղութեան, զխորհրդականդ իմաստուն, յափշտակեալ եւ մատնեալ ի հող սեւաթոյր . . . . ։

Աւա՜ղ, եւ ինձ մեղապարտիս վիճակեցաւ լինել Հայր ցաւակիր, եւ ըմպել զայս բաժակ դառնութեան մինչեւ ցմրուրն. բաժակ քամնելի, յորմէ եւ Աստուածորդին ահարեկ լեալ խորշէր, եւ կայլակս ոլոռն

ոլոռն քրտանց յանապական մարմնէն հոսեցուցանէր . . . :

Յակոբիկ, զաւակ իմ սիրուն սիրասուն, գեղապատշաճ, անձնեայ, եւ թիկնաւէտ, հազիւ աւարտեալ զինն եւ տասներեակ գարուն կենացն, գնաց եւ հեռացաւ անդառնալի, եւ եթող զծնողս իւր ի սուգ եւ ի տրտմութիւն անփոխարինելի. վասն որոյ մորմոքմամբ սրտի կանգնեմ նմա զայս ՄԱՀԱՐՁԱՆ ի Յիշատակ յաւիտենական սիրոյ. զի մինչդեռ Հայրս թշուառ կքեալ եւ գճեալ առ նմաւ, ողբացայց զանձնս — մինչեւ խառնեսցին ոսկերք իմ ընդ ոսկերս նորա — Եղբարք նորին եւ Քորք, ընթերցեալ զայս Մահարձան, յիշեսցեն զվազամեռիկ եղբայր իւրեանց զայս, եւ գուն գործեսցեն նմանիլ Առաքինութեան, ուսումնասիրութեան եւ խոհականութեան նորին :

Ծնաւ Յակոբիկ ի մօրէն յամի Տեառն 1857, ի Պարտիզակ, յամսեանն մայիսի որ օր 27 էր նորին, եւ պատճառ ուրախութեան եղեւ ոչ միայն ծնողացն, այլեւ առաւելագոյն եւս Արժանայիշատակ Հօր իմոյ եւ Առաքինազարդ Մօրս. զի դեռ չունէին արու թոռնեակ, զի յետ երից քերց իւրոց (1) եկն յաշխարհ այս արու զաւակ, որ մկրտեալ յեկեղեցւոջ նոյն գիւղի յԱնուն Ամենասուրբ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, յ2 Յունիսի 1857, ի կիւրակէի, ի ձեռն Տէր Սահակ Քահանայի (վարժապետի իմոյ) Փանտիկեան, եւ կնքահայրութեամբ Մելքոն Պետրոս Ստեփանեան Յարութիւնի, անուանեցաւ Յակոբ, ի յիշատակ սիրելի անուան երէց եղբօր իմում Ազնուաբարոյ եւ ուսումնասէր Յակոբիկ Աղայի, որ հանգեաւ ի

(1) Երեքին քորքն մեծ քան զՅակոբիկ, են Մարիանէ, Սուլթանիկ և Մաքրուհի . և կրտսերքն՝ Կարապետ, և Համասփիւռ ;

Տէր յերկրաւոր աւուր կենացն, ի 1852, ի 29 Յուլիսի.

Զմանկութիւն հանգուցելոյս ի սկզբն թողլով այս իւրեանց ուսանելին Նորգեղեալ՝ խանդակաթ ծնողք իւր, եւ ապա յետ թէ զհասակ եւ զծանրաբարոյ բնութեան եւ հանգամանաց Հօրեղբօրն կարէ զտոհմ ճշգրտապէս. զի եւ սա՝ ի մանկական տիոցն սկսաւ ցուցանել զհետաքննին բնաւորութիւն, հարցանելով զամենայն ինչ՝ եւ զպատասխանիսն պահելով ի միտս, եւ յառաջ ոչինչ ընդդիմութեան հետեւելով ընթերցման, եւ սիրով երթեւեկեալ ի դպրոց գիւղին, ուր յառաջադէմ քան զայլ հասակակիցսն գտանէր, մինչ հասանէր յերկոտասաներեակն իւր. տեղւոյն զքսուանք իւր առաքեալ զմատենադարան տան մերում քաւական ճոխունակ.

Այսպէս յամին 1869, շնորհիւ մեծամեծայլ Դերինդրոս Էֆէնտիի Օտեան՝ ամենաշնորհելի բարերարիս, եմուտ մեծաւ աշխուժութեամբ ի Նուպար Շահնազարեան վիճակօթեիկ վարժարան Ազգիս ի Խասգիւղ Կ. Պոլսոյ. ուսումն գիտութեան սիրով մխանալով ծնողական գգուանացն՝ յոր սովորեալն էր, եւ մնաց անդ մինչ ցամն 1872, ուսեալ զուսանելեացն ի դպրոցի զդասս՝ յոյժ յաջողակութեամբ:

Յորժամ փոխադրեցայ ես ի Պարտիզակէ ի Կ. Պոլիս յամին 1870, եւ այսպէս ընտանեօք ի 1871, յանձն առեալ զպաշտօն պատրիարքական փոխանորդութեան հրամանաւ Ամեն. Տ. Մկրտչի Արքեպս. Ս. Արքեպիսկոպոսի եւ Պատրիարքի, եւ հաճութեամբ Ազգային Վարչութեան, յոյժ ուրախացաւ որդեակս իմ, զի կարէր այնուհետեւ մօտ ի տեսանել զծնողս իւր, թէ եւ յոչինչ առաւել զբաղեալ ի գոլն, քան ի մատեանս, ընդ հնոցն եւ պնդագոյնս յաւելեալ».

Այլ աւա՜ղ, զի որպէս վարժարանդ այդ եղեւ պատճառ զարգացման նորին յուսմունս, նմանաւանդ յաւուրս խոհական վերատեսչութեան Տեռ. Համբարձումայ Իփէքճեան, նոյնպէս եղեւ եւ պատճառ հիւանդութեան նորա թոքային ախտի, որ ոչ ի մօրէն եւ ոչ ի հօրէն եւ ո՛չ յեօթն-ճիւղ ազգատոհմէն ժառանգեալ, այլ՝ բաց ի մանկական անզգուշութենէ, եւ ի չարաբաստիկ ինչ դիպուածէ պատահեալ. զի որպէս ինքն պատմէր զկնի միոյ ամի հիւանդութեանն, մի ոմն յաշակերտացն՝ որ ի ննջարանի որդւոյս սենեկակից էր ընդ այլ աշակերտս, կամեցեալ կատակ ինչ առնել, մտանէ ի պահարանն մեծ առ ընթեր մահճակալի որդւոյս՝ մինչդեռ նա նոր ննջէր ի քուն քաղցր, եւ մռնչելով իմն սկսանի ահագին բառաչս արձակել. յորմէ զարհուրեալ որդւոյս՝ յարտաքս ընդոստ յանկողնոյն յառնէ, եւ երկիւղիւ մեծաւ փախուցեալ ի սրահն՝ սկսանի լալ եւ դողալ. հասանեն տեսուչք վարժարանին եւ սրահին, եւ անդորրացուցանեն զահաբեկեալն՝ յայտնելով զխաղուածն իբրեւ կատակերգութիւն. սակայն որ ինչ չարագոյն ներգործութիւն էր ազդական խաղին, այն տպաւորեալ էր ի ներքս ի ժամուն, (ըստ իմ կարծեաց) եւ կատակերգութիւնն փոխանակեցաւ ողբերգութեան . . . . . .

Ո՛չ ընկերասէր որդեակս ետ ինձ զանուն աշակերտին, եւ ո՛չ ես հետամուտ եղէ խնամալ թէ ով ոք էր պատճառիդ այդ անշնորհ. եւ ոչ իսկ յայժմ հետէ կամիմ ծանօթանալ. այլ աղօթեալ վասն ուղղութեան եւ բարեկրթութեան նորին, առաջի ատենի զայս դիպուած չարաշուք, ամենայն վերատեսչաց եւ Հոգաբարձուաց գիշերօթիկ վարժարանաց. որպէս զի ընդ ուսման մանկանց, դիտողութիւնս եւ ամենայն հանգա-

մանաց կենաց նոցին պրասցեն մանրախոյզ նկատողութեամբք, քանզի հաւաստացեալ եմ թէ ի տարապարտ երկիւղէ եւ ի սարսափէ բաղում չարիք հիւանդութեանց գոյանան ։

Յորժամ ի սկզբան Յունիսի 1872, եկն ի վարժարանէ ի տուն, նշմարեցաք ի նմա քան զայլ ժամանակս առաւել նիհարութիւն դիմաց եւ պղտորութիւն աչաց. եւ զի ի գիշերի ի ննջել իւրում, յանկարծ աղաղակաւ ոստուցեալ իբրեւ զմանուկ երկիւղագին՝ ի ծոց մօրն դիմէր, եւ երբեմն եւս քիրտն առատահոս թափէր, եւ սաստկանչիւն իմն հաղայր ։ Վասն որոյ արգելեալ թողաք զինքն ի տան, եւ բերեալ զպատուական բըժիշկն Տօքթօր Քեաթիպեան, աղաչեցաք ուշի ուշով հայիլ եւ դարման մատուցանել. զննեալ բժշկին զկուրծս եւ զեղանակ շնչառութեանն՝ պատրաստեաց զդեղորայս, եւ ասաց ոչ միայն այլ եւս չյաճախել ի վարժարան, այլ եւ չընթեռնուլ ստէպ, եւ չզբաղիլ գրութեամբ ։

Ընդ այս յոյժ տրտմեցաւ ընթերցասէր որդեակս իմ, եւ կամէր հետեւել բժշկական պատուէրին եւ երթալ ի սիրելի վարժարանն իւր, այլ մեք յորդորեալ զինքն ի համբերութիւն եւ աղաչեալ, սկսաք դարման տանիլ ամենայն հոգածութեամբ ։ Յամառայնի գնաց ի ծննդավայր իւր յօդաւէտն Պարտիզակ ընդ մօր իւրում, եւ բաւական կազդուրեալ դարձաւ ի ձմերանի ի Կ. Պօլիս, անկարելի եղեալ դադարեցուցանել ի յարատեւ ընթերցմանէն՝ զոր շարունակեաց մինչեւ ցվերջին աւուրս կենացն ։

Անցանէին աւուրք, անցանէին ամիսք, եւ բոլորէին տարիք, եւ մերթ յուսալից, եւ մերթ կասկածելի, սպասէաք այցելութեան Տեառն, եւ ինքն՝ երբեմն

գաղղիականին թարգմանութեամբ, եւ երբեմն գրութեամբ, եւ միշտ ընթերցանութեամբ անցուցանէր զաւուրս իւր նստելով ի տան, եւ երբեմն ի ջերմն աւուրս երթալով յայց ուսումնական բարեկամաց եւ դրատանց մայրաքաղաքիս, ոչ երբէք զանց առնելով ի գլուխ գեղորայից պատուիրելոց, նաեւ յօդափոխութեան իւրում ի Գալատիա.

Այլ ի վերջ կոյս 1875 ամին սկսաւ ախտն տենդըքելի բանանալ եւ տիրապետել ի նմա. յաճախ անհանգիստ լինէր, եւ հազն սաստկանայր առաւել, եւ երբեմն արեան իսկ հոսէր ի բերանոյն՝ որոյ վասն աղաչէր զմայրն զի մի իմացոյց ես. զի խղճամ զհայր իմ ասէր. եւ ինքն իսկ յուսահատեալ յայսմանէ՝ ստէպ կրկնէր առ Մայրն՝ թէ մի այդչափ խնամով աշխատիր վասն իմ, զի ես չ'կարիցեմ ապրիլ եւ օգտակար լինիլ ձեզ . . . . . :

Ի նմին իսկ վիճակի՝ առաւել եւս աշխատասէր լեալ գրէր հանապազ, հակառակ մերոց եւ բժշկացն խնդրանաց. մինչեւ իսկ մոռացեալ զցաւս իւր զուն գործէր յաւարտ հասուցանել զամենայն զխորհուրդս իւր ի նպաստ դաստիարակութեան Ազգային մանկութեան, որով եւ զ'յօրինեալն իւր Նախաշաւիղ Գիտութեանց եւ Արուեստից, առանց իմս գիտութեան ի կատար ածեալ յանձնէր ի տպագրութիւն: (1)

(1) Ի ծննդեան Տեառն 1876. սիրելին իմ և որդւոյս Գ. Խոսրով Թ. Էսկիճեան եկեալ էր ի Նիկոմիդիոյ ի տեսութիւն որդւոյս՝ մինչդեռ նոր յանձնեալ էր զՆախաշաւիղն ի տպագրութիւն. հարցանէ Գ. Խոսրով, թէ երբ աւարտի արդեօք տպագրութիւն մատենին, պատասխանէ որդեակն իմ. «Շաբաթ մի յառաջ քան զՋատիկն, այսինքն, մեռանելէս ութն օր առաջ», հրաշալի տեսուր և ճիշդ գուշակութիւն, զոր պատմէր ինձ յետ մահուանն՝ Գ. Խոսրով:

Բի՛ւր շնորհակալութիւն Ազնիւ բարեկամին իմոյ Պարոն Ճ. Արամեանի գեղեցկայարմար տպագրութեանն, որ զամենայն ջան ի կիր արկեալ փութացոյց զտպագրութիւնն, որով տասն աւուրբք յառաջ քան զժամն կարող եղեւ տեսանել որդեակս իմ զկատարեալ օրինակս իւրոյ աշխատասիրութեան, եւ ուրախացաւ ի մահիճս ցաւոցն :

Մեծ շնորհակալութիւն եւ Պարոն Յակոբոյ Թաշճեան աշակերտակցի որդւոյս՝ որ եղբայրական սիրով նպաստեալ էր ծախուց պատրաստութեան տպագրելի թղթոցն. Օրհնեսցէ զնոսա Տէր եւ պահեսցէ ի ցաւոց եւ ի տրտմութեանց աշխարհի :

Պատուիրեաց ինձ զմէն մի օրինակս մատենին նուիրել իւրոց ծանօթից եւ բարեկամաց՝ որք եւս իմ էին, զորս կատարեցի. եւ լրագիրք ազգիս գովութեամբ հռչակեցին զօգտակարութիւն մատենին, զորս եւ ընթերցաւ ինքն եւ ասաց. Ահա քեզ յիշատակ որդւոյդ. Ո՛հ, որդեա՛կ իմ, յիշատակ ցաւո՞ց արդեօք, թէ մխիթարութեան . . . . . . :

Ե՛ն են եւ այլ աշխատութիւնք, որպէս Աշխարհագրութիւն, եւ Առողջապահութիւն կիսկատար, եւ Այբբենարան Մանկանց աւարտեալ, յոյժ զուարճալի եւ դիւրինաց՝ զոր եւ պատուիրեաց տալ ի տպագրութիւն. ունէր եւ այլ բազում բանից պատրաստութիւն նիւթոց, զոր առ յապայն կամէր աւարտել, որպէս եւ փափագ հրատարակութեան ժողովրդական անուն լրագրի միոյ, որոյ զյայտարարութիւն եւ զնախաբանն պատրաստեալ է՝ ի իմաստուն խորհրդածութեամբ. Ունի եւ զտպագրեալ յօդուածս բանաստեղծութեան՝ յայլ եւ յայլ թերթս Ազգային լրագրաց եւ առաւելապէս ի Մասիս եւ ի Հայրենիք լրագիրս, մերթ իւրով ստորա-

գրութեամբ եւ մերթ Մանաւաղ կոչմամբ, գրեալ ամենեքին զանխուլ յինէն, յորս տեսանի հմտութիւն իւր ի վերայ լեզուի եւ պատմութեան մերում, եւ խոհական քննադատութիւն անդր քան ըստ չափ հասակին։

Աստանօր ի դէպ համարիմ ի զանազան գրուածոցն անտիպ մնացելոց զհամառօտ հաւաքածոյսն առաջի առնել ընթերցանելեաց, ոչ միայն ի յիշատակ անմոռաց սիրոյ տիօք մանուկ՝ այլ իմաստութեամբ կատարեալ որդւոյս, այլ եւ յօգուտ եւ յօրինակ իւրոց հասակակից ընկերաց։

Ի մասնաւոր Ցիշատակարանի իւրում ընդ դպրոցական բարեկամս իւր խօսելով գրէ ի 1873 հոկտեմբերի.

« Սիրուն բարեկամներ. Գլուխ գլխի տալով ծրագրեցէք ձեր մտաց մէջ 17 տարեկան պատանի մի, միշտ ուսանող գրեթէ հինգ տարիներէ ի վեր. 12 տարեկանէն ց16 տարեկան մեծացած՝ այն պաշտելի, սուրբ ու նախանձելի կենաց մէջ, որ կանուանի Ուսանողի կամ դպրոցական կեանք, 16րդ. տարեկանին հիւանդանայ ծանր կերպով, ու իր չուրջը ոչ ոք տեսնայ՝ եթէ ոչ բժիշկ, քոյր, եղբայր, հայր մայր. — ասի ուսանողի մը համար ոչ-փափաքելի բան մ'է. — ոչ ինչ տեսնէ՝ եթէ ոչ չորս պատեր ներկեալ եւ հայելազարդ. մինչ ինք երկար ժամանակ իրեն պէս զուարթ, կայտառ, ուսանող եւ թերեւս անմեղ ընկերներու հետ ապրած էր. վարժապետք իր ծնողքն եղած էին, եւ իր չորս պատերը՝ տախտակեայ ու զարդարեալ Քարտերն, պատկերներն, նկարներն, գործիներն ու գրքերն եղած էին։ Իմ վիճակս նոյնպիսի է, զոր միայն 1, 2, 3 առ առաւելն 3 1/2 ամիս կրել հագիւ կարէ ոք. եւ չորս ամիս անձանձրոյթ կեցայ

նկարագրեալ կերպիւ. անձանձրոյթ՝ այո՛, զի չէի կարող ձանձրանալ, զի ցաւերս զիս կը տառապեցնէին ։ Հինգերորդ-եօթերորդ ամիսներուն խաբել կամէի ես զինքնս. կապուտիկ Լանայի այս կենաց, մոռնալ ճղնէի զուասնողութիւն, զվերժարան զձեզ, զձեզ . . . . . . Ոհ՛, անմերձելի յանցանք ; ոճիր, զոր խոստովանիմ ։ Այլ պիտի ներուի ինձ, ներուելու է ինձ, զի քառամսեայ ցաւերը՝ զիս ազգականս խորհելու չափ անկարադուցած էին . . . . Բարէ, տասնուվեցամեայ հազիւ էի ես, այսինքն քանի մ'ամիս պակաս, քաջութիւն աչառք էր . . . եւ ես չկարացի զսիմանալ մինչեւ որ 1873. Մայիս 24ին վեշտասան ամս լրացուցի ։»

Մի յայլում թերթի եւս այսպէս գրէ. «Այսօր Նոյեմբեր 1. Տօքթօր Բեաթիպեկեան կրկին եկաւ, եւ ձկան իւղը գործածել ապսպրեց, ձմեռը Երուսաղէմ երթալու խօսք եղաւ . . . Նայինք ծայրը ուր կերթայ, ամառը Պարտիզակ, աշունը Պոլիս, ձմեռն Երուսաղէմ. գարունը . . . ահ գարունը . . . մարմինս ի հող, հոգիս յերկին . . . . ։»

«Ո՛ւր ուզեն կերթամ, կերթամ ի Պարտիզակ, ի Պոլիս, Գատըգէօյ, Սաղիմ, Պէյրութ, Իտալիա, Իսպանիա, Զուիցեր, Գաղղիա . . . . . . կերթամ. նաեւ ուր որ չեն ուզեր. բժիշկք ուրիշ նկատմամբ, ծնողք ուրիշ նկատմամբ. բժիշկ մը չուզեր որ իր հիւանդը մեռնի, հայր մը կամ մայր մը չուզեր որ իր որդին մեռնի, չուզեր որ իր որդին երկինք երթայ. — սակայն ինչու չեն ուզեր. — միթէ երկինք նուազ յարմար ու գեղեցիկ տեղ մ'է հիւանդի մը համար . . . . . . . ։

«Մի օր գիրքերս կը շարէի, արկղը բացի, առաջին գիրքը որ ձեռք առի՝ եղաւ Անճիւեռ Թեքաւիեւրիէ,

Պուշաբաթ ։ Մեքենաբար բացի եւ աչքիս հանդիպեցաւ, բժշկին նշանակած դեղերէն միոյն անունը, որոյ հանդէպ գրուած էր « Կուրծքի տկարութեան համար փորձուած, մանաւանդ երբ ցաւը նոր սկսած է ։» Միւս դեղին անունին տեղը բացի՝ գրված էր — « Այս դեղը կը տրուի երբ կուրծքի ցաւը կամ թոքախտը յայտնապէս իւր նշանները տուած է . . . ։

«Աստեղ է թէ կուրծքի տկարութիւնը տիրել էր իմ վերայ մինչ ես պարզ հարբուխով վարակուած կարծէի զիս ։ Գիշեր եղաւ մտատանջութեամբ ; եւ կերակուր բնաւ չի կերայ ։ Դեղերս աչքիս առջեւն են ։ Բայց այս տկարութիւնը, որ ժառանգական չէ՛ . ուստի է, ասացէք ինծ դեղեր . ոչ ոք կը պատասխանէ ։ Վարժարանս միտքս եկաւ . ո՜հ, անոր, նորէն անոր . ուր ոչ ցաւ կայ եւ ոչ վիշտ, եւ ոչ այդպիսի բաներու գիտակցութիւն ։ Խինդ ու խնծիղ, սէր եւ ուսում, ուրախութիւն եւ կրթութիւն . ասոնք էին մեր կեանքի սահմանը ։ Միտքս եկաւ ամառուան շող օրերուն մէջ մեր ցատկել վազել ու խաղալը զօրէն արծւոյ թռչելով ։ Եւ երբ կը քրտնէինք ու կը տաքնայինք, զովանալու համար անուշ զեփիւռին դէմ կուրծքերնիս բաց, եւ աղբիւրին պաղ ջուրը պապակ բերաննուս կուտայինք, եւ շուտով կը յաղորդէր տաքին պաղը ։ Հօս կանգ առ գրիչ, լռեցիր տարակուսանքս . . . ։

« Իմ բնութիւնս փափուկ էր, վասնզի պզտիկուց տկար մեծցած էի եւ փափկութեամբ խնամուած ։ Հետեւաբար քիչ թէ շատ փափուկ խնամքներ անպակաս պիտի ըլլէին, ո՛ւր եւ ըլլէի, մանաւանդ վարժարանի մէջ ։ Բայց այս բանը նկատուած չէր եւ ո՛չ իմ կողմէ ։ Կան բնաւորութիւնք որ կը պահանջեն հանգիստ կեանք, երկար քուն, տաք օդ ։ Մանաւանդ այս

վերջինները բոլորովին չէ կային Շ. Վարժարանին մէջ, եւ որոց հիմայ կը զգամ որ ես շատ պէտք ունէի։ Ես միշտ հարցուխ կը լինէի, եւ առաւօտները, ձմե-ռը մութին, ամառը դեռ արեւ չելած, երբ ննջարա-նէ դասարան կիջնէինք քիթս իմ չէր, եւ հսկիչուհերս գլուխ կը ցուցունէին։ Այս մէկ։ Այլ եւ ամառուան մէջ քրտնելէս վերջը հովին դէմ կրծաբաց կանգնիլը, ձմեռը՝ ցերեկը ցուրտ ճաշարանի եւ զբօսարանի մէջ մնալը, գիշերը պաղ ննջարանի մէջ պառկիլը։ այո՛, այո՛, զիս թունաւորեցին։ Այժմ կը զգամ, ինչ որ չէի զգար երբեմն։ Մեր դպրոցներու մտաւորական կըր-թութեան հոգ տանելու հետ, պէտք է մարմնական (ֆիզիքական) դաստիարակութեան ալ մեծ ուշով խը-նամք տանիլ. միայն մի մարմնամարզութիւն բաւական չէ մարմինը առողջ պահելու համար. լաւ միտ առէք։ Առողջ միտքը՝ առողջ մարմնի մէջ կը լինի։»

* * *

« Ցունվարի 6։ Հազս քիչցած էր. բայց շատ հոգ-նելու չէի, եթէ ոչ յետ կը դառնար։ Կուսարոն (կուպր) կը խմեմ. մի անտանելի դեղ, սակայն ըստ առածին թէ՝ օգուտը լեղի դեղերուն մէջ է, այս կուսարոնը ինձ օգտեց։ Այսպէս է ամեն լեղի բան. այո, իր մէջ օգուտներ ունի, մեր կեանքի մէջ պատահած լեղի դէպ-քերը՝ լեղի բայց օգտակար դասեր կու տան։ Լեղի քինքինան, լեղի՝ բայց անհրաժար ըմպելիք մը կը տայ։ Շատ հեռուն չերթանք, լեղի, կծու, ցուրտ օդով Ցունվարի 6ը, քաղցր Ծննդեան Տօն մի ունի իր մէջ։

«Եւ ուրիշ քաղցր բան մի ալ, զոր այժմ կիմանամ։ Գ. Վահրամ բարեկամս եկել կ'ասէ ինձ թէ այս գի-

չէր Գ. գիւղի դպրոցին նպաստ մը հայթայթելու նպատակով Գ. Փ... ճառախօսութիւն մ'ըրաւ անէ. որոշեցինք գիշերը միասին երթալ։ Եւ ինչպէս չերթալ, քանի որ նպատակը բարեգործական է. ճառելի նիւթը տնտեսական է։ Օրհնեալ ըլլին Գ. Փ.ի պէս անզուգական այլ անկուտ ազգասէրները, որք ի սէր ազգին ամէն տեսակ հալածանքները կրելէ վերջ, իրենց հացին թշնամութիւններ տեսնելէ վերջը, դեռ վառ կը պահեն իրենց սէրը դէպի ազգը։ Եւ այդ թշնամութիւնները լո՛ւր անձն իմ, կը նիւթուին այնպիսի անձինքներէ, որք իրենց պաշտօնին բնութեամբը գըրկարաց ընդունելու էին այսպիսի ազգասէրները։

«Բայց անհաճոյ երեւցաւ ինծ Գ. Փ.ի ատենաբանութիւնը, որուն բնաբանն էր «Ազգային յառաջդիմութեան համար դրամ պէտք է թէ մարդ»։ Ատենաբանը բացարձակապէս եզրակացուց «Մարդ միայն»։ Անհաճոյ էր այս, զի ունկնդիր ժողովուրդին մէջ օգտակար սկզբունք մը չը սերմանուեցաւ։ Նոյն ժամուն մի քանի ունկնդիրներու համառօտ կերպով յայտնեցի իմ տարբաձայն ըլլալս, եւ ոմանք համակերպեցան ինծ, եւ ոմանք ալ զիս խօսիլ կշտամբեցին իբր նիւթապաշտ, եւ ի հարկէ օգտապաշտ ըլլալ կարելի չէր։ Միւս տարի. Ոչ միայն հացիւ կեցցէ մարդ. — այլ եւ դրամով — յարեցի։

«Եւ յիրաւի, երբ քննենք լուսաւորեալ ազգերու լուսաւորութեան պատմութիւնը, կը տեսնենք որ մարդու հետ մշտնջենաւորապէս կապուած է դրամը, ինչպէս որ այս երկու բառերը տառերու կողմէն անբաժանելի եւ մօտաւոր ազգականութեամբ կապուած են։ Այն բոլոր ահագին հաստատութիւնները, համալսարանները եւ վարժարանները, կարելի չէր կանգնել եթէ

միայն մարդիկ իրար գալով ատէին — կանգնեմք ։ Դրամը պէտք էր որ ատէր, — կանգնեցէք ։

«Ճանճնազարեանը մարդ էր, եւ իւր սրտին մէջ շատ օգտակար եւ անկեղծ խորհուրդներ ունէր. ինչպէս Կիլիկիոյ Հայերու համար մի հանքային դպրոց բանալ Մանչէստրի մէջ. բայց դրամ չունէր. եւ որք ունէին՝ դրամնին զատ բան չունէին . . . ահա կը տեսնուի որ դրամը մարդին, մարդն ալ դրամին կապուած են անբաժան եւ միանձնապէս ։ Վերջապէս Ճանճնազարեանը դրամ ունեցաւ որ կարող եղաւ իւր համառուն վարժարանը ընծայել Ազգին ։ Այս մեծ մարդը, կըրթութիւն եւ Հայութիւն բառերուն հետ, անշուշտ մեծ նախատեսութեամբ կապակցէր դրամ, եւ զայն միշտ կը քարոզէր ։ . . . Մի ազգի յառաջդիմութեան համար, կը կրկնեմ, մարդ եւ դրամ ի միմիանց անբաժան գտնուելու են, որ այն յառաջդիմութիւն լոյս տեսնէ ։ Ով որ կարդացած է Թոմաս Հանրիկոս Պեօքլի «Անգլիական քաղաքակրթութեան» պատմութիւնը, այդ սքանչելի գիրքը, պիտի տեսնէ որ սխալ չեմ, բայց ինչ օգուտ որ մեր երիտասարդութիւնը իւր օգուտին ծառայող գիրքերը չճանաչեր ։ Այն գրքին մէջ կը կարդամք որ «Խելքէն վերջը Կարողութեան ամենահաստատ աղբիւրն է Հարստութիւն» . կարողութիւն բառը լաւ նկատեցէք .

Կարողութիւն, դպրոցներ պահելու .

Կարողութիւն, ազգին որբ եւ աղքատ մանկտին կրթելու .

Կարողութիւն, գիրքեր, ընտիր գիրքեր հրատարակելու .

Կարողութիւն, յառաջ դիմելու ։

Մարդ այնչափ լաւ խելք կունենայ որ գիտէ մի

կանէ եւ եթէ դրամ չունենայ՝ կը յուսահատի , եւ ինքն ալ ու գիւտն ալ մոռացութեան մէջ կը մնան , մանաւանդ Հայոց մէջ ուր դրամին քով մարդ չ՚գըտ-նուիր , եւ մարդուն քով դրամ ։

«Մարդ այնչափ լաւ խելք կունենայ որ լաւ գիրք մի կը դրէ , բայց տպագրութեան համար դրամ չունենար , եւ փոշիներու տակ կը թողու իւր քրտինքներու վաստակը ։ Մեզ անյայտ չեն օրինակներ ։

«Ուրեմն մարդուն դրամ պէտք է , դրամին մարդ , վասն զի աղքատութիւնը՝ խելացութեան ծախիչ է ։

«Զուր չէր կրկներ Նալբանդեանցը թէ «Հացի խըն-դիրը մահու եւ կենաց խնդիր է .» եւ կը գոչէր . քարոզել մարդը , քարոզել տնտեսական խնդիրը , քա-րոզել ազգութիւնը . . . ժողովուրդին փրկութիւն ։»

«Կարելի է մի օր իմ եղբայրներս նախընթաց օ-րագրութիւնս կարդան եւ դրամը շատ յեղյեղուած տեսնելով զիս արծաթասէր կարծեն տղայաբար ։ Ոչ , ես դրամ , դրամ գոչեցի ազգային յառաջդիմութեան ճանապարհը լաւ յարդարելու համար , եւ ոչ թէ որ ինձ առեն «Արծաթասէր նիւթապաշտ ես ։» Այդ բանը Հայ հարուստներուն ասացէք , երգելով

Թէ կուզես յարգեն
Պատուեն միշտ ըզքեզ ,
Փառքի մէջ խըղդեն .
Ինչո՞ւ հոգ կանես ։

Անմիտ են մարդիկ ,
Քսակըդ լեցնես
Շատ ոսկւով դեղնիկ ,
Դու ալ մեծ մարդ ես ։

Փոյթ չէ թէ մարդ մ'ես
Խոտի պէս բուսած,
Վարդի փուշին պէս
Անպիտան եղած։

Եղբր թէ կուզես
Տգէտ կոշտ կոպիտ,
Այբ խակ չը գիտես.

Ուսումնականներ
Բոլոր կեանքիդ մէջ,
Ձես քաջալերեր.

Գիրք մի չես կարդար
Ոչ մէկ աղքատի՝
Մէկ փարա չես տար.

Քո ազգի սիրուն
Քրտինք մի թափած
Թէ եւ չունիս դուն՝
Հըգդ, արծաթ ունիս
Անըսպառ դրամ
Որով միշտ պատուիս.

Փարան կուտայ փառք
Էշուն կովուն իսկ,
Փարան է կաշառք.

Բայց թէ չունիմք փող
Մի տեսուիմք ձեզի
Այլ շուտ մտնեմք հող։»

## «ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԻՒՐ ԴԱՐՄԱՆՆԵՐՆ Ի ԳԻՒՂՕՐԷՍ»

### ԳՈՐԾ ԳԷՈՐԳ Մ. ՇԻՐԻՆԵԱՆԻ ԻՊԱՂՋԷՃԻԿ (1)

«Այս գրքոյկը կը սկսի մի գեղեցիկ Յառաջաբանով, եւ որովհետեւ տգէտ գիւղացին գոհ կը լինի իւր աղքատութեան մէջ Աստուած սանկ կամեցեր է, ասելով թեւերն ի ծոց՝ բերանն հովին բանալ, հեղինակը լաւ կասէ. «Որպէս զի գիւղացին իւր աղքատութիւնը ճակատագրի չ'տայ եւ նորա պատճառները ուրիշ տեղ չ'փնտռէ, նախ աղքատութեան բուն պատճառները նշանակեցինք, եւ ապա նորա դարմաններուն վրայ մի առ մի խօսեցանք ըստ կարգի:» Եւ այսպէս Պ. Հեղինակը շատ լաւ կը բացատրէ աղքատութեան պատճառները մանրամասն խօսելով, եւ նորա դարմանը կը գտնէ Ուսման, Գիտութեան, Կրթութեան եւ Երկրագործութեան մէջ: Հեղինակը որպէս փորձ երկրագործ, այս մասին խիստ լաւ կը խօսի, երկրագործութիւնը աղքատութեան ուղղակի դարման համարելով. եւ գոհ չ'լինելով այդ չափով, այլ եւ իւր բնակած գաւառին այլ եւ այլ կողմերու հողերը կը քննէ, նոցա բնութեան յարմար ցանքերը կը թուէ, իւր կեցած գեղին ժողովուրդը, Պարտիզակի (Պաղչէճիկ) ժողովուրդը աչքին առջեւ ունելով՝ նորա վիճակին յարմար հրա-

(1) Պ. Գէորգ Շիրինեան բնիկ Ազպըտերցի ի Նիկոպօլիս, ուսեալ ի Կ. Պօլիս, դասատու կարգեցաւ գպրոցին Պարտիզակի վասն Հայ և Գաղղիական լեզուաց յամին 1864, առ որ զնախնական ուսմունս առնոյր Հանգուցեալն:

հանդէներ կը տայ, ընկերութիւններ կազմելու, խնայութիւնք եւ պարզամտութիւնը յարգելու խրատներով։

Երբ կը նկատենք մեր ազգի թշուառութեան պատճառները, կարելի չէ չուրախանալ, որ այս օրինակ գիրքեր կը հրատարակուին, քարոզող Հացի խնդիրը. բայց կարելի չէ չ'նկատել նաեւ՝ որ Հայ ազգին մէջ դէթ ի Թուրքիա, այս առաջին անգամն է այսպիսի գործնական ուղղութեամբ գրուած եւ բոլորովին Հայոց վերաբերեալ գիրք մի հրատարակուիլը . . . ։ Ափսոս, շատ ափսոս, որ մեր գրականութիւնը սահմանափակուած է վէպերու եւ ժամանակիս պահանջման անյարմար դասագիրքերու հրատարակութեամբ ։ Չես տեսներ Ազգային պատմութիւն անունին արժանաւոր գիրք մի, չես տեսներ մեր վիճակին յարմար Առողջաբանութեան, Անասնոց տնտեսութեան եւ երկրագործութեան գիրքեր զորս Ծիրինեան խրատամբ կը պահանջէ Աւետարանին մօտ ։ Հայուն տնտեսական դրութիւնը բարւոքելու համար եղած այս առաջին փորձը շատ փափաքելի է որ ընդհանուր ընդունելութիւն գտնէ, ոչ միայն գիւղացիներէ, այլ եւ քաղաքացիներէ, որոց շատ յարմար կու գայ Շռայլութիւն գլուխն այդ գրքոյկին ։ Մի բան միայն որ կարելի է հրատարակ հանել իբր թերութիւն՝ այն է՝ որ գրքուկը հասարակ ժողովուրդին այնչափ հասկանալի կերպով չէ գրուած, փափաքելի էր որ աւելի պարզ գրուէր. այնպէս զի ժողովուրդը դիւրաւ հասկանար, մանաւանդ մի փոքր բառագրքուկ գրքի վերջը շատ օգտակար կը լինէր ։

* * *

*Յունվարի 12 ։ Այսօր բոլոր ընկերներս Շ. Վարժարան կը դառնան, ես միայն կը մնամ ի տան ։ Չեմ գիտեր այս պատճառաւ է որ այսօր անսովոր բան մը կը զգամ անձիս վերայ . . . . ։*

* * *

*Յունվար 13։ Այս գիշեր շատ անհանգիստ լուսցուցի, եւ այժմ էլ զանձս լաւ չեմ զգար . բժիշկը եկաւ, արգելեց ամենեւին գրելէ, ուստի ոչ ինչ չունիմ քեզ ասել, ո՛վ իմ սիրելի Յիշատակարան ։ Գերեզմանը կարծեմ օրէց օր կը մօտենամ . . . . ։ — Լաւ կաց, կամէ Յիշատակարանս, դեռ չը յագեցաւ միթէ այդ գազանը քեզ պէս ծաղիկներ խամրելէ։— Յագենա՛լ. . .։*

*Երեք բան կայ չը յագենան*
*Այն սոսկալի մեծ Գերեզման,*
*Երկիր որ միշտ ջուր կը ծծէ,*
*Կրակ որ ինչ տեսնէ լափէ ։*

*Յիշատակարանս չը պատասխանեց, վասն զի Սողոմոնի այս խօսքերը ճշմարտութիւն էին ։ Եւ ես ալ որ այս չափը զուարճանալու համար խօսեցայ, հարկադրուած եմ այսօր այս չափով գոհ լինիլ ։*

*Զուարճանալու համար . . . . ։*

*Հազացող հիւանդ մի ինչպէս կարող կը լինի զուարճանալ, միթէ նորա բոլոր կեանքը Մահ չէ՞։*

*Ի՛նչ սխալ գաղափար . հիւանդին բժիշկը՝ գլխաւորաբար զուարճութիւնն է եւ զուարթութիւնը ։ Ձանձրոյթը մի թոյն է ։ Հազար բժիշկ ըստ իս անօգուտ են, եթէ հիւանդը միշտ մռայլ տխրութեան մէջ մնայ,*

հող եւ կասկածներ սնուցանէ իւր մէջ, այդ բաները անվրէպ մահու կառաջնորդեն զմարդ ։ Պղատոն իսկ կը համարէր որ ծիծաղը եւ զուարթութիւնը կեանքի երկարացուցիչ են ։ Ես այս բանին խիստ լաւ համոզուած եմ, որ հիւանդ մը միշտ զուարթ լինելով, եւ իւր հիւանդ բնութեան պահանջած պիտոյից համեմատ շարժելով, բժշկէ աւելի բժշկող է իւր ցաւերուն ։

* * *

Յունվարի 15։ Այսօր օդը արեւ է ։ Պոլսի մէջ ձմեռ ժամանակ արեւոտ օր մի, անդին բան է Պոլսի կիներու համար. ահա պատուհանէս կը տեսնեմ խումբ խումբ կիներ, մերթ կառքով, մերթ հետիոտ, եւ ահա օրիորդ մի քայլելով à la chique. Եւ ինչպէս կարող էր քայլել, քանի որ կուրծքին forak դրած, ոտքին նեղ պօթիններ հագած. Հաւատաքննութեան պատիժներու ենթարկուած է կարծես ։

Ով մարդ, եթէ աշխարհիս վերայ
Բարեգործութիւն
Անել կուզես դուն,
Սա օրիորդին
Տանջալից foruhն
Փոքր ինչ թուլացուր,
Բըշիկ մի լայնցուր
Որ խեղճ գեղեցիկ
Հանգչի մի ժամիկ ։

Հապա եթէ այն ծանրածանր շինեօնները Հայ կիներու գլխուն թագաւորող չըլինէին, արդեօք որչափ

խեղճացի գլուխներ պիտի ունենայինք, մինչդեռ այժմ այդ անփոփող Շինեան չուզեր եւ կ'արգիլէ՛ որ խելքը այսուան բանը Հայ կիներու գլուխը մտնէ։

* * *

Յունվարի 16։

Միշտ տկար եմ, շատ կը հազամ,
Բայց ես մահէն, ոհ, չը վախնամ.
(Մայրս չը թողուր որ աւելի գրեմ։)

* * *

Յունվարի 17։

Խաղ շատ գիտեմ, ձայն չունիմ,
Ծափ բան տ'անեմ, փող չունիմ։

* * *

Յունվարի 18, 19, 20, 21, 22։

— Ինչ ՏԷՐՏ անես,
Ձայն կերազես։

— Իմաստունի հետ քար էլ կրես
մի տրտնջար.
— Յիմարի հետ լաւ էլ ուտես
մ'ուրախանար։

— Թուխ աչուկներ պէտք է մօրուց,
Վերջը շուտ գայ չինծու ղարղուց։

— Զօր ուզէ ունեօղ մարդուն հոգւէն
Ոսկի ալ տան բնաւ չուտեմ։

ՍՈՂՈՄՈՆ

— Կրթէ տղադ երբոր ճանբայ
Պզտի ելնէ.
Ա՛լ այն ճանբան չը շտկուիր
Երբ ծուռ բռնէ։
Ծառի ծառը կը շտկեն միշտ
Երբ նոր տունկ է։
Իսկ երբ հիննայ ամեն ջանքդ
Պարապ տեղն է։

* * *

Յունվարի 23. Սենեակէն դուրս ելնելու արգելուած հիւանդը, երբ զուարճանալ ուզէ, միջոց չը պակսիր։ Այսպէս ես ալ Աստուածաշունչը փոքր քրոջս ձեռքը տալով Սողոմոնի առակները կարդալ կուտայի, եւ բերնուց ոտանաւորի կը վերածէի, ահա քեզ մի այլ օրինակ.

1. Ով կարէ գտնել
Կին առաքինի
Որ գոհարէն էլ
Արժէ աւելի։

2. Էրիկ այնպիսույն
Միշտ վստահ սրտի,
Եւ իւր կենացը մէջ
Բան չը կարօտի.

3. Կին առաքինի
Մէջ բոլոր կնոց
Նման կը փնի
Միշտ պատճառ բարեաց։

4. Կնիկ ժրաջան
Միշտ բանի քթան
Իւր բոլոր գործեր
Գործէն իւր ձեռքեր։

— Աղքատ մարդուն չիք բարեկամ՝
Բայց հարուստին շուրջը՝ շատ կան ։

— Կին գեղեցիկ որ չէ խոհեմ
Կը նմանի այն խողերուն
Որք կախած են իրենց քիթէն
Ոսկի օղեր, գինա զարդարուն ։

— Այսօր կուշտ ես
Մեղր կայ եւ չես ուտեր,
Վաղն անօթի
Լեղին անգամ չես մերժեր ։

— Կին շնորհալի պատիւ կը ստանայ
Իսկ որ ուժ ունի կը հարստանայ ։

* * *

Յունվարի 27։ Իմ բարեկամներէս մին Գ. Վ., խիստ խորհուրդ կը հարցանէ ամուսնութեան վերայ. ահաւասիկ կաւանդեմ զայն Յիշատակարանիս ։

Ո՛վ որ իւր անձը մի ուրիշի հետ պիտի կապէ մըշտապէս, թող փորձէ նախապէս ։

Ո՛վ որ իւր սիրտը մի ուրիշ սրտի պիտի նուիրէ, թող քննէ թէ իրար հետ պիտի յարմարին ։

Ո՛վ որ անխորհուրդ ձեռք զարնէ այս օրինակ մահու եւ կենաց խնդրի, թող իմանայ որ ծուռ ընտրութեան զուր զղջում կը յաջորդէ ։

Հարսանիքը մի ուրախութեան դուռ է, այլ երբ սէրը սիրոյ չը հանդիպի, թշուառութեան դուռ եւ դժոխքի փուռ կը լինի ։

Այսպիսի խորաններ կը տան մեզ մինչ խելացիները. — եւ ստոյգ է որ սէրը նուիրական բան է, — սուրբ անօթ կը պահանջէ որ նորա մէջ պարունակուի. վասն եթէ այդ անօթը դրսէն վերնիճով յղկուած, ներսէն կարիճով լցուած է ։

Երկու բան, որ ամենահարկաւոր է այսպիսի ընտրութեանց մէջ, քննել զանձը, քննել Նորա կամ Նէրա անձը. իմաստուն մարդիկ այսպէս կը սահմանեն ։

Պէտք է մարդ իւր անձը եւ սիրտը քննէ, որ իմանայ թէ արդեօք կարո՞ղ է արժանաւորութեամբ կապուել այդ սուրբ կապով։

Պէտք է քննէ թէ ինչ պարտաւորութիւն պիտի ըստանձնէ ամուսնութեամբ ։

Պէտք է քննէ թէ արդեօք կարո՞ղ է այդ պարտաւորութիւնքը կատարել ։

Եթէ հեշտախտութիւնը կը դրդէ զմարդ ամուսնութեան, այն մարդը արժանաւոր չէ այդ բանին. ուստի պէտք է նախապէս այդ կիրքը ճնշել, անհետացընել բնաւորութեանը մէջէն ։

Պէտք է ճնշէ իւր բարկացող կիրքերը՝ ներողամիտ գտնուելու իւր ընկերուհու տկարութեան, մանաւանդ որ Նէ իւր ձեռքին տակ անձնատուր եղած է բոլորովին վստահանալով իբր հօր, իբր եղբօր ։

Արդ, մարդը որ քննեց իւր անձը, այժմ թող քննէ Նէրա անձը ։

Պահանջելով, որոնելով Նէրա սրտի մէջ քաղցրութիւն եւ հեզութիւն ։ Ոչինչ առաւելութիւն չը կայ մի վատթար կնոջ եւ մի միտքը մշակուած մանկամարդի մէջ, եթէ այս վերջինը միտքը մշակելուն հետ եւ չէ ազնուացուցած իւր սիրտը ։

Պահանջելով՝ որ Նէ ուսած լինի ոչ թէ դպրոցի հա-

մօր, այլ կեանքի, անմահութեան համար, որպէս կամէ Սենեկայ։

Պահանջելով՝ որ Նէ մի սիրտ ունենայ յարմար քեզ ցաւակից, սփոփիչ եւ օգնական լինելու։

Պահանջելով՝ որ Նէ դէպ քեզ բոլոր սիրտով սիրէ. ծանկալէս գիտնալով որ ինչպէս դու Նորա միտքով կը մտածես, Նէ քո միտքով կը մտածէ քո զգացած սէրը տածելով դէպ ի քեզ։

Պահանջելով՝ որ Նէ առողջ լինի հոգիով եւ մարմինով. քանզի լաւ իս՝ հիւանդութիւնը երջանկութեան ծախիչն է, մանաւանդ հոգւոյ հիւանդութիւնը, յաւիտեան վատաբաղդութիւն է։

* * *

Յունվարի 28։ Մ'Հ, հազար անգամ գերադասելոց գեղեցիկ է առաքինի եւ առողջ կին մի։

Եթէ դու կատարեալ կերպով վստահ ես քո սրտի կատարելութեան եւ ազնուութեան վերայ, մի երկնչիր առնուլ մի 16 ամեայ աղջիկ, մինչդեռ նա անարատ է որպէս մանուկ, անկեղծ, դեռ բնաւ ճանօթ աշխարհի բաներու։ Նէ քեզ կը գայ որպէս երեխայ, եւ դու խնամութեամբ եւ յուշիկ յուշիկ Նորա ուսուցիչ եւ կրթիչ լինելով, կը կրթես զՆէ, աշխարհի պատկառութիւնները կը ճանչցունես, ճշմարիտ երջանկութեան ուր պահուած ըլլալը կը յայտնես։

* * *

Յունվարի 29։ Երջանկութիւնը պահուած է, ահ, նոյն իսկ Նորա ձեռքին մէջն, երբ Նէ

Բարեբարոյ եւ կրթեալ լինելով գիտէ իւր էրիկին սիրտը սիրով գրաւել.

Գիտէ իւր գործին ջնեռ ալնդել,

Միշտ վայելչութեամբ եւ չափաւորութեամբ հագուիլ.

Գիտէ հեզութեամբ եւ քաղցրութեամբ վարուիլ.

— Համեստութեամբ եւ անկեղծութեամբ խօսել,

— Իւր էրիկին ցաւերուն ցաւակից եւ ուրախութեանն ուրախակից լինիլ.

— Հլու եւ հնազանդ լինիլ.

— Իւր զաւակներն ազգին օգտակար անդամ ընծայեցունել ։

Բայց դու, որ կամուսնանաս հարստութեան համար, դրամի եւ ոչ թէ սրտի հետ, քեզ համար չեն այս խօսքերս. ի բաց գնա. մարդկութեան անարժան էակ ես դու ։

* * *

Փետրվարի 1։ Պ. Հ. բարեկամս կուզէ որ իր Զարմուհի զաւակը Սիօնի քոյրերուն (Sœurs de Sion) վարժարանը ղրկէ, որպէս զի Ֆրանսերէն էլ սովրի ։

Բոլոր ուժովս դեմ կեցայ եւ վերջապէս չը թողուցի. բայց երբ բարեկամս ասաց թէ՝ «Այդ տեղ Ազգային դաստիարակութիւն չը կրնար առնուլ կասես, բարեկամ. բայց մր ազգային դպրոցը ղրկեմ որ առնու . . . սաա տեսնեմ . . . ։» Թող. . թող. . տունը մնայ, կրմկրմացի. բայց սա պատասխան չէր նորա հարցման ։

Այս տեղ ցաւ է ինձ յիշել որ մեր ազգը աղջկանց կրթութեան մասին գրեթէ բոլորովին անփոյթ կը գտնուի. այդ մասին փոյթ տանող հարուստ գերդաստաններն ալ շնորհքով Ազգային վարժարան մի չեն տեսներ, որ այն տեղ ղրկեն իրենց զաւակները, այլ

ի հարկէ ստիպուած կամ տունը դասատու կը բռնեն (եթէ գտնեն) կամ, Քոյրերու դպրոցները կը ղրկեն ։ Հարկ է յիշել նաեւ թէ կան հարուստ դերդաստաններ էլ որք իրենց թաղին դպրոցը լաւ վիճակի մէջ ալ լինի, դարձեալ հոն չեն ղրկեր հպարտութեամբ ։ Եւ միայն աղքատ ընտանեաց աղջիկները կերթան ; որով հետեւաբար դպրոցին հասոյթը կը նուազի, եւ յորմէ շատ անպատեհութիւնք առաջ կը գան ։

Իրերու այս վիճակին ոչ ոք կը տենչի դարման մի տանիլ. ընկերութիւններ չեն կազմուիր այդ նպատակով, եւ եթէ կազմուին էլ, գիսաւոր աստղի նման երեւիլն ու անհետիլը մէկ կը լինի ։ Այսչափը Կ. Պոլսի համար ։

Գաւառներուն գալով կարող եմ ասել առանց բացառութեան բոլորն ալ խոր քնով կը խորդան, եւ եթէ մի ոք ելնէ աղջկանց կրթութեան կարեւորութիւնը քարոզէ, տկարամտութեամբ կը պատասխանեն, « Ինչ որ կելնէ, կարդալ գիտցողէն կելնէ ։ » եւ թէ «Աղջիկ մը կարդալ ալ գիտնայ, գրել գիտնալու չէ ։ » Սակայն գոնէ մանչերու կրթութեան փոյթ չեն տանիր ։

Անշուշտ ամեն գաւառ իւր փոքր ի շատէ լուսաւորեալ երիտասարդութիւնն ունի. նոցա պարտքն է այս բաներուն վերայ խորհիլ . . . Ո՛հ, ինչ կասեմ. Հա՛յ երիտասարդութեան . . .

Եւ Սաւուղ ընդ մարգարէս .՛ .՛ .՛

Ճշմարտութիւն է, պարոններ, որ մի ազգի ապագային բարօրութիւնը նոյն ազգի մայրերու լուսաւորութենէն կախում ունի, ինչպէս որ մի ընտանիքի բարօրութիւնը, նոյն ընտանեաց մօր լուսաւորութենէն։

* * *

## ՓԵՏՐՎԱՐ 3

## ԶԱՐՄՈՒՀԻՆ ԵՒ ՏՕՂԱՄԱՆ

—

*Տօղաման*

*Որուն հայք Մատնաշուրթ*
*Անուն տան.*
*Զարմուհեայ քնքուշիկ*
*Տանջէ արդ զմատիկ ։*

*Բարեկամք միշտ պարտին*
*Որ իւրեանց ծանօթին*
*Ցաւերուն*
*Մասնակցին ։*

*Ես որ եմ բարեկամ*
*Եւ եղբայր վաղաժամ.*
*Զարմուհեայ ցաւերու*
*Սփոփանք գտնելու*
*Փափաքով,*
*Զայս տողեր*
*Քովէ քով*
*Եմ բերեր ։*

*Ոհ, ես ալ երբեմըն*
*Քաշած եմ այդ ցաւըն ,*
*Նա միայն մի մատ*
*Ցաւ տալով գոհ չ'ըլնի .*
*Այլ ամբողջ թեւիկը*
*Պաշարէ անգութը .*
*Մատնաշուրթ մի սուր է*
*Որ մըխի եւ զարնէ ։*

Կասես թէ անգութ ոք
Ձեռքն առած մի սըլաք
Անդադար վար ու վեր
Խայթխըթէ կարեվեր։

Այլ պէտք է սփոփուիլ
Այդ չափով գոհ լինիլ.
Ո՛հ, կրնաք, թէ ուզէք
Դեղ գտնել, հարուստ էք։

Ձեր կեցած քաղաքէն
Հինգ վեց օր հեռուէն
Հազարով
Աղջիկներ
Հարիւրով
Մանչիկներ
Աղքատ են
Եւ չունին
Ո՛հ, հաց իսկ, որ ուտեն.

Եւ քաղցը դուք գիտէք.
Ցաւեր տայ աղէկէզք.

Ձեզ հետ միշտ դուք ունիք
Խընամօղ ընտանիք,
Աղքատը մահէն զատ
Ունի՞ մի հարազատ.
Որ հաց տայ
Քաղցուն դէմ
Որ դեղ տայ
Ցաւին դէմ։

Ո՛հ, պէտք չէ տրտնջել
Ցաւիդ դէմ նստիլ լռել,
Մ'ետ բերէք զայն Թշուառք
Ի՛Աստուծոյ տուէք փառք։

Մինչ դուք նստած լիք սեղաններ ձեր առջեւ
Կը պարարուիք. — մեծ ղամբարներ ձեր վերեւ.
Ձեր համազգի խեղճ եղբայրներ, ոհ, սովը
Մեռցունէ կոր. սիրտ չը մնաց ձեր քովը։

* * *

Փետրվարի 6։ Մարգարէութեանց գիրքերը կարդալ իմ զբօսանքներէս մին եղած է. այսօր Եսայի Մարգ. Գ. Գլ. 16 համար կարդացի. կարծես թուն այժմեան քաղաքացի Հայ կիներու համար գրուած. ահա ինչ որ կը յիշեմ.

Հազիւ տէրը որոտաձայն ցոյց տուաւ
Զար իշխանաց վատ գործերուն՝ իւր զայրոյթ.
Դարձաւ յանկարծ բարկութեամբ լի ինձ ասաց,
Տեսայ հպարտ, սէգ եւ լկտի, վատ բնոյթ։

Սիօնի չար աղջիկները որք բարձրավիզ
Կուրծք կիսաբաց փողոցի մէջ կը քալեն,
Շաչիւն հանեն իւրեանց տանտան ոտքերով
Նայողներու լրբութեամբ աչք կը նետեն ։

Հագնին գինտեր, չղարչատեւ ապարօշ,
Գանգուր կանեն իւրեանց մազեր բարձրածալ
Եւ կը կապեն գօտի արծաթ եւ օղեր
Ու ցանցակերպ ոսկիաթել վարսակալ։

Դրնեն մատնի, բեհեղէ քող եւ խոյրեր
Կախեն մէջքէն շղթայակապ քօղ-մօնէ
Սուրբ գրքի տեղ անուշ հոտի տուփերով
Եւ հայելեօք, իւեանց տունը լեցուն է։

Այլ պիտի գայ, որ այդ ամեն իբր հով
Պիտի ցնդի եւ յանկարծուստ չքանայ,
Արծաթ գօտու տեղը չըլլան տի կապուի
Անուշ հոտին տեղ փտութիւն պիտի գայ։

Եւ այդ գանգուր խոպոպ մազեր պիտի թափին,
Նոցա տեղ կնտութիւն շուտ տեղ պիտի տայ,
Գեղեցկութիւն ընդ միշտ անհետ պիտի լինի
Նոցա դէմքը ա՛լ թառամած պիտի մնայ։ (1)

* * *

## ԱՌ ԲՌՆԱՒՈՐՍ

Եսայի ԺԷ. 12։

—

Վա՜յ ձեզ ժողովուրդ բռնաւորք
Ձուր գառաք զերթ ծով ալեկոծ
Հեղեղասահ յորդ ջրոց պէս
Ձուր աղմըկիք դուք հոծ ի հոծ։

Այլ գոչեցէք որչափ կամիք
Աստուած տեսնէ պիտի ըզձեզ

(1) Այժմու կիններու սարքն ու զարդը այնչափ կը գերազանցեն Մովսիսական դարուց կիններունը, որ անկարելի է երեւակայել թէ Աստուած իր զայրոյթը որչափ սաստիկ պիտի ցուցանէր՝ եթէ ներկայ դարուս մէջ Մարգարէի շնորհաց արժանաւոր մարդեր գտնուէին։

Այս խօսքիս մէջ սուտ բան կայ, ո՛վ Թերթատակարան։

Դառըն պատժովք յանդիմանէ .
Ցայնժամ պիտի ցրուի ձեր դէզ ։

Պիտի փախչիք յոյժ ընդ հեռու
Որպէս մժեղ վարեալ հողմոյ
Ընկած առաջ խիստ մըրրկի
Պիտի ցնդիք զօրէն փոշւոյ ։

Այո , Այո , պիտի տիրէ
Ամենուդ մէջ խռովութիւն
Որպէս ճանճեր դուք ամենքդ
Պիտի ջնջուիք յերեկոյին ։

Եւ ազատ օդ գերեվարեալք
Պիտի շնչեն յառաւօտու ,
Լաւ իմացէք , այս է բաժին
Բռնաւորաց ՚ւ անխիղճներու ։

1875

* * *

## ՈՂՈՔ.

Դանիէլի ողբք Գլ. Թ.

---

Յիշէ՛ մեզ Տէր ինչ որ ցայժմս մեք կրեցինք եւ տանջեցանք ։
Մեր սեպհական շատ իրերէն յանիրաւի զրկուեցանք
Մեր երկիրը անհաւատն ու անօրէնը իւր ճանկն առաւ
Մեր ժամերն ու տնակները մեր թշնամւոյն ձեռքն անցաւ ։

Եղանք որբեր , մեր մարք եղան որբ եւ այրի
Մեր մարք անկան ներքեւ նոցա անգութ սրին ,
Ինչ որ մերն էր , մեզ չը տուին եւ փոխանակ
Մեր ուզածին նախ եւ առաջ առին ստակ ։

Ջուրը մերն էր, դրամ տուինք եւ խմեցինք
Փայտը մերն էր, արծաթ տուինք եւ վառեցինք
Իբր գըրաստ սայլին լծուած հալածուեցանք
Այլ փոխարէն հանգստութիւն ինչ չունեցանք ։

Հաց չը գտանք. կշտանալու յուսով թողինք
Ըզ հայրենի մեր սուրբ երկիր, եւ գնացինք
Օտար երկիր, ծագէ ի ծագ այս աշխարհի
Հալած մաշուած ի մէջ քաղցի եւ աշխատի ։

Հարք մեր եղան անմիաբան, եւ թողուցին
Որ թշնամիք ինչ որ տեսնեն առնեն տանին,
Նոցա գործոց անհամ պտուղ մեք վայելեմք
Այժմ որ այսպէս թշուառութեան մէջ ինկած եմք ։

Որք երբեմն ծառայք էին մեզ հնազանդ
Տիրեցին մեզ, եւ արկին զմեզ խիստ պարաւանդ,
Սովն էլ տիրեց եւ անօթի թողուց ըզմեզ
Ուռաւ մորթ մեր որպէս եղած հրակէզ ։

Անկան կանայք սուրբ Սիօնի լուրեանց վսեմ
Վէհ պանծալի եւ անարատ վիճակներէն
Անօրինաց ձեռքը ինկած անպատուեցան
Իսկ կոյս աղջկունք Յուդայի մէջ պղծըվեցան ։

Մեր իշխաններ նոցա ձեռքով ի կախաղան
Տարապարտուց անարգ կերպով կախուեցան
Ծերունիք մեր եղան անարգ անպատիւ
Նոցա մազեր փետփետեցին որպէս խռիւ ։

Երկիւղ տիրեց ամենուրեք. ծերք չը կրցան
Նստիլ իրենց տնակներուն չէմքին վրան ,
Երիտասարդք վհատեցան յուսահատած ,
Քնարն անկաւ նոցա ձեռքէն ահաբեկած ,

Ուրախութիւն մեր սրտերուն ոսկէ աղբիւր
Ցամաքեցաւ եւ չորացաւ ի մի աւուր ,
Խաղալք մեր կաքաւք եւ ցնծութիւն տէլլուք
Անհետացեալ փոփոխեցան ի խոր սուգ ։

Այս աղէտքով սիրտք մեր նկուն նուաղեցան
Եւ մեր աչեր արտասուքով միշտ թաց եղան ,
Զի Սիոնի վերայ աղուէսք կը պըտըտին ,
Եւ մեք օտար յաշխարհի կամք վայրամատին ։

Որ յաւիտեան կաս ի յերկինս , ով գթած Տէր
Մինչ ի սպառ մոռացար մեզ , հարեալ լքեր ,
Ընդէ՞ր թողուս զմեր երկիր թշուառացեալ ,
Դարձո մեզ Տէր . եւ մեք դարձցուք անդ նորոգեալ ։

1874

* * *

## ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ

1. Ներկայէն մէջ ամէն բան՝ յարգ
Պատիւ ու փառք
Կը վայելէ , թէ եւ ամբոխեղծ
Վատթար ու կեղծ .
Բայց անարգեալ կը մնայ դուրս
Ճշմարտութիւն ։

2. Առաջինները զուր խնդրեն քեզ,
   Զո՛ւր են, ինչ են...
Թէ չէ հեղուկ մի անկայուն
   Վազուկ սահուն.
Զուր կուզեմ քեզ բերել լեզուիս
   Միշտ կը փախչիս,
Միթէ խաղաս այս աշխարհէս
   Գնացել ես։

3. Աստ՝ ուր պատիժ ու մահ ես դուն
   Ճշմարտութիւն՛
Ուր կեղծն ու սուտ, խաբշիկն ու վատ
   Կան միշտ ազատ.
Ուր կեանք պատիւ կը վայելէ
   Որ կը կեղծէ.
Ուր կը գարշին փախչին ի քէն
   Իբր ի մահէն. Ճշմարտութիւն։

* * *

## ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ

Տասնեց տարվան կայ թէ չը կայ
Նա կարճատես կը լինի
Ինչ որ տեսնէ զարդ կամ մօտայ
Նա իւր վէրայ միշտ կը կրէ։

Ուսանող է՝ եւ դպրոցին
Ինքը Մենտոր կամի լինել
Աշակերտին վարժապետին
Եւ ամենին գերազանցել։

Ոչ իւր բառքով ոչ լաւ վարքով,
Զեվզեկութեամբ, ազնուութեամբ.
Եւ մի ակնոց թամբած քթին
Կարծէ լինել մարդ զարգացմամբ։

Դասատան մէջ էն շատախօս
Խօսքեր խօսի վայրաբան
Իւր ընկերաց մի Զօյիլոս
Դարձած, կանէ զանոնք այպան։

Կարգը երբ գայ Հայերէնի
Տաճկերէնի կամ Պատմութեան,
Ձեռքը առած նա տետրակ մի
Տողեր տողէ անհամ, համբակ։

Երբոր ասես «դասիդ ինչու
Մտիկ չանես». — Է՛հ, Հայերէն
Դու ինչ կարծես, պէտք է մարդու.
Eh bien, բաւ է Ֆրանսերէն։

Երբ հաստատես այս պէտք է.
«Ես հինգ տարի ձեզ դաս կը տամ.»
Ասելն իւրեան մի լաւ զէնք է.
(Այլ նշանակ տըգիտութեան)։

Քըսան տարվան եղաւ արդ նա
Բարակ bâton իւր ձեռքն առած
Փոքրիկ ֆէս մի աչքին վրայ
Խահվէտան մէջ է նա բազմած։

Ձեռքին թըղթեր ըսկրանմպիղ
Աչքին ակնոց ոսկեջըրած.

Պարտայած է նա խուսմարի
Քիթը կախած եւ արտնեղած ։

Հայրն իւր խանութ կը դնէ զինք,
Բայց խիստ շուտով տուն կը ղրկէ
Թէ չէ երկու ամիսէ վերը՝
Սնանկութեան ձայն կարձակէ ։

Ոչ Ազգ գիտէ ոչ Հայութիւն
Հայ լինելուն իսկ կարմըրի
Ուժով դրկած զեվզեկութիւն
Տունը լցած parfumerie ։

Դուքանին մէջ լաւ գրքի տեղ
Paul de Cokeի ունի romans ,
Գեղեցկութեան անուանի դեղ
Poudreի իւղի հարիւր աման ։

Ճերմակ գոյնը en égale doze
Շատ ընդհանուր եղած է հոս .
Հայու տղուն brune դէմքին
Blanche են շատ աղջիկ եւ կին .

Դու չես գտներ գոյն plancheի
Այս ամենք ձեւան պէս կաշի
Ունին Պատէնտ. — Մի հարցաներ,
Կասեն poudreի գինն է շատցեր .

Ֆրանսայի parfumerieք
Չեն հասնիր կոր գործել փոշիք
Ժամ չորս եկաւ ալ malgré
Հայ պատանին պիտի ելնէ ։

Ներքեւ բարձին նախ կը փնտռէ
Թէ հո՞ն է դեռ մէջն amori
Որ մինչ ի լոյս երազական
Տըւաւ ցնորք Հայ տղեկան ։

Ու ի վերջոյ բարեհաճի
Երթալ քովը իւր դարանին
Կառնէ առջեւ մեծ miroir
Ներկէ ուշով ուր որ noir ։

Կամ թէ բիծեր կան շատ փոքրիկ
Նա ձեռքն առած poudreի տուփիկ
Ապա սըրսկէ մի mille fleurs
Հայլին նայի ոլոր մոլոր ։

Ու Հայ տղան à gentlement
Եղաւ աղւոր իւր դեղերէն ։

Բարեւ չըտար նա Հայերէն
Իրեն նման զեվզեկներ յետ . . . ։
Bonjour bonsoir Ֆրանսերէն
Իւր լեզուէն քաղցր է ու՛ անոյշ ։

Ու Հայ տղան կերթայ կուգայ . . .
Սիրտն ուր ուզէ, տղեկը չը կայ,
Հայրն ողջ լինի, արծաթ շատ կայ
Ծախսելու ակս վազէ երթայ . . . .
. . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . .

Այս շուտ կը գայ չաշխատողին
Կողոպտութեան խեղճ օրերը ։

Յանկարծ կը գայ խելքն ի գլխին
Հայու տղուն ։

Եւ մաքերը
Նա ձեռքն առած կը մտածէ
Ah! que les temps sont changés ։

* * *

### ԽԱՂ

ԸՍՏ ՀԻՆ ՀԱՅ ԽԱՂԱՍԱՑԻՑ

—

Երթանք նայինք ինչ կայ ծովին
Ինչ՞ն է այդ ուռուցք նաւին ։ —

« Գտանք տեսանք նաւ կայր ծովին,
Լայն կտաւներ լարուած նաւին,
Հով կը փչէր մէջ կտաւին
Կտաւն ուռէր ի դէմ հովին ։»

Երթանք նայինք ինչ կայ ծովին
Ինչ՞ն է այդ ուռուցք նաւին
Եւ նաւը կայ ծուփ յալիքին ։ —

« Գտանք տեսանք նաւ կայ ծովին
Լայն կտաւներ լարուած նաւին
Հով կը փչէր մէջ կտաւին
Կտաւն ուռէր ի դէմ հովին
Հովն շարժէր, ծփէր զալին,
Ալին զարնէր, շարժ տայր նաւին ։»

Երթանք նայինք ինչ կայ ծովին
Ինչքն է այդ ուռուցք նաւին
Եւ նաւը կայ ծուփ ալիին
Ի՛ալին փրփուր հանէ քարին։ —

« Գացանք տեսանք նաւ կայր ծովին
Լայն կտաւներ լարուած նաւին,
Հով կը փչէր մէջ կտաւին
Կտաւն ուռէր ի դէմ հովին
Հովն շարժէր ծըփէր ղալին,
Ալին ղարնէր, շարժ տայր նաւին
Նաւէն փախէր, ղարնէր քարին
Քարն ուժ կուտար այն փրփուրին։ »

Երթանք նայինք ինչ կայ ծովին
Ինչքն է այդ ուռուցք նաւին
Եւ նաւը կայ ծուփ յալիին
Ի՛ալին փրփուր հանէ քարին
Քարն ինչպէս է կայներ ծովին։ —

« Գացանք տեսանք նաւ կայր ծովին,
Լայն կտաւներ լարուած նաւին,
Հով կը փչէր մէջ կըտաւին
Կտաւն ուռէր ի դէմ հովին,
Հովն շարժէր ծըփէր ղալին,
Ալին ղարնէր, շարժ տայր նաւին
Նաւէն փախէր ղարնէր քարին.
Քարն ուժ կուտար այս փրփուրին
Ի՛ինք չէր շարժէր ի մէջ ջուրին
Զի. լաւ յենած էր աւազին։ »

Ա՜յ աւազին
Նաւ կայր ծովին
Լաթ կայր նաւին
Հով կայր լաթին
Ջուր կայր հովին
Փրփուր ջուրին
Քար փրփուրին
Աւազ քարին ։

* * *

## ՑՈՐԵԻ ԱՆԿԵԱԼ

—

1\. Յարմատէդ
Դու խլուած
Հէգ տերեւդ
Թառամած.
Ուր դիմես
Թըռուցիկ
Դու այդպէս
Շրջմոլիկ ։

2\. Իմ միակ
Ապաւէն
Մի կաղնի
Էր արդէն՝
Խիստ փչօղ
Մըրըրկին
Եւ ձմրան
Սուր քամին,

3\. Յարմատէն
Թաղթաւալ
Ջիմ կաղնին
Բազմածալ՝
Յանկարծուստ
Ի գետին
Զարնելով
Կործեցին ։

4\. Եւ ես այժմ
Անճըրկած
Տընանկէս
Զըրկըւած՝
Էտանէշըէա
Շըրջմօլիմ
Աստ եւ անդ
Թափառակիմ ։

5. Ընդ առաջ
Մըրրկին
Ես ընկած
Ո՞ւր մղիմ.

Ա՛նդ երթամ,
Անդ, ուր որ
Գիտ' երթան
Սուրբ շուշան.

Կարմըրուոր
Ահ, Նոյն իսկ
Վարդն աղուոր։

* * *

«Քրիստոնեայ,

Աւետարանը ձեռքդ առ, սրտիդ մէջ ընդունէ զանի, հետեւէ՛ անոր, եւ Աստուծոյ խոստացած երանութիւնը կը ժառանգես յԱնդեկանն։

Աղօթք ըրէ։

Ուր որ կուզես աղօթէ, քու աղօթքդ միշտ ընդունելի են, երբ ի սրտէ են. Եկեղեցւոյ եւ տան մէջ աղօթելուն մէջ տարբերութիւն մը չը կայ, եթէ չես կարել Եկեղեցի երթալ։

Աւելի լաւ է որ դուն քու հեղինակութեամբդ աղօթես, եւ ոչ թէ ուրիշին գրած աղօթքներովը. վասն զի աղօթքը նաեւ խոստովանութիւն է։

Անարժան քահանաներու մի խոստովանիր, եւ երբ Եկեղեցւոյ ճշմարիտ պաշտօնեայք սպառած են, միայն Աստուծուդ խոստովան լե՛ր։

Սիրէ Ազգդ, սիրէ Եկեղեցիդ, սիրէ՛ Քրիստոսը, մի՛ մոռնար Հայրենիքդ....։»

ԲԱՒ ՀԱՄԱՐԵԱԼ *զայսքանս ի բազում գրութեանց իմաստասէր որդւոյս, գամ արդ յիշատակել արտասուահոս գրչաւ, զվերջին աւուրս ցաւագնեալ կենացն, թէ եւ զայնոսիկ ի գրի առնուլ հաւասար իցէ սայրասուր սլաքօք կրկնակի խոցելոյ՝ զվիրաւորեալն արդէն զսիրտ բազմավիշտ ։*

*Արդ՝ որպէս ի վեր անդր յիշեցի, երթալով երթայր եւ զայրանայր հիւանդութիւնն անողոք, մինչեւ սպառել եւ ձայնին եւ չկարել ուտել ինչ կամ ըմպել. դեղորայք ոչինչ օգտէին. Մեծ. Տօքթօր Բեաթիպեան երբեմն այց ելեալ՝ զամենօրեայ խնամատարութիւնն յանձնեալ էր Տօքթօր Ն. Մէզպուրեանի, որ դրացի գոլով մեզ եւ սիրելով զորդեակն իմ, կանխէր հանապազ, եւ զկարեւորսն ի գործ դնէր. սոքա երկոքեան բազում խնամս ցուցին անձանձրոյթ, վասնորոյ զիմ հրապարակական շնորհակալութիւնս մատուցանեմ եւ այսու ։*

*Իսկ ի 6 Փետրվարի 1876, գայ յայցելութիւն որդւոյս բնիկ Նիկոմիդացի Տօքթօր Յ. Կիրակոսեան, որ ուսեալ յԱմերիկա զարհեստ բժշկականութեան Նմանաբուժական եղանակաւ (Հօմէոփաթ), եւ որ ունելով ընդ մեզ բարեկամութիւն, եւ յոյժ մտերմաբար սիրելով զորդեակ իմ, արդահատի ի դժնդակ վիճակ նորին ցաւոց, եւ առաջարկէ՝ զի յետ այնու ինքն դարմանեսցէ իւրով եղանակաւ։ Հաւանի որդեակն իմ մտադիւր. եւ յորժամ յերեկոյի գնացի առ ինքն, պատմեաց ինձ զամենայն՝ ընդ որ հաճեցայ եւ ես. եկեալ եւ բժշկին ի նոյն ժամու վերստին, ձեռնարկեաց ի*

դարմանատարութիւն մեծաւ ուշադրութեամբ և անվհատութեամբ մինչև ցվախճան։ Երկիցս յաւուր այց ելեալ՝ ոչ միայն ամոքէր զցաւ հիւանդին յուսալից բանիւք և մխիթարէր զնա և զմեզ, այլ և զիւր անէր ուտելոյ և ըմպելոյ զսակաւապեան՝ առաւելագոյն խնամ տարեալ ցաւոց կոկորդին։

Ուրախ լինէր որդեակ իմ յորժամ տեսանէր զՏ. Կիրակոսեան, և մոռանայր զտագնապ ցաւոց իւրոց, և տայր պատմել նմա՝ զվարժարանաց և զհամալսարանաց և զարուեստից Միացեալ Նահանգաց Ամերիկոյ, և նախանձաւոր լինէր թէ զիարդ Տաճկաստան տակաւին զուրկ ի լուսաւորութեանց գիտութեանց նոցին գտանի . . . ։ Երախտագէտ պարտաւորութիւն է ինձ՝ որպէս վասն նախագրեալ արժանաւոր բժշկաց, նոյն և յաղագս պատուական անձն այսորիկ Ազնիւ Տօքթօր Կիրակոսեանի, խոստովան լինիլ՝ թէ ամենայն անձնանուիրութեամբ ջան եդեալ մաքառեցաւ ընդ անհնարին ախտին, զի մի իսպառ տանջեսցէ. և եղև հիւանդին բարեկամ ի նեղութեան, և մխիթարիչ ի յուսահատութեան։ Բիւր շնորհակալութիւն և գոհաբանութիւն նմա։

Երբեմն զարմանօք և սքանչացմամբ հաղորդէր ինձ Տ. Կիրակոսեան զխօսակցութիւնս իւրեանց ընդ որդւոյս, թէ որպէս ի վերայ ամենայն նիւթոց և առարկայից իմաստութեամբ կշռեալ խորհրդածէ, և այնպիսի լուսամիտ գաղափարս արտայայտէ, մինչև կարծել թէ ի չափ այրական հասակի ժամանեալ ոմն իցէ աւարտեալ զուսումն գիտութեան իւրոյ ի համբաւեալ Համալսարանս Եւրոպիոյ, և իբր թէ ընթերցեալ իցէ զամենայն ողջամիտ փիլիսոփայական մատեանս երևելի հեղինակաց. և ըստ այսմ առաւելապէս իմն հիանայր ի վերայ մաքուր և Քրիստոնէական բարոյականու-

թեանն։ Այո, այո, եւ ես վկայեմ վասն բարոյական կենաց որդւոյս, զի ոչ սիրէր ստել երբէք, ոչ խոստանայր ինչ եթէ չկարէր կատարել, ամենայն բան ստեղ չ՚ել ՚ի բերանոյ նորա երբէք. խորշէր ՚ի վատաբարոյից, եւ ընդունակաց քան զինքն եւ ընդ պատուականաց սիրէր մտերմանալ. վասնորոյ եւ ինքն յամենեցունց սիրեալ պատուիւր։ Ո՜հ, եւ զի՞ մի մի թուեցեմ զբարեբարոյութիւնս նորա, յորմէ օգտիլ ունէր ազգատոհմ իւր. եւ Ազգ. բայց եղո՜ւկ, սլացաւ նա ի թեւս հողմոց . . . . . ։

Ի 10րդ օրէ Մարտ ամսոյ չկամէի հեռանալ ի սնարից մահճի որդւոյս՝ եւ զհետ երթալ պաշտօնիս. փափաքէի հանապազօր լսել եւ կատարել զկամս նորա. այլ նա ստիպէր զիս եւ աղաչէր՝ մի՛ թողուլ զգործս կարեւորս ազգին, եւ մի՛ ծանրացուցանել զհոգ եւ զաշխատանս Սրբազան Պատրիարքին. զի յաւուրսն յայնոսիկ զարծեալ էր յերեւան խնդիր Ազգային Գերեզմանատան Բերայի, որոյ աղագաւ բազում անգամ երթեւեկս արարեալ մերթ ընդ Ս. Պատրիարք Հօրն՝ եւ մերթ առանձինն՝ առ դրունս Նախարարաց՝ մանաւանդ Մեծ Եպարքոսին եւ Սպարապետին, յաջողեցաք բացարձակ տէր լինել սեփհականութեան Ազգիս, եւ առնուլ հրաման կառուցանել ի նմա զվարժարան, զի արդէն արգիլեալ գոլով թաղել անդ զմեռեալս, կամէին ոմանք ի Նախարարաց ի պարտէզ հասարակաց վերածել զայն։

Ուրախ եղեւ եւ ցնծացաւ յոգի իւր ազգասէր որդեակս՝ զյաջողուածէ ծառայութեանց մերոց այս, եւ խնդրէր հայցել ի Ս. Պատրիարքէն զի փութով կառուսցի վարժարանն՝ խոստացեալ ի վաճառական Գարակէօզեան եղբարց, զի կենդանութիւն ազգի՝ վարժարանաց բազմութիւնն է, ասէր . . . . .

Ի ցաւագին վիճակի խռովում այնմիկ բազում անձկանօք ընթեռնոյր զնամականիս Տեառն Գաբրիէլի Պատկանեան պատկառելի պատուականն ծերունւոյն՝ իմաստասիրին եւ Քերթողին, եւ անմեղութեամբ բազմամեայ տառապանօք չարչարեալ Քահանային որ ի Ս. Պ. Բուրգ, եւ այնչափ սիրէր զնա եւ յարգէր՝ եւ այնչափ ցաւէր ի վերայ դառնաղէտ վիճակի նորա, մինչ զի մոռացեալ զիւրն՝ ի վերջին աւուրս անդ ստիպէր զիս թողուլ զինքն, եւ զամենայն ծառայութիւն եւ զհոգ յանձն առնուլ վասն ազատութեան նորա յանիրաւ արգելանացն ի Սրբազնագործութենէ, միջնորդելով առ որս անկն է . . . . . . .։

Ի 24 Մարտի եկեալ ի տուն գտի զորդեակն իմ ցաւագին յոյժ, ըմբռնեաց զձեռս իմ եւ համբուրեալ սկսաւ յոգւոց հանել եւ գանգատիլ զի չեղեւ դարման դժնդակ ցաւոցն, եւ խնդրեաց զի ընդ Տօք. Կիրակոսեանի եւ զՊետնավսքի անուն Նմանաբոյժն կոչեսցուք ի խորհրդակցութիւն. զոր եւ խոստացաք ընդ Տ. Կիրակոսեանի վասն վաղուին. սեղմեալ զձեռս իմ ասաց համբուրել զինքն. եւ ես մինչ խոնարհեցայ համբուրել, փղձկեցաւ սիրտ իմ եւ սկսայ լալ եւ ասել. Ո՞ տայր ինձ, որդեակ իմ սիրուն, զի զցաւս քո ես բառնայի, եւ դու այդօրինակ չէիր տանջեալ. պատասխանեաց որդեակս. «Դու ինչմ՛ու ցաւ պիտի քաշես, Հայր իմ, դու ուրիշ զաւակներ ունիս շահելու, ես ձեր մէջ այսպէս անպիտան ելայ». եւ սկսաւ ինքն եւս արտասուել. վայ ինձ, բանի հանդարտեցուցեալ զսիրտ իմ, ջանացի եւ հանդարտել զինքն. եւ օգնեաց ինձ Տ. Կիրակոսեան։ Ի նմին երեկոյի գրեցի նամակ առ ընտանիս եւ որդեակս իմ ի Պարտիզակ ի ձեռն Պ. Խոսրովայ Թ. Չակեճ-

եան, եւ հեռագրեցի եղբօր իմոյ Սարգիս էֆէնտիի որ գտանէր ընդ Մութասարրըֆին Նիկոմիդիոյ յԱտաբազար, գալ ժամանել փութով ի Կ. Պօլիս ։

Ի 25 Մարտի հինգշաբթի առաւօտու, յօժարակամ խնդրեաց հաղորդիլ ընդ Քրիստոսի, եւ ջերմեռանդութեամբ ընկալաւ զԽորհուրդն Սուրբ. ապա եկն Պէտանվաքի բժիշկն ընդ Ապտուլլահեան Գէորգ էֆէնտի բարեկամիս, զոր աշխատեալ էր գտանել սիրելին մեր Մկրտիչ էֆէնտի Մէլիքեան, եւ երկարագոյնս զննեալ ընդ Տ. Կիրակոսեանի, քաջալերեցին զորդեակն իմ եւ գնացին յուսաբեկ։ Իսկ ես այլ ոչ եւս բաժանեալ ի նմանէ, մնացի ի տան, յորում եկն եւ Ամեն. Ս. Պատրիարք Հայրն իմ, եւ խօսեցաւ բանս մխիթարանաց. եւ որդեակ իմ ասաց, թէ մխիթարեալ եմ ի հոգի, Սրբազան Տէր, զի յայսմ իսկ առաւօտու հաղորդեցայ ի կենարար Մարմնոյ եւ յԱրենէ Տեառն, եւ ի նա յուսացեալ եմ. գովեաց Սրբազան Հայրն զհաւատս նորա եւ ասաց՝ թէ նախնի Քրիստոնեայք յամենայն աւուր մերձենային ի հաղորդութիւն Սուրբ Խորհրդոյն՝ զի կեանք քրիստոնէին պարտի հանապազօր կապակցեալ լինել ընդ Քրիստոսի, եւ ապա աղօթեալ ի վերայ նորա եւ օրհնեալ մեկնեցաւ։

Ես եւ մայրն նստեալ առ ընթեր մահճի որդւոյս, ամենայն ակնարկութեանց նորին սպասաւորէաք, եւ ինքն մերթ զիմ ձեռս եւ մերթ զմօրն սեղմեալ եւ ըմբռնեալ ի ձիգ ժամս, Սիրական հայրիկս, Անուշիկ մայրիկս ասելով մրմոքէր եւ ճմլէր զսիրտս մեր . . .։

Ի 26 Մարտի ուրբաթ առաւօտ, ասաց աղօթել միաբանութեամբ վասն իւր. եւ ես առեալ զԱւետարան

Յետոյ եւ դիմարեկ նստեալ արտասուօք աղօթէի. եւ ինքն՝ գամ քան զգամ հալէր եւ մաշէր յոյժ, դժուարաւ տանել զջուր կամ զկաթնեղէնն իւր։ Այսպէս ասաց առ իս, «Հայր իմ, երբ պիտի աղէկնամ ես, ինչ կըսեն բժիշկները. բնաւ հանգստութիւն չունիմ, հայրիկս, ամեն կողերս եւ մէջքս կը ցաւի եւ կը տագնապիմ». եւ հոտէին յերեսացն ցուրտ ցուրտ կայլակք քրտանց, զոր սրբէի տանջեալ։ Ի նմին երեկոյի եկին ի Պարտիզակէ երկոքին դստերք իմ Յուլթանիկ եւ Մաքրուհի, ընդ Տէր Կարապետ Քահանայի Միխայելեան օծակից եղբօր իմոյ սիրելւոյ, որպէս եւ Մարիամէ մեծ դուստրն իմ եկեալ էր յառաջագոյն, բայց չեկն Գ. Խորամ չհանդուրժեալ ի տեսանել ցաւոյ սրտին։ Ուրախացաւ ընդ գալուստ նոցա, եւ սեղմեալ զձեռս նոցա, զձեզ կարօտայեր էի ասաց։ Անքուն կացեալ առ նմա եւ յայնմ գիշերի հըսկեցաք. սակայն հետզհետէ ակարանայր . . . :

Ի ժամ 8 գիշերին ասաց երթալ եւ ննջել յիւրաքանչիւր տեղիս, եւ բռնի ստիպէր զմայրն զի նիրհեսցէ. եւ ինձ ասաց երթալ եւ ննջել. եւ ելեալ արտաքս ի սենեկէն՝ յետ սակաւու միոյ կրկին մտի ի ներքս եւ գաղտնի մնացի յանոտս մահճին։

Յետ կէս ժամու խնդրեաց ուտել զկաթնեղէնն թարխօխա անուանեալ, եւ նստուցին դժուարաւ յանկողնին, յայնժամ ետես զիս՝ որ ծածկեալ էի զանձնս, եւ խնդացեալ թէ ես եմ. «Մեղք է հայրս, ձայն տուէք որ երթայ իւր տեղը պառկի» ասաց, եւ ինքն կերեալ զկաթնեղէնն ըմպեաց եւ ջուր եւ ընկողմնեցաւ ասելով. «Փառք քեզ Աստուած, դիւրութեամբ խմեցի ջուրս». յայնժամ եւ ես ելեալ, անուշ ըլլայ զաւակս, ասացի, ես ալ կսպասէի որ քիչ մը բան ուտես եւ ես հանգիստ լինիմ. — Շնորհակալ եմ, հայր իմ, եկուր

զիս համբուրէ, ասաց, եւ գնացեալ համբուրեցի, եւ ինքն զիս համբուրեաց «Սիրական հայրս» ասելով, եւ դարձուցեալ զաչսն առ մայրն՝ Անուշիկ մայրս, ասաց, եւ նա սկսաւ արտասուել . . . ։

27 Մարտ շաբաթ առաւօտն լուսացաւ․ եւ ես նստեալ առ ընթեր մահճին կրկին աղօթէի արտասուելով. եւ տեսեալ զիս ասաց՝ թէ ընդէ՞ր լաս հայր իմ, աղօթեա վասն իմ եւ մի լար. ասացի, որդեակ իմ, ահաւասիկ աղօթեմ եւ լամ առ Աստուած զի ողորմեսցի քեզ։ Էր ժամ 4, եւ դարձեալ խնդրեաց յինէն աղօթել վասն իւր. եւ ես կրկին փղձկեցայ յարտասուս։ յայնժամ եւ ինքն ասաց. «Հայր իմ, ես այլ եւս չեմ լաւանար, աղօթէ որ Արքայութեանն Աստուծոյ արժանի լինիմ, լուր ղրկէ Քահանային որ գայ ինձ Հաղորդութիւն տայ»։ Յիշեցուցի նմա թէ յաւուր հինգշաբաթու արժանի եղեւ հաղորդիլ Մարմնոյ եւ Արեան Տեառն. (կարծելով թէ մոռացեալ իցէ), «Այո, ասաց, գիտեմ, բայց վերստին կը փափաքիմ արժանանալ»։ Փութանակի կոչեալ զՏէր Մեսրոպ Քահանայ Տէր Գողոսեան Մայր Եկեղեցւոյ, ետ նմա զդաւանութիւն զղջման, եւ հաղորդեցաւ այնպիսի իմն ջերմեռանդութեամբ, զոր չկարեմ նկարագրել. մինչ քահանայն մերձեցուցանէր զՀացն կենարար՝ ասաց, «Եկո՛ւր, Տէր Յիսուս, ընդունէ զիս, առ տար զիս քու քովդ. Աստուած իմ, քու Արքայութեանդ արժանի ըրէ զիս». եւ յառեաց զաչսն յերկինս մինչ աղօթէր Քահանայն՝ եւ լուսափայլ իմն եղեն երեսք նորա։ Ապա տեսեալ զիս եւ զկին մօրն ասաց. «Մի՛ լար, մայր իմ, մի՛ լար, ես Քրիստոս Տէրը տեսայ, Քրիստոս զիս կանչեց, ես Անորն եմ, ես Արքայութիւն պիտի երթամ, մի՛ հոգըներ»․

եւ դարձեալ առ իս ասաց. «Աստուած լսեց քու ա-
ղօթքդ, սիրելի հայրս, ես Արքայութեան մէջ պիտի
ըլլամ այսօր, մի՛ վշտաւորիք եւ մի՛ լաք»։ Ասացի եւ ես.
անուշիկ զաւակս, կաղաչեմ որ սիրտդ չվրդովես, եւ
քեզի ցաւ չյաւելուս մեզ համար. վասնզի մեզ ամենքս
ալ քու ետեւէդ պիտի գանք։ — Ո՛չ, չեմ վրդովիր.
ճանապարհորդ մը աչքաք է հանդարտ երթայ իր ճամ-
բան, առանց յաղթանակաւ.

Յանկարծ կոչեալ առ ինքն զքոյրս իւր զՄարիամէ,
զՍուլթանիկ, զՄաքրուհի, եւ զՀամինակ, եւ զՍաթի-
նիկ (եղբօրորդի իմ) եւ զեղբայրս իւր զԿարապետ եւ
զԱրտաշէս (եղբօրորդի իմ) եւ համբուրեալ զնոսա,
տուաց եւ համբուրել զինքն. եւ նստուցեալ զնոսա շուրջ
զմահճօքն այսպէս խօսեցաւ. «Քոյրերս եւ եղբայրներս,
ձեզի կը պատուիրեմ որ մէկզմէկ սիրէք, ինչպէս որ
ես ձեզ սիրեցի, հնազանդ եղէք մեր սիրելի ծնողաց
եւ միմեանց, եւ իմ յիշատակս մի մոռնաք»։ Եւ որ շուրջն
կային Տ. Վահան վարդապետ Տէր Մինասեան եւ Տ.
Կարապետ քահանայ Մխալեան եւ Գեւորգի իմ տիկին
Էֆթիկ, եւ տագր նորին Մկրտիչ էֆէնտի Մելիքեան
հայրենակիցք մեր եւ ազգականք, զնոսա եւս ողջուն-
եալ եւ շնորհակալութիւն յայտնեալ ամենեցուն. ապա
դարձաւ առ իս եւ ասաց. «Սիրելի հայրս, սնտուկիս մէջ
շատ մը թղթեր ունիմ՝ որոց մէջ տաղայական բաներ ալ
ունիմ գրած, անոնց կարեւորութիւն մի տար, իսկ պիտա-
նացուները պահէ. քերական մի եւս ունիմ պատրաստած,
ինչպէս կուզես այնպէս ըրէ. աչէտքի պալու դրու-
թիւններ ունիմ, զանոնք պահէ, թէ եւ չեմ կրցած
լրմընցունել»։ Եւ ես ասացի, որդեակ իմ, մասունքի պէս
կը պահեմ, բայց ես ալ քու ետեւէդ պիտի գամ։

«Ո՛չ, ասաց հանդարտութեամբ, դու պիտի ապրիս,

դուն պատուակներ ունիս, զանոնք ալ ինծի չահես. դու մեծ մօրդ ես, հայր իմ, ինձ համար, վասն զի ծնողական պարտքէն աւելին ըրիք, ամէն խնամք տարիք ինձ համար»: Եւ յառեալ զաչսն յերկինս պահ մի, ասաց. «Ահաւասիկ զՔրիստոս կը տեսնեմ, ահա զիս կը կանչէ Քրիստոս, կուգամ Տէր Յիսուս, կուգամ, ընդունէ զիս»: Յայնժամ մեք անհնարին սկսաք լալ եւ կոծել. եւ ինքն պայծառացեալ դիմօք, եւ պատկառելի եղանակաւ յորդորէր չողբալ, այլ զԱստուած փառաբանել, եւ նայեցեալ կրկին յերեսս մօրն, «Սիրելի մայրիկ, ասաց, փառք տուր Աստուծոյ, եւ մի լար. ես պսակետես Քրիստոսին եմ»: Եւ կափուցեալ զաչսն սկսաւ ձգել ուժգին, եւ այսպէս քառորդ մի ժամու շնչելով յուշիկ յուշիկ, շիջաւ իբրեւ զճրագ, եւ աւանդեաց զանարատ Հոգին ի ձեռս Քրիստոսի: Եւ էր ժամ հինգերորդ շաբաթի աւուր տօնի Յարութեանն Ղազարու, ի 27 Մարտի 1876:

Այլ ո՞ կարէ ի գիր առնուլ զողբս եւ զկոծ մեր ամենեցուն, մի՞ կարէր անջատել զմեզ ի ծաղկահասակ մարմնոյն, յոր փարէաք համբուրելով, եւ ուղխս արտասուաց իջուցանելով: Այլ վա՜յ ինձ, ոչ թէ որդեակն իմ շիջեալ էր, այլ արեւ կենաց իմոց շիջեալ էր. Նա առաւել եւս լուսափայլեցաւ լուսովն Քրիստոսի, եւ գնաց ի Լուսեղէն Յարկսն. իսկ իմ մեղապարտիս շիջաւ ճրագն լուսատու, եւ մնացի ի խաւարչտին աշխարհիս խաւարեալ տրտմագին աւուրբք . . . . . . :

Նոյն հետայն եկին բարեկամք եւ դրացիք՝ եւ ընդ մեզ ողբային զանգիւտ կորուստն: Եկին ի սմին երեկոյի ի Գարտիղակէ եւ կանայք եղբարց իմոց եւ Վարսենիկ եղբօրորդիս ընդ Յարութիւն (Արթաքի) եղբօր իմոյ,

որք անկեալ ի վերայ անշնչացեալ որդւոյս լացին յան-չափս՝ խառնեալ զարտասուս իւրեանց ընդ ամենեցուն մեծականական ողբովք մինչեւ ցառաւօտ․ Եկն եւ Ամեն. Ս. Պատրիարքն Հայրն, ի տուն իմ ի նմին երեկոյի, եւ ջանայր սփոփել զիս . . . ։

28 Մարտ. Կիրակէ, Տօն Ծաղկազարդի էր. ամենեք-եան գնային յեկեղեցի տօնել զգալուստ Տեառն յե-րուսաղէմ, ծերք եւ տղայք. եւ ասել ընդ ծերոց եւ ընդ մանկանց Եբրայեցւոց առ Փրկիչն աղաղակէր, Օրհ-նեալ եկեալ անուամբ Տեառն, ոստս արմաւենեաց եւ ձի-թենեաց ունելով ի ձեռս, այլ չէր ընդ նոսա որդեակս իմ. աւաղ կանաչագեղ եւ երփներանգ ծաղկօք զար-դարեալ դնէր նա ի դագաղի անմռունչ, եւ երթայր ի գերեզման. այո, երթայր ի գերեզման ի նախադա-ւիթ երկնաւորն Երուսաղէմի, անդ ընդ հրեշտակաց օրհնաբանել զցանկացեալն իւր Յիսուս Փրկիչ, եւ ընդ սրբոց մանկանց բարեբանել զԱմենասուրբ Երրորդու-թիւնն ։

Սպասէաք գալստեան եղբօր իմոյ Սարգիս էֆէնտիի, զի տակաւին չէր ժամանեալ. եւ ժողովեալ էին ի տուն մեր անդ, ընդ Ս. Պատրիարք Հօր նաեւ Կաթողիկոսն Աղթամարայ, եւ Փոխանորդ Ս. Երուսաղէմի Գեր. Տ. Սիմէոն Ս. Եպիսկոպոս Սէֆէրեան, եւ Գեր. Կարա-պետ Եպիսկոպոս Սերովբեան, եւ բազում վարդապետք եւ քահանայք յեկեղեցեաց մայրաքաղաքիս, որք եկ-եալ էին պատուել զախրական հանդէսն (յորոց ամե-նեցուն ունիմ անբաւ շնորհակալութիւն) եւ կամէին հասանել երեկոյեան ժամերգութեան Ծաղկազարդի՝ յեկեղեցիս իւրեանց, վասն որոյ իբրեւ ժամն յօթնե-րորդն լրանայր, հրամայեաց Ս. Պատրիարք Հայրն ի-ջուցանել զննջեցեալն ի Քրիստոս՝ յեկեղեցի, յոյժ սգխ-

բայլի հանդիսավեհութեամբ. եւ անտի ի ճանապարհէ մնա տան մերում եկն եհաս սիրելի եղբայրն իմ եւ փաթեալ զպարանոցաւս սկսաք լալ, եւ լալով երթալ։ Գնացեալ մտաք ի Մայր Եկեղեցին, եւ անդ կարացի տեսանել զահագին բազմութիւն ժողովրդեան որ ու-ղեկից լինէին առաքական հանդիսին։

Յետ աղօթից եւ սահմանեալ երգոց եւ օրհնու-թեանց, խօսեցաւ Սրբազան Պատրիարքն Հայրն կարօտա-ռուչ Դամբանականն, եւ լացեալ ինքն՝ լացոյց եւ զժո-ղովուրդն. եւ ապա ամբարձեալ զդագաղն նոյն հան-դիսիւ տանէին, եւ շքեղութեան հանդիսին վեհութիւն ընծայէր ներկայութիւն Սրբազան Պատրիարքին, որ ընդ ուղեւորեալս մեր յետեւուէ զդագաղին ընդ մեզ գնայր ի ճանապարհին վերջար ի գլուխ, իբրեւ անէր եւ հայր ննջեցելոյն, ի տանէ յեկեղեցին՝ եւ յեկեղեցւոյ մինչեւ ի Լանկա Թաղն. յորմէ դարձեալ յետս, դարձոյց եւ զիս ընդ իւր յորդորմամբ ի տուն. եւ գնացին մինչ ի գերեզման եղբարք իմ եւ բարեկամք եւ յանձնե-ցին սեւակուռ հողոյ զխանձկասուն մարմին սիրասուն որդւոյս։

Գերեզմանատունս այս՝ որ է արտաքոյ Եէտի գուլէի ի Պալըքլը անուանեալ յընդարձակ հովտին, (ուր է եւ գերեզման Յունաց եւ Եկեղեցի, որպէս նաեւ այլազգ-եաց). առաջին գերեզման է սեփականեալ Ազգիս եւ շնորհեալ ի Ֆաթիհ սուլթան Մէհէմմէտ յաղթականէն Կ. Պոլսոյ, եւ է գլխաւոր հանգստարան ննջեցելոց մե-ծագոյն մասի Ազգի մերում. ուրանոր եւ բազում պան-դըխտացեալք Հայոց կարօտ ի հայրենեաց թաղեալ մը-նան՝ որպէս եւ քեռի իմ Գ. Յարութիւն Բարունեան յառաջ քան զ40 ամս։ Անդ եւ հատոր հոգւոյս իմոյ ամփոփեցաւ ի դամբարանի Հոգելոյս Տէր Պօղոս Տէր

Գէորգեան ընտիր եւ պատուական Քահանայի Սամաթիոյ, եւ ազգատոհմի նորին, շնորհիւ եւ քաղցր հաճութեամբ որդւոյ նորին Պատուելի Գալուստ էֆէնտիի սիրելւոյ իմոյ, բազմամեայ աշխատաւորի եւ երախտաւորի ազգիս, որ եւ մինչեւ ցայժմ վարէ պաշտօն գրագրութեան յԱզգային Պատրիարքարանին։

Ի նմին աւուր Ծաղկազարդի Կիրակէին որպէս եւ յայլ աւուրս մինչեւ ցաւագ ուրբաթ տիւ եւ գիշեր, եկին բազմութիւն երեւելեաց եւ ժողովրդականաց Ազգիս, որպէս եւ ի դիմաց Ս. Պատրիարքի Յունաց վարդապետ մի եւ Տեմիթրիոս էֆէնտի Զօլաքեան հայազգեան, յայցելութիւն եւ ի մխիթարութիւն մեզ, եկին եւ ի Նիկոմիդիոյ եւ ի Պարտիզակէ բարեկամք իմ եւ մտերիմք. Մ. Գասպար էֆէնտի Տ. Թ. Գասպարեանց, եւ օծակիցն իմ Տէր Մկրտիչ քահանայ Մ. Սանտրփանեան, եւ Մ. Մկրտիչ աղա Տէր Յակոբեան, եւ փեսայք մեր եւ ազգականք եւ լցին ընդ մեզ ցաւակցաբար. յորոց ամենեցուն շնորհակալ եմ ի սրտէ։

Յաւուր երրորդի թաղմանն՝ ընդ իս առեալ զօծակից եղբարս իմ զՏէր Կարապետ եւ զՏէր Մկրտիչ քահանայս՝ եւ զհայրենակից մեր Մկրտիչ էֆէնտի Մելիքեան, փութացի կանխել ի գերեզման որդւոյս կատարել զԱյգուցն, ուր փարեալ զշիրմաւն ցօղեցի զայն արտասուօք, մինչդեռ քահանայք Տեառն անուշահոտ խնկովք զօրհնութիւնս սփռէին քաղցրաձայն երգովք. եւ թուէր ինձ տեսանել զանմեղ հոգի որդւոյս՝ ընդ բազմութեան հոգւոց հրեղինաց վերելանել յերկինս՝ եւ երգակից լինել ի փառաբանութիւն Տուողին կենաց եւ Տեառն հոգւոց, Արարչին Ամենակալի։

Յաւուր Աւագ Հինգշաբաթի՝ հրամանաւ Ամենաշնորհ եւ ամենապատիւ Հօր իմոյ Տեառն Ներսէսի Սրբազան Պատրիարքի, եւ առիթմամբ անդրուգական բարեկամի իմոյ եւ սրտակցի Նշան էֆէնտիի Օտեան, իջի Թախծարքին ի Ս. Եկեղեցի, ուր կատարիւր Յիշատակ Անմահ Պատարագի Որդւոյն Աստուծոյ, եւ անդ եւս զնոյն զգայի սփոփումն, զի Արեամբն Յիսուսի ի մուտս սրբութեանց համարձակէր վերամբառնալ եւ որդեակն իմ սիրելի. (Եբր. Ժ. 19։)

Հասեալ կային աւուրք հրաշափառ Տօնի Զատկի Տեառն, եւ ընտանիք մեր եւ եղբարք պատշաճ վարկան՝ երթալ ի Հայրենին մեր ի Գարտիզակ, եւ անդ անցուցանել զաւուրսն, եւ այց ելանել գերեզմանաց հարց մերոց եւ ծնողաց, եւ լցուցանել զփափագ հայրենակցաց մերոց՝ որք փափագեալ էին դոնէ տեսանել զմեզ եւ առնուլ զկարօտ հանգուցելոյն, զոր ամենեքեան սիրէին եւ յարգէին, վասնորոյ եղբայր իմ Սարգիս էֆէնտի առեալ զհրաման հաճութեան Ամեն. Սրբազան Պատրիարքին, վասն ութն աւուրց եւ եթ, յ3 Ապրիլի յաւագ շաբաթու առաւօտուն գնացաք ի Քաղկեդոն՝ եւ նստեալ ի շոգեկառս հասաք անվտանգ ի Նիկոմիդիա։

Անդ ի կայարանին ընդ առաջ եկեալ էր մեզ Գեր. Տ. Ստեփաննոս վարդապետ Յովակիմեանց Առաջնորդական փոխանորդն Հոգեւոր որդի Ս. Պատրիարք Հօր՝ ընդ երկուց քահանայից եւ յարգելի անդամոց Թաղական խորհրդոյ քաղաքին, եւ ընդ այլոց բարեկամաց մերոց, ողջունեալ եւ ողջագուրեալ ի նոցունց՝ նստաք ի նաւակ՝ եւ անցեալ ի նաւահանգիստ Գարտիզակի հասաք անդ անվտանգ, ընդ մեզ առեալ ի Նի-

կոմիտէից զարիւրելին եւ զանցկալին իմ եւ որդւոյս՝ զշաղ- կապեալն մտերմութեամբ անկեղծ. սիրոյ ընդ իս եւ ընդ նա՝ զՊարոն Յոսրով Թ. Նալիճեան դասատու վար- ժարանին եւ Ատենադպիր Առաջնորդարանին Նիկո- միդիոյ, որ յանձնառու տագնապած եւ ազգակից եղեալ էր։ Բոլանդանի բարեսէր ժողովուրդ գիւղին եկին ի տես- տութիւն եւ ի ցաւակցութիւն մեր, որք եւ կանայք մինչեւ ցօրն մեկնելոյ իմոյ անտի ։

Ապրիլ 4. Ի Զատկի Տեառն իջի յեկեղեցին, եւ արտասուաթոր աչօք երկրպագեցի սեղանոյն Աստու- ծոյ. սպասէր ժողովուրդն լսել բանս յինէն, բայց ամ- բոխեալ էր միտս իմ եւ վրդովեալ․ Ի դաւթի Եկե- ղեցւոյն ուր դամբարանն է Հօրս, կացեալ աղօթեցի առաս, եւ անդ եւս ընկալայ զողջոյն համբոյրից իմոց Հայրենակցաց ։

Ապրիլ 6։ Եկն ի Նիկոմիդիոյ Գեր. Տ. Ստեփաննոս Վարդապետ հանդերձ այլ Թաղականօք Նիկոմիդիոյ ի ցաւակցութիւն, եկին եւ Քահանայք եւ Թաղականք Տէօնկէլ եւ Օվաճըգ գիւղօրէից Հայոց, յորոց ամենե- ցուն շնորհակալ եղէ ։

Ապրիլ 7։ Իմով բաղձանօք եւ ուխտիւ կատարեցի զԽորհուրդ Աստուածային Պատարագին՝ ի Յիշատակ հոգւոյ հանգուցեալ որդւոյս. եւ ի ժամ ընթերցման Առաքելական Թղթոյ՝ խօսեցայ ընդ բազմութեան ժո- ղովրդեան զնախախնամական կամացն Աստուծոյ, եւ շնորհակալ եղէ զցաւակցութենէ նոցին՝ մանաւանդ զբացայայտութենէ սիրոյ իւրեանց առ մեզ, զի մինչ- դեռ ի 26 մարտի ուրբաթ երեկոյի՝ անօրինութեամբ

Քահանայ եղբարց կատարէ Գիշեր ժամ յեկեղեցւոջն՝ վասն որդւոյ իւրոյ. ամենեքեան խուռն բազմութեամբ դիմեալ էին յաղօթս եւ ի պաշտամունս. յիշատակեցի նաեւ զաստուածային տարեդարձ Քահանայութեանս որ ի նմին իսկ աւուր տօնի Աւետեաց Աստուածածին Կուսին կատարեալ էի զԱռաջին Պատարագն ի վերայ նոյն սեղանոյ ։ (1) Զայսպիսի յորժամ յիշէի փղձկէր սիրտ իմ եւ ժողովուրդն ընդ իս արտասուաթոր լինէր. զորս օրհնեալ Անուամբ Տեառն Ամենակալի, եւ հաղորդեալ ի կենարար Մարմնոյ եւ Արեան Տեառն, մխիթարութիւն ընկալաք Աստուծով.

69. Ապրիլի բաժանեալ յեղբարց եւ ընտանեաց անցի ի Նիկոմիդիա ընդ Արժ. Տ. Մեսրոպ Քահանայի մերում Սիմոնեան եւ ընդ Տէր Մկրտիչ Քահանայի, ելանել շոգենաւօք ի Կ. Պօլիս. սակայն բարեկամն իմ Մ. Գասպար Էֆէնտի Տ. Թ. Գասպարեանց, բռնադատեաց զիս մնալ ի գիշերին ի տան իւրում, վասնորոյ մնացի. եւ շրջեցաք ի մերձակայս քաղաքին, այց եղեալ եւ գեղեցկահոյլիս գերեզմանին Հայոց, որպէս եւ վանաց Ցուեաց Ս. Պանդալէոնի, ուր ընդ առաջ ելեալ մեզ քահանայք եւ իշխանք Ցուեաց պատուեցին զմեզ, եւ յեկեղեցւոջ ի ժամերգութեան պահուն խնկարկելով զմեզ ։ Եկին ի գիշերի ի տուն Մ. Գասպար

(1) Ընկալայ զկոչումն Քահանայութեան Առաքելական ձեռնադրութեամբ Տ. Ներսիսի Սրբազան Արքեպիսկոպոսի Վարժապետեան (այժմու Ս. Պատրիարքին) ի նմին Եկեղեցւոջ, ի 5 Մարտի 1866, յաւուր տօնի Քառասուն մանկանց, ընդ Տէր Կարապետ եւ Տէր Մկրտիչ քահանայից՝ անփոփոխ պահեալ զանուն Մկրտութեանս, առ ի նշան միութեան երից անձանցս միով անուանակոչութեամբ, Յովհաննէս, Կարապետ, Մկրտիչ ։

Էֆէնտիի խնամութիւն, բարեկամք մեր Աղաբեկ Էֆէնտի Գէորգեան եւ Գրիգոր Էֆէնտի Աթանասեան Կէսարացիք, եւ Ոսկան Աղա Տէր Պօղոսեան, եւ այլք ռեբեցեալք ։

Ի 10 Մարտի նոյնում ի շոգենաւս ուղեւորեցայ ի Կ. Պօլիս, եւ հասեալ ի Պատրիարքարան, գտի անդ զՍրբազան Պատրիարքն որ եւ կրկին մխիթարեաց զիս հոգեւոր բանիւք ։ Ոչ կարեմ լիովին արտայայտել զանըսպառ հաւատոյս երախտապարտ շնորհակալութեանց իմոց զՀոգեւոր Ծնողէս յԱռաքելաշնորհ Սրբազան Պատրիարքէս, որ գթասիրտ սիրով զամենայն մխիթարութիւն ընծայել յօժարեցաւ վշտակիր ծառայիս իւրոյ, մինչեւ իսկ յինքենէ վճարելով զբովանդակ ծախս յուղարկաւորութեան որդւոյս ։
Իցէ արդեօք օրինակ այսպիսի վեհանձնութեան եւ անհամեմատ սիրոյ առ ապիկար ստրուկս ընծեռեալ, բայց եթէ ի նախնի Առաքելաշաւիղ Հայրապետս, որոց ըստ ամենայնի հետեւող եւ պատկեր նմանօրինակ հանդիսացեալ է առաքինական գործովքն եւ մարդասիրական զգացմամբն ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ համանման համանուն Հայրապետաց Առաքելական Եկեղեցւոյ Հայաստանեայց, զոր շնորհեսցէ մեզ Տէր ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ ։

Յաւարտ հասեալ Յիշատակարանիս, քաղցր պարտաւորութիւն համարիմ վերակրկնել զշնորհակալիս իմ ամենայն զգայակից հանդիսացելոց տխրական պարագայիս, Բժշկաց, Տպագրապետաց, Այցելուաց, Յուղարկաւորաց, բանիւ եւ թղթով Մխիթարողաց, հեռաւոր եւ մերձաւոր Բարեկամաց, Դրացեաց եւ Մտեր-

մաց, Սպասաւորաց եւ Աշխատողաց, ծանօթից եւ անծանօթից, խնդրելով ի Տեառնէ լինել նոցա վարձահատոյց, եւ պահել անվրդով ի Հովանի տրտմութեան։

Ապաքէն՝ կցորդեալ ընդ Ցիշատակարանիս եւ ընծաւոր բանս Հարց եւ Եղբարց սիրելեաց յառաջիկայդ՝ Կարգաւ Թուականաց նոցին, կանգնեմ իբրեւ ՄԱՀԱՐՁԱՆ անմոռաց յիշատակի Երանեալ Որդւոյս, մեծ եւ նուիրական համարեալ քան զԱրձանականս սրբատաշ քարանց մարմարիոնեայց, զի ընդ անմահութեան անուան եւ գործոց սիրեցեալ որդւոյս, լիցին յաւերժացեալ եւ անուանք արձանագրողացդ քաղցր բանից դարուց ի դարս, աւանդելով յերախտագէտ սրտէս Ներկայից եւ ապագայից ՄԿՐԵԱՆ գերդաստանին։

Ի 27 Ապրիլի 1877.

ՌՅԻՁ

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Հիսար ճիպի 97.

Եւ վշտալից Հօրն

ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐԵԱՆ

Խաչակիր Քահանայիս Հայոց



# ՄԱՀԱՐՁԱՆՔ

(ԹԻՒ 1)

ՆԱՄԱԿ Ամենապատիւ Տ. Մկրտիչ Ս. Արքեպիսկոպոսի Խրիմեան՝ որ չկարացեալ վասն տկարութեան անձինն ներկայ գտանիլ տխուր հանդիսի թաղմանն, առաքեր զայս թուղթ ի նոյն օր.

« Որդեկորոյս Հայր,

Գարնան զուարթարեր առաւօտ էր, Ծաղկազարդի տօն էր. մինչդեռ աշխարհ կը ծաղկազարդէր, քո ծաղիկդ խամրեցաւ, ահ, եւ մինչ մանկտին ձիթաստանեայց լերան վրայ ովսաննայ կ'երգէր, մինչ եկեղեցին կը հրճուէր, դու զՅակովբիկդ կուլաս, եւ ինձ գոյժ կուտաս, որ իբրեւ զՀայրդ կը սիրէի զինքն. եւ ով չէր սիրեր այդ աննման հայ զաւակդ, որ իւր ամեն ազնիւ ձիրքերով սիրելի եղած էր ամենուն։

Եւ գիտեմ, դու անհնարին կը վշտակրիս եւ կը խորհիս թէ ինչու համար շուտ խամրեցաւ նորաբոյս գարնան ծաղիկդ։ Դու կը հաւատաս, Հայր, թէ ծառերու եւ ծաղիկներու զարդարիչ մշակը՝ երկնից Նախախնամութիւնն է, եւ Նա է որ մահկանացուաց աշխարհէն կը տեղափոխէ՝ անմահութեան աշխարհին եւ դրախտին մէջ կը տնկէ. եւ ով կարող է կամ իրաւունք

ունի նախախնամողին ձեռք բանել. որ խոկալէս ծաղիկներուն դարմանիչ տէրն է ։

Մի քանի օր յառաջ զՅակոբիկը տեսայ ։ օրահասին մօտ էր, նա գիտեր թէ կռուէր իւր անձին դէմ եւ Երկնից դէմ կը ողորէր. հոգին ներքուստ կը հեծէր, շրթունքները կափկափելով կը պաղատէր. « Տէր իմ, կասէր, դեռ մատաղ մանուկ եմ, նոր եկայ աշխարհը, թող որ տեսնամ թէ ինչ կայ. ես լոյս կը սիրեմ, ազատութեան ասպարէզ նոր մտեր եմ, Հայրենիք կը սիրեմ, յառաջդիմութիւն կը սիրեմ. ահ, մրցանակս մնայ, թող տուր ապրիմ, նպատակիս հասնիմ, մրցանակս առնում եւ ապա մեռնիմ ։» Յառաջադիմութեան սիրահար Յակոբը, ահ, մինչեւ քու տապանային եւ մահուան օրը գիր սիրեցիր, գրիչ սիրեցիր եւ յառաջդիմութեան կարօտով մեռար ։ Յակոբիկին գրիչը՝ ձեռք տուէք ։ այնպէս դրէք ի գերեզման. թող երթայ Երկնից դպրութեան մատեանը, հրեշտակներու հետ պարապի, երգէ ու գրէ ։

Հա՛յր, կաղաչեմ, Հայրիկէն ողջոյն տուր Յակոբիկին. ես չեմ կարող ժամանել եւ չեմ հանդուրժել նորա դագաղը տեսնել ։ Համբուրէ այն պայծառ ճակատը. որ յառաջդիմութեան նշան կու տար եւ մահուան ժանտ ձեռք եղծեց զայն ։ Համբուրէ այն գրասէր աչերը որ, ընթերցմանէն լուսանուաղեր էր. եւ գիտեմ թէ քանի անձկութեամբ կսպասէր, որ իւր փառատակաւոր մատանց երկասիրութիւնը տեսնայ եւ այնպէս մեռնի եւ միթէ ուխտաքր էր, Հայոց մանկրաւոյն ընծայ մը տալ եւ միաս բարով աւել ։

Սորա համար, Հա՛յր, քո վիշտն անհկչելի է եւ ով կարող է զքեզ եւ քո ցաւերդ սփոփել ։

Այլ մխիթարեաց ; մխիթարեաց, դու Քահանայ

Տէրտէն եւ Բաղտանայ եւ Քրիստոսի եկեղեցւոյն․ անմահութիւն եւ ազգայնութիւն կը քարոզես․ ձեր մեծ կոչումն է, որ սգաւորները մխիթարես․ Ուստի գնա սեղանւոյն առաջ՝ զոր կը պաշտես դու․ դու ձեռներդ վերամբարձ տարածէ․ մի հաւատով գոչէ Ոսկեբերանին վերօրհնութիւնը․

«Փառք քեզ, Աստուած, փառք քեզ, յաղագս ամենայնի․» դարձիր ի տուն, սփոփէ Ցակոբիկին սգաւոր մայրիկը, որ քան զքեզ առաւել կաղեկիզի եւ կը մորմոքի․ զի մայր է․ եւ մօր գորովն անհուն է․

1876 Մարտ 28 — Վշտակից Ձեր
Գուզկունճուք — ՀԱՅՐԻԿ

(ԹԻՒ Բ)

ԹՈՒՂԹ Նշան Էֆէնտիի Օտեան՝ որ անձամբ անձին մատուցանէր ի նոյն օր․

## ԱՌ ՈՐԴԵԿՈՐՈՅՍ ՀԱՅՐՆ
## ԳԵՐ․ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ
### ՓՈԽԱՆՈՐԴ Ս․ ՊԱՏՐԻԱՐՔԻ Կ․ ՊՕԼՍՈՅ

Սիրելի բարեկամ,

Ժամերը կը սահին կանհետին քամակից, ժամանակը միշտ յառաջ կը սողայ յարատեւ․ այս տեւողութիւնն է յաւիտենականութիւն։

Յաւիտենականութիւնը անսահման է․ ինչ որ յաւիտենական չէ՝ սահմանաւոր է։ Սահման ամենուրեք.— մարդուս կեանքն ալ սահման մ՚ունի եւ այս սահմանը անսահման է, յորմէ կը հետեւի տարաժամ մահը։

Արդէն ըսած եմ, «Մեռանիլը ապրիլ է.» մարդն որ միանգամ ծնած է՝ պէտք է յաւիտեան ապրի։ Ապրելու համար վաղ եւ անապական պէտք է մեռնիլ. «Պայ միանգամ մարդոյ մեռանիլ։»

Գերեզմանը կեանքին արդարն է, ուրկէ կը ծնի անմահութիւն. ա՛լ գերեզմանը փուտ մը չէ. քանզի մէջ մեր անեղ կը ծնի յաւիտենականութիւն։ Գերեզմանը արդի աշխարհին եւ անդրաշխարհին սահմանագիծն է, պէտք է մարդիկ հոնկէ անցնին անվրէպ։

Հրեղէն է կառքը եւ լուսեղէն երիվարը, անմահմին հրեշտակը կը վարէ սանձը։ Այս է ահա այս աշխարհէն մեկնող անցորդին կառավանը։ Ո՞ւր կերթայ այս անցորդը. — չենք գիտեր — «Ի տան Հօր իմոյ օթեւանք բազումք են։» Սակայն նախասահմանեալ օթեւան մ'ունի այս անցորդը, պէտք է հանդչի իր կայարանը։

Ամենայն ինչ կընթանայ, անցորդն ալ իր ճամբան կը յորդէ։ Մի կական եւ հեծեծանք արձըկէր ուղղորդ որդւոյդ ետեւէն. «Թող տուք մանկաւոյդ գալ առ իս» ըսաւ Քրիստոս։ Մի արգելուր Սիրելի որդեակդ Երկնաւոր Հօր յանդիման լինելոյ. այլ պագէ եւ սփոփէ քու արտասուքդ ու հառաչանքդ, եւ բանն Աստուծոյ քեզի ըլլայ միշտ մխիթար «Եթէ մեռանիցի բազում արդիւնս առնէ։»

Մաղթեմ ի Տեառնէ կալ ննջել քեզ ընդ երկայն աւուրս հանդերձ ամենայն պարագայիւք։

28 Մարտ 1876, Օրթաքէօյ.

Անձնուէր բարեկամդ
Ն. ՕՏԵԱՆ

(ԹԻՒ 3)

ՈՂԲ Ի. Ց. Սարաճեան ուսումնական երիտասարդի կոստանդնուպօլսեցւոյ .

---

# Ի ՑԱՒԱԼԻ ՄԱՀ

# ՅԱԿՈԲԱՅ Ց. ՄԿՐԵԱՆ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳՐԱԳԻՏԻ

Դեռ չի չորցաւ աչքիս արցունք ,
Դուն ձեր թռչիս ո՛ Մկրեան ,
Միշտ լալու ենք դատապարտուած ,
Ո՜վ Տէր այս ինչ նաեհ դաժան . . .

Մանուկ մ'ըլլալ, հազար խնամոց ,
Գուրգուրանաց եւ առարկայ ,
Մատաղ տիոց հազ՛ թեւակոխ ,
Արեւագիրկ՝ ցուրտ հող մտնել .

Ծաղիկ մ'ըլլալ անուշաբոյր ,
Դեռ նոր ծլած դեռ նոր ծաղկած ,
Գերեզմանի զարդեր լինիլ ,
Ա՜յս է մեր կեանքն , ով իմ Աստուած .

— Է՜հ . . . այս է կեանք եւ մե՛ր նաեհ ,
Այս է կամքը անգութ բաղդին ,
Բե՛ր եւ հասցո՛ւր տառոյգ տիոց ,
Ապա կուլ տուր սեւ սեւ հողին .

Հո՛ն ուր ննջեն մեր պապք եւ հարք ,
Հո՛ն ուր ննջեն մեր հարք եւ մարք ,

Հօ՛ն ուր կարգա 'ւ արէւազուրկ ,
Ննջեն մեր քոյրք , Ննջեն եղբարք :

Հօ՛ն ուր մայր մի՝ կարօտ զաւկին ,
Գլուխն եղեր հողէ սնարին ,
Փոխան սրտին հատոր զաւկին ,
Տայ իւր համբոյրն ցուրտ կափարչին . . . .

Հօ՛ն ուր համբոյր մի ծնելասէր ,
Որ գուրգուրանօք զաւկին վրայ ,
Ցանէ մշակէ քրտնի խոնջի ,
Եւ չի քաղած չիրիմն իջնայ .

Հօ՛ն ուր կոյս մի գեղափթիթ ,
Կենաց գարուն դեռ նոր մտեալ ,
Առանց մի վարդ հոտոտալու ,
Թօշնի , խամրի ոհ . . . նուաղեալ .

Հօ՛ն ուր կին մը՝ կամ ամուսին մ՛ ,
Վաստակաբեկ զիւրեանց ճակատ ,
Ուր տքնեմն հանգչեցուցած ,
Ո՛հ . . . կպառկէր ընկնին տապաստ . . . .

Հօ՛ն վերջապէս ուր պատանի մ՛ ,
Օծանեալ բնութեան պարգեւներով ,
Հազար փափաք հազար յոյսերն ,
Տանի թաղէ ընդ ցուրտ հողով .

Գերեզմանի մութ մառախուղ ,
Ի՛նչ հոգիներ կուլ տուեր է ,
Անգութ Փեսյոս՝ երբ մայր մանէ ,
Ո՛հ . . . ճինչ արեւներ կու խլէ . . . .

Է՛հ . . . այսօր ալ մի՛ պղտորանք ;
Որ խոստանար մեծ ԱՊԱԳԱՅ,
Կենաց գրնէն դեռ նոր մտեալ,
Նուաղի, խամրի ի հող մտնայ ։

Ո՛ հեղինակ Նախաշաւղին,
Կենաց շաւղին նախօրեանն ես,
Անոյշ շաւիղդ էր կորուսեալ,
Եւ մոլորեալ կը թափառիս . . . .

Քաղցր կեանքդ մոլութիւն մ՚էր,
Բայց ոչ հեշտից՝ այլ միշտ ուսմանց,
Որոյ երկը Հայ-մանկտին,
Վայելեց դեռ տասն օր . տաւղ ։

Քաղցր կենաց ի դարաստան,
Դեռ նոր էիր ասպնջական,
Քան գարնան քան վարդեր .
Հազիւ ճակատդ պըսակեր . . . .

Քանի տարիք ունենալը,
Ըղձի սիրոյ երազներու,
Ցաւոյ ովկիան մ՚ունենալ է,
Է՞ր զինչ սառուեր անհետափս դժե .

Քանի տարիք ունենալը,
Սիրոյ երգի փունջ մ՚է արդէն,
Վա՜հ . . . այդ փունջը չի հասուած,
Հծծիւն հծծես գերեզմանէն . . . ։

Քանի տարիք ունենալը,
Փափաքներու վառարան մ՚է,

Քո խիղճ եւ յոյս զմխիթարութեան ,
Ծնողին դնեն սեւ հող կըլլէ ։

Դու Ոսկեղօծ տարիքն ունիս ,
Տարիք սիրոյ եւ երգելոյ ,
Անժամանակ ընդէր լռես ,
Քո սէր 'ւ երգեր յանձնելով հողոյ ։

Է՛հ թող դադրին մխիթարանք ,
Հանդերձելոյն դադրին յոյսեր ,
Նա՛ որ այսպէս կորուստ մ'ըրեր ,
Թո՛ղ լայ , ողբայ , մի արգիլեր ։

Եթէ հաւատք մ'ունինք ի մեզ ,
Որ արտասուօք վէրքեր բուժին ,
Արցունք մաղթեմ ո Ցակոբիկ ,
Քո ծանօթաց եւ ծընողին ։

Իսկ դո՛ւ վեհ եւ ազնիւ ոգիդ ,
Ե՛րթ խաղաղիկ յանմահութիւն ,
Մեր գրական խոնարհ հովտին
Մէջ 'տի փայլիս յաւիտեան դուն ։

Գերեզմանի բուրվառին մէջ ,
Ոսկերոտիդ թո՛ղ խունկ ըլլի ,
Եւ մինչ Տէր Հայրդ պատարագէ ,
Սեղանիդ մէջ ծխէ մըխէ ։

**Խ. Յ. ՍԱՐԱՃ**

**28 Մարտ 1876**

Ի Թիւ 292 Հայրենիք լրագրոյ.

(Թիւ 4)

ՈՂԲ Տիգրան Յ. Սերեան ուսումնական երիտասարդի կոստանդնուպոլսեցւոյ.

# Ի ՍՆԿԱՐ ՏԻՐՍԻՆ

# ՎԱՂԱՀԱՍԻ ՅԱԿՈԲԻՆ ՄԿՐՏԵԱՆԻ

## ԱՒԱՂ ՄԸ

Եւ մինչեւ ցեր . . . դառնացուցիր զիս յոյժ յոյժ,
Քայլերս առաջ՝ դարձան յողդողդ եւ անույժ . . .
Մահուդ այդ զերդն ինձ անպատրաստ տաս բաժին,
Ես չեմ տանիր անխօս զրպարտ այդ չարին.
Եւ ըսպիտակ շուշանազգոյն հիւսեր են
Զայդ ժապաւէն ծածկոցիդ՝ որ զքեզ պատէն,
Ցերկրորդ աշխարհ մ՚առաջնորդող այդ նաւդն՝
Այդ դագաղիդ՝ առագաստն է հողմացուն՝
Որ լարածիդ՝ ալեաց վերայ խոյանայ՝
Ալեաց՝ խըռով այս ամբոխին որ կուլայ . . .
Եւ դուն կուգես որ պարան մ՚ալ ես ձըգեմ
Քու այդ նաւուն . . . եւ հետդ ընկեր գեռ քալեմ . . .
Եւ մինչեւ ցեր, մ՚լ Ցակոբիկ, չես գիտեր
Որ Թաչունն երբ վերաւորի՝ չը թըռեր.
Թէպէտ ըլլայ ի խառնվայոյց ոմկէ ան՝
Ուր Թէ ընկնի՝ հեղձամղձուկ կըլլայ այն.
Ի՞նչ, չես գիտեր որ երբ հողեհ ծաւալի՝
Թողու զզանձն իւր հայրն եւ խնդրէ զիւր որդի,
Թախն փոխող բերնէն՝ եթէ փրկել զայն կրցաւ.
Նա բացածախ զանձուն համար չունի ցաւ.

Ինձ ալ բաժին այն շղարշն որ քեզի պէս
Ծուշանափայլ եւ շնորհալից՝ ծածանէր
Բազկիս վերայ՝ ուր զօդեցին եղբայրներ . . .
Եւ ըսին ինձ՝ « Յակոբիկին պատուէ զսուգ » ,
Իբրու թէ զիս չէին զեղուր արտասուք .
Վա՜հ , այդուհետ սիրտս յետ մահուդ քեզ զօդէիր՝
Չի գեր քան զիս յոյս եւ իղձեր ունէիր . . . ,
Եւ մինչեւ ո՞ւր . . . ալ չեմ ժուժար քայլել ես
Հոս կը յանգի մեր կենաց քաղցր ասպարէզ,
Դեռ ապրողին քաղցր է ապրիլ յայս աշխարհ ,
Թէ մեռնողին՝ որ ժպտի՝ է արհամարհ .
Հոս այն եզրն է՝ ուստի յայնկոյս մահն իշխէ ,
Յայսկոյս իշխէ կեանք մ՚որ մահուան գերին է ,
Թէ հոս դարուն՝ գեղ ու քաղցունք չըլլային՝
Գէթ իբր անուրջ , մարդն անկասկած զիւր հոգին՝
Որ անեզր էր՝ կը ճողոպրէր գերութեան
Կենաց լուծէն , եւ զոհ կերթայր ինք մահուան ,
Ջհոգին յազատ՝ յանցաւ վայր մը յըղելով .
Գերեզմանն է հոս . . . ապրողին դա վրդով
Եւ դող ազդէ . . . եւ մինչեւ հիմ՝ Յակոբիկ
Ուզեցիր որ ուղեկցիմ քեզ , եւ մենիկ
Հոս թողում զքեզ . եւ ուրեմն հոս ընտրեցիր
Վայր քո զենման , բայց ընդէ՞ր դու մերժեցիր
Քաղցունքն երկրի , քաղցունք տիոց եւ յուսոյ .
Մի՞ դուցէ այն Յիսուսն՝ որ յամպս լուսոյ
« Տեսայ » ըսիր դու քո ծնողաց . . . զքեզ կոչեց ;
Եւ փո՛յթ հոգիդ զազատ՝ զանհուն վայրն ընտրեց ։
Ե՛րթ դու ուրեմն , ոգիդ , թռի՛ր անդր յերկին ,
Երկինն է հոն՝ ուր յետ աստեաց փոթորկին՝
Ի կոհակացն ամեհի մազապուր
Փրկեալ հասնին քեզ պէս ժպտող հոգիք բիւր .

*Եւ գերեզմանն անոնց Թաքուն սափորն է՝*
*Ուր պահեցին գիւրեանց մարմին՝ զինչ հալուէ՝*
*Զոր օր մը ծխեն անոյշ բուրմամբ առ Որ էն*
*Ցոյց տալով թէ՝ զոսկրոտին այն հողեղէն*
*Քանի՜ փսեմ երկրի վերայ գործեցին ,*
*Զի փսեմացաւ մարմինն ի փսեմ յիւր հոգին ·*
*Հոգիդ հեզիկ , լացողներուդ մերթ ի սիրտ*
*Է՛ջ ի սփոփել զանոնք ի ձայն մրմունջիդ*
*Թէ՝ սփոփուած ես դու Հայրենիքդ հասած արդ*
*Հայրենիք մը՝ ուստի պանդուխտ չերթար մարդ ·*
*Ե՛րթ , Ցակոբիկ, եւ թող աւաչս այս մինչեւ*
*Քո հոգւոյդ հուպ ձգտի հասնիլ օդաթեւ ,*
*Որպէս մաղթանք Նաւագնացին յահեղ ծով՝*
*Զօրուտագոչ ամպ մայր չանթից՝ հերձելով ։*

**ՏԻԳՐԱՆ Ս. ՍԷԹԵԱՆ**

**28 Մարտ 1876,**
**Օրթագիւղ.**

*Ի Թիւ 292 Հայրենիք լրագրոյ.*

(ԹԻՒ 5)

*ԼՐԱԳԻՐ թիւ 162, ի 29 մարտի՝ խմբագրեալ ի Նիկողոս Էֆէնտիէ Թիւլպէնտճեան.*

---

*Ցաւօք սրտի կը ծանուցանեմք թէ Պատրիարքական Փոխանորդ Մկրեան Գեր. Տ. Յովհաննէս քահանայի ծաղկահասակ որդին,*

## ՅԱԿՈԲԻԿ ՄԿՐԵԱՆ

*շաբաթ առաւօտ իր մահկանացուն կնքեց ի հասակի 20 ամաց, ի խոր սուգ համակելով իւր ծնողքը, ազգականներն ու բարեկամները։*

*Հանգուցելոյն յուղարկաւորութիւնը երէկ մեծ հանդիսիւ կատարեցաւ ի Գում-գաբու, ուր ժողովրդեան անթիւ բազմութեան հետ ներկայ կը գտնուէին ազգային բարձրաստիճան պաշտօնավարներէն ոմանք, ինչպէս նաև Ամեն. Ս. Պատրիարքը յուղարկաւորաց կարգին մէջ, որն որ Մայր եկեղեցին սրտառուչ և ազդու դամբանական մը խօսեցաւ։*

*Հանգուցելոյն, որ ուսումնասէր և աշխոյժ երիտասարդ մ'ըլլալով հանդերձ, իւր ծնողաց ալ ապագային մէջ արժանի զաւակն ու օժանդակն ըլլալու փայլուն խոստումներ կուտայր, այս տարաժամ մահը իրաւամբ անդարմանալի կորուստ մը և դառնաղէտ վիշտ մը համարուի իւր ծնողաց, առ որս մեր վշտակցութիւնն յայտնելով, մխիթարութիւն կը մաղթեմք յերկնից իրենց։*

(ԹԻՒ Ե)

ՄԱՆԶՈՒՄԷԻ ԷՖՔԵԱՐ թիւ 3089, ի 29 մարտի՝ խմբագրեալ ի Կարապետ էֆէնտիէ Փանոսեան.

---

Պունտան չէնտ կիւն էվվէլ եօտէրի պէրքիւզիտէսինի իլան իթմիշ օլտուղումուզ եանփ Վէքիլ տէր Հայրըն սէվկիւլիւ էվլատը օլուպ, վէ Ծահնազարեան վարժարան իլէրուտէ շակիրտանընտան պուլունան Յակոբ էֆէնտի Միրեան, խայլի վագըթտան պէրու մուպթէլա օլտուղու իլլէթը մուհլիքէտէն ազատէյի սէրի խուէմէյերէք, ճումա էրթէսի կիւնիւ, ճամը ֆէնայը տէսթի էճէլտէն նուշ իյլէտիկլինտէն, քեաֆֆէյի քէնտույի թանըյանլարը վէ ալէլ խուսուս բէտէր ու վալիտէ վէ ագրապալընը տիւչարը տէրտայի մաթէմ իյլէմիշ, վէ տիւնքի կիւն ճէնազէ զիյնէթի Մայր եկեղեցիտէ իճրա իտիլմիշ, վէ փէք չօգ իզտիհամ վէ Սրբազան Պատրիարք հազրէթլէրի տախի հազըր պուլունմուշլար, վէ Պալըգլը գապրիսթանընա նագլ իտիլէրէք տէֆն իտիլմիշ տիր ։

Միլլէթիմիզ պու պապտէ, եալընըզ ախլագը համիտէյէ մալիք պիր նէվճիվան ղայպ իթմէյիպ, իւլա պիր իյի գալէմ, պիր թէմիզ եիւրէք, պիր ճէվհէրլի պաշ, պիր ազգասէր, պիր հայրենասէր, վէ պիր ուսումնասէր ղայպ իյլէմիշ տիր ։

Զի՛ չարէ, էճէլին ֆէրմանընա շահլար վէ փատիշահլար տախի իթաաթա մէճպուր պուլուն-

տուղյարընտան, դուր. Խուսուսա պաշգա պիր չէյ անլէմէյիզ, եյլա, տէրանեգ բէաէյրի ադի- գլնէ հէմմիաթէմ օլմազըլըգ պօրճումուզդուր. Իֆա խաէրիեջ, հէման Ճէնապը Հազգըն թէսէլլէ պուլմալարընը թէմէննի խաէրիզ։

(ԹԻՒ 7)

*ՄԱՍԻՍ թիւ 1812, յ30 մարտի՝ խմբագրեալ ի Կարապետ Էֆէնտիէ Իւթիւճեան.*

Հազուագիւտ ձիրքերով օժտեալ, գեղեցիկ և պայծառ ապագայ խոստացող քաջնամեայ պատանի մը, Պատրիարքական փոխանորդ Գեր. Տ. Յովհաննէս Մկրեանի անդրանիկ որդի, Յակոբիկ Մկրեան, որ դեռ տասն և հինգ օր առաջ իւր մտաւորական երկանց ընտիր մէկ ծնունդը ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ անուն պատուական և հմտալից աշխատասիրութիւնը կընծայէր հայկական մանկտւոյն, չարաթ առաւօտ իւր ծաղիկ կենաց գարունը կնքեց՝ յանմխիթար սուգ ընկղմելով իւր գորովագութ ծնողքն ու ազգականքը, և միանգամայն կսկիծ պատճառելով ամեն զինքը ճանչցողներուն։

Յուղարկաւորութեան տխուր հանդէսը կիրակի օրը կատարեցաւ մեծ շքեղութեամբ ի Մայր եկեղեցին Գում-գափուի՝ ի ներկայութեան

հազարաւոր ժողովրդոց և բազմաթիւ բարձրաստիճան եկեղեցականաց և աշխարհականաց։ Ամեն. Ս. Պատրիարք հայրն ալ յուղարկաւորաց կարգէն էր առանց զգեստի ի նշան իւր յատուկ սիրոյն և բարեկամութեան առ Գեր. Տ. Յ. Մկրեան։ Ն. Սրբազնութիւնը վսեմ իմաստով սրտառուչ դամբանական մը խօսեցաւ, և իրեն հետ ի միասին համայն ունկնդիրներն ալ յարտասուս համակեց։ Յետոյ հանգուցելոյն մարմինը նոյն հանդիսաւոր ուղեկցութեամբ մինչև Լանկա տարուելով՝ անտի ալ Պալըգլըի գերեզմանատունը փոխադրեցաւ։

Այսպիսի ընտիր, առաքինի, խոհական և ուսեալ պատանւոյ մահն անդարմանելի կորուստ մ'է ազգին համար, իսկ իւր ծնողաց սրտին այնպիսի ծանր և անբուժելի հարուած մ'է զոր զաւկի տէր եղողք միայն կրնան երևակայել. ուստի ուրիշ բան չմնար մեզ ընել, եթէ ոչ համբերութիւն մաղթել Գեր. Տ. Յ. Մկրեան հօր և իւր առաքինափայլ ընտանեաց։

(ԹԻՒ 8)

**ՆՈՐԱԳԻՐ թիւ 1788, յ30 մարտի՝ խմբագրեալ յՕգսէն էֆէնտիէ Խօճասարեան .**

---

Ազգը խիստ ցաւալի կորուստ մը ունեցաւ անցեալ շաբթու ։

Պատրիարքական փոխանորդ Հօր ծաղիկ զաւակը՝ Յակոբիկ Տէր Մկրեան, իր 20 ամեայ հասակին մէջ յետ ծանր հիւանդութեան շաբաթ օր առ Աստուած փոխեցաւ և կիրակի օր դամբանական հանդէսը կատարուեցաւ մեծաւ բազմութեամբ, որու կը նախագահէր Ս. Պատրիարքը։

Հանգուցեալ երիտասարդը Շահ. Նուպար վարժարանի աշակերտներէն ըլլալով՝ իր մայրենի լեզուին քաջ հմտութիւն ունենալէն զատ՝ գիտէր նաև բաւական գաղղիերէն, որու իր հիւանդութեան վերջին օրերը ազգային դպրոցներու համար հրատարակած «ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ» անուն պատկերազարդ գիրքը, զինքը անմահ պիտի կեցնէ ազգային մանկտւոյն առջին, որովհետև իր տեսակին մէջ առաջինն է, տղայոց ամեն կարգի գիտութեանց սկզբունքը սորվեցնելու մասին։

Հանգուցելոյն Գեր. Հօր զգացած անբուժելի ցաւը դարմանելու համար՝ անկարելի է խօսք մը գտնել՝ բայց եթէ հնազանդիլ Աստուծոյ հրամանին և մխիթարուիլ իր ծաղիկ զաւկին

դրութիւնները կարդալով ու փառք տալով Աստուծոյ, որ իր զաւակը իր այդ հասակին ու վիճակին մէջ կարող եղաւ ազգին ծառայութիւն մատուցանել և ազգին զաւակունքը կրթելով յաջս նոցա անմահ մնալ յաւիտեան ։

(Թիւ Դ)

ՄԱՄՈՒԼ թիւ 554, յ31 մարտի՝ խմբագրեալ ի Գէորգ էֆէնտիէ Այվազեան.

## Մ Ա Հ Ա Գ Ո Յ Ժ

Ազգերնիս ցաւալի կորուստ մ'ալ ունեցաւ ։

Պատրիարքական փոխանորդ Գեր. Տ. Յովհաննէս քահանային ծաղկահասակ որդին, Յակոբիկ էֆէնտի Մկրեան, յետ երկարատև հիւանդութեան, այս շաբաթ օր կնքեց իւր կենաց ընթացքը, ի հասակի 20 ամաց, ի սուգ անմխիթար թողլով իւր աղնիւ ծնողքն, ազգականքն ու բարեկամները։

Բարեյիշատակ հանգուցելոյն յուղարկաւորութեան տխուր հանդէսը Մայր Եկեղեցին մեծ շքով ու հանդիսիւ կատարուեցաւ կիւրակի օր, ուր Ամեն. Ս. Պատրիարք Հայրն ալ արտասուաց դամբանականաւ մը նորա կեանքը նկարագրեց իբր Հայ պատանեկաց վարուց և բարուց կատարեալ տիպար մը ։

Յակոբիկ Մկրեան արժանեօք լի ներկայ մ'ունէր, որ մեծ ապագայ կը խոստանայր. ուսեալ, բարեկիրթ, ազնիւ, լուրջ և գործունեայ երիտասարդ մ'էր, քաջ ճանչելով ու կատարելով առ Աստուած, առ ծնողս, առ ազգն և առ բարեկամս ունեցած պարտքերը, մէկ խօսքով այնպիսի մաքուր և ընտիր բարոյական մ'ունէր, որ ստուգիւ մեծ պատիւ կը բերէր իւր ծնողացն և համակրանք կ'ազդէր ամէն անոնց՝ որք զինքը տեսած ու բարեկամութիւնը վայելած էին։

Իւր վաղաժամ մահն արդարև կորուստ մ'է Ազգին, և անմխիթարելի ցաւ մը իւր վշտակիր ծնողացը, որք հաճելի զոհ մ'ընծայեցին առ Աստուած, յորմէ միայն կը մաղթեմք իրենց վշտացը միակ սփոփանքը։

(ԹԻՒ 10)

ՓՈՒՆՋ թիւ 1065, յ31 մարտի՝ խմբագրեալ ի Համբարձում էֆէնտիէ Ալահաճեան.

Պօլսոյ Պատրիարքական փոխանորդ Գեր. Տ. Յովհաննէս Մկրեանի անդրանիկ որդի՝ Յակոբիկ Մկրեան, որ ժամանակէ մը հետէ անկողնոյ կը ծառայէր, շաբաթ առաւօտ իւր մահկանացու կենաց ընթացքն աւարտեց 20 տարեկան ծաղիկ հասակին մէջ, յանմխիթար սուգ ծնողացն, ազգականաց, բարեկամացն ու բոլոր ծանօթից։

Հետևեալ օրը յուղարկաւորութեան հանդէսը

կատարուեցաւ ի ներկայութեան Ամեն. Ս. Պատրիարք Հօր. բազմաթիւ եկեղեցականաց և յոգնախուռն ժողովրդեան։ Աղթամարայ Կաթողիկոս ամեն. Տ. Խաչատուր սրբազանն ալ՝ որ ի մխիթարութիւն գացած էր առ Գեր. Մկրեան՝ հրաւէրանօք Ս. Պատրիարք Հօր վերջար և փիլոն առաւ և յուղարկաւորութեան Թափօրին ներկայ գտնուեցաւ։

Գեր. Մկրեան իրաւամբ կողբայ այս վաղահաս կորստեան վրայ. ունեալ՝ առաքինի և բարեպաշտ որդի մի կորոյս։ Հանգուցեալն Ծահնա-ղար-Նուպար վարժարանի նախկին աշակերտներէն էր, և իւր յառաջադիմութեամբն ու հանճարովը ոչ միայն իւր գերդաստանին այլ և ընդհանուր ազգին օգտակար և նշանաւոր անդամ մը հանդիսանալու աներկմիտ յոյս կուտար։ Ծաներուն հետ մեք ևս կը ցաւիմք այս խիստ տարաժամ կորստեան վրայ, և երկնային մխիթարութիւն կը մաղթեմք իւր սգազգեաց պարագայից և մասնաւորապէս Գեր. Մկրեանի համար։

Հանգուցեալ Յակոբիկ Մկրեան «ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ» անուամբ ազգային դպրոցներու համար օգտակար նորատիպ աշխատասիրութիւն մը յիշատակ կը թողու՝ իւր ուրիշ բարեմասնութեանց հետ, որոց ի մօտոյ ծանօթ եղողներն՝ արտասուք յաչս և զմայլմամբ կը հռչակեն, և ազգային երախտապարտութեան համար մի և նոյն նախանձելի բարեմասնութիւններն ու յատկութիւնները կը մաղթեն ։

(ԹԻՒ 11)

## ՆԱՄԱԿ՝ Գ. Սեդրակայ Տէր Սարգսեանց ուսումնականն երիտասարդի Վանեցւոյ. (1)

— «Մահ ոչ իմացեալ մահ է,
Մահ իմացեալ անմահութիւն է:»

— «Զի հոգիք արդարոց ի ձեռին Աստուծոյ են, եւ ոչ մերձեսցի ի նոսա մահ :»

Գերապատիւ Հայր,

Ձեր վիշտը մերն ալ է։ Եւ մենք վիշտ ունինք, զի մենք մարդ ենք. մարդ եւ վիշտ ի միասին ծնած են ։

Երանի անոր որ այս վիշտերու ծփանաց մէջ կը յաջողի արդար հոգի մը հասցնել եւ ընծայել Աստուծոյ. չիք քան զայս առաւել մարդկային շահ եւ վաստակ մխիթարական ։

Այս աշխարհը Աստուծոյ գործարանն է, եւ մենք անոր անմռունչ գործաւորներ ։

Միթէ ողբալու տրտնջալու է այն մարդ՝ որ շատ աշխատ լինելով հանքային լեռ մը կը քրքրէ կը պեղէ եւ անոր մէջ պատուական գոհար մը գտնելով Տիրոջ կը նուիրէ ։ Մեր եղբայր Յակոբիկը, Աստուծոյ ձեռաց մատանին է այժմ. Նա ձեր վարձատրութեան երաշխաւորութիւնն է առ Նա ։

Այսօր Յակոբիկ գնաց, վաղ մենք իրեն կը հասնինք. եւ վաղն ալ այսօր է ։

Մի, մի լալ վանդակէն յազատութիւն՝ յանմահութիւն թռչող սոխակին ետեւէն. Նա շուտ թռաւ, բայց լաւ երգեց. ինքն երգի յիշատակ մ'է մեր հոգւոյն մէջ.

---

(1) Հեղինակ Վարդարանի Կայծեր և Շահենան ի Սիւնէր ընտիր գրուածեանց, եղբայր Գեր. Տ. Երեմիա Ս. Եպիսկոպոսի Տոփաց:

թող տուր, այս սուտ փուտ աստուորէս թռչի երթայ Աստուծոյ համար երգէ ։

Շնորհակալ ըլլալու ենք, զինքն այսչափ մեզ շնորհողէն ։ Շնորհի դէմ տրտունջ չըլլար ։

Աղէ, պատժենք արեւը, օդ ջուր եւ հողը, որ մեր սիրելոյն օգնել գլացան, բայց միթէ կրնանք։ Արեւը եւ Ցակոբիկն Աստուծոյ ձեռքն են, անոր շնորհքն են ։

Մի լաք, երկնային կարաւանը անընդհատ է, Ցակոբի հետ բիւրաւոր ընկերներ կային, նոյնպէս մարդ Ադամորդի, եւ մենք նոյն կարաւանի մէջն ենք, եթէ վեր նայինք զինք կը տեսնենք կը գտնենք, եթէ վար յերկիր պշնունք, կը կորուսանենք զինքն, եւ մեք անյուսութեան անտակ խորանդր անդնդոց մէջ կընկլուզինք ։

Սակայն Դուք Ցուսոյ պաշտօնեայ էք, երբ մենք երկրապիշ եւ անվստահ մարդիկ՝ աչքերնիս յերկրէ յերկինս չենք համբառնար՝ կը մոլորինք, դուք լոյս տալու էք մեր շաւիղներուն, ուղղելով մեր ընթացք եւ հայեացք դէպի Ցոյսն յաւիտենից, յորմէ եկանք երթալու համար ։

Երկրային լեզուով (1) Ցակոբիկն՝ մեծ կորուստ է, երկնայնովը մեծ վաստակ. ապաքէն եւ դուք երկնային էք, Քահանայ Տեառն Բարձրելոյն ։

Մխիթարեցարուք, զի եւ Քրիստոս է մեր ամենասիրելի արդարոյն Ցակոբայ առաջնորդը, Խաչիւ Մահուամբ եւ Ցարութեամբն ։

Աւագ Ուրբաթ,
Իւսկիւտար, 1876.

Վշտակից որդեակ Ձեր
Ս. ՏԷՐ ՍԱՐԳՍԵՆՑ

(1) Մխիթարութեան կարօտ երկրային լեզու ։

(Կցորդ Նամակի Ռոյթ Գ. Սեգրաֆայ)

---

## ԼԱՑ ԳԼԳՈՒԼԻՆ ՎԱՐԴԻ ՉՈՐ ԹԵՐԹԻ ՎՐԱՅ

## ՅԱԿՈԲԻՆ ՎՐԱՅ

Վախ իմ թառամած չորցած վարդս
Ի՞ր ստեղծար էր թառամեցար,
Եթէ չէիր՝ քեզ չէի տեսնէր
Քեզ չէի սիրեր, քեզ չէի ցաւեր.
Դու եղար ինձ մխիթարանք
Դու եղար ինձ օթեւանք,
Ինձ դու տուիր երգ խաղ եւ տաղ
Այժմ չորցար՝ չորցուցիր զիս,
Սիրտս սեւցաւ լեզուս կապտաւ
Խաղեր տաղերս վերջացաւ ։

Էլ չեմ օրհներգում
Այլ բողոքարկում,
Առ Այն՝
Որ դեղեցիկն
Տգեղացնել չի խղճեր.
Ի՞ր կուստեղծէ, էր կապականէ
Զիս ուրախ կանէ, ու լիր լացնէ,
Ես վարդ չուզեցի
Նա ինքն ինձ տուաւ,
Ես չի մերժեցի
Ընդէ՞ր ետ առաւ ։

Ով իմ վարդի Տէր,
Ով տուաց քեզ տուր,

Ո՛վ տայց քեզ տա ,
Ինչու տուիր ինչու առիր
Այս ինչ տեսակ շնորհ է ,
Այս ինչ տեսակ տուր եւ առ,
Վախ իմ թառամած չորցած վարդս . . . :

* * *

# ՄՏԱԾՄՈՒՆՔ

## ԻՄ ՍԻՐԵԼԵԱՑՍ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Է՛հ քանի որ վերջ գերեզման կայ
Մարդոց երես ծաղր չի գար,
Մարդիկ ամէն միշտ հիւանդ են
Ինչու ինչու իրարու հետ
Շատ փափկութեամբ չվարուին.
Մարդիկ լուռ մունջ որոջներ են
Որ կտրճի՝ մահուան առջեւ կը քալեն:

Եւ ամէն մարդ իւր զոհարան կը տեսնէ,
Կը տեսնէ պապ, մամ, հայր եւ մայր,
Իր կին զաւակ եւ եղբայր ,
Աչքին առջեւ կը գնան՝
Սպանդարան կը մտնան,
Ուր իր գութ սէր խինդ յոյսն ամէն
Ամէնքն ալ հոն կը թաղուին,
Մարդիկ զասոնք կը տեսնեն
Յետս նահանջել կարող չեն,
Զի այդ ուղին միայն յառաջ
Գնալու արհեստովն է շինուած :

Եւ մինչ խեղճ մարդն իւր սիրելեաց
Մահուան վրայ նոր ելաց,

*Ահանիկ ինքն ալ իր ոտք այդ փոս*
*Զգեց գնաց . . .*
*Օ՛հ, կատակով կուգանք յաշխարհ,*
*Ողբերգութեամբ կընթանանք,*
*Եղերգութեամբ կը վերջանանք ։*

*Ո՞վ է շինող այս սոսկալի թէատրին,*
*Ով հեղինակ այս ահռելի կատակին,*
*Եւ ով է այն հանդիսատես,*
*Անթիւ անմեղ զոհերու*
*Մարդոց մահուամբն կըզբօսնու . . . ։*

«ՎԱՌԱՐԱՆԻ ԿԱՅԾԵՐԷՆ»

---

(ԹԻՒ 12)

*ՆԱՄԱԿ՝ Յարութիւն Էֆէնտիի Մէրէնճուղեան .*

---

## ԱՌ ՈՐԴԵԿՈՐՈՅՍ ՀԱՅՐՆ

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

### ՓՈԽԱՆՈՐԴ Ս. ՊԱՏՐԻԱՐՔԻ Կ. ՊՈԼՍՈՅ

*Վշտակիր Հայր ․*

*Այն ինչ Պոլիս վերադարձայ, աչք յարտասուր ծանուցին ինձ թէ անզուգական հոգի մը թռեր էր Ձեր գրկէն, թռեր եւ զրկեր էր զՁեզ՝ զգորովալիր Հայրդ՝ հանճարալից գլխէ մը, առաքինի զաւկէ մը, արժանաւոր յաջորդէ մը ։ Ձեր հոգեհատոր որդին եւ ամենուս սիրելին՝ Յակոբիկը՝ մեռեր էր, վա՜հ . . . ։*

*Սարսափահար ըրաւ զիս այս գոյժն եւ սիրտս մըրկեց շանթահար ։ Հապա Ձեր սիրտն ինչ եղած էր . . . ։ Ձերն ի թախիծ մատնուած, Ձեր տունն ի սուգ հա-*

*մակեալ էր անշուշտ. վասնզի Ձեր սրտին հատորը, Ձեր տան շատաւիղը հրաժեշտ տուած էր յաշխարհէս . . . : Ձեր գուրգուրալից խնամքն առ ոչինչ գրելով՝ բաժնուեր հեռացեր էր նա ի Ձէնջ. Ձեր լալագին պաղատանաց խուլ մնալով՝ յերկինս ի վեր էր սլացեր . . . : Է՛հ, մոռանելն անգամ դառն է եւ անըմբռնելի . . . :*

*Գիտէք արդէն, Հայր պատուական, թէ սրտագին սիրով կը սիրեմ զՁեզ. գիտցէք նաեւ թէ Ձեր վաղամեռիկ զաւկին յիշատակն ալ պիտի սիրեմ: Կարելի չէ ինձ անկարեկիր մնալ Ձեր տխրազգած վիճակին. գիտեմ թէ մխիթարական պարտականութիւն մ'ունիմ առ Ձեզ, բայց կը շուարիմ, կանգիտանամ զայն ինչպէս կատարել: Ու ինչպէս կարելի է չշուարել . . . :*

*Այլ ո՞վ էր, որ առաւ Ձեր ձեռքէն այն ազնիւ հոգին, եւ վասն Ե՞ր արդեօք. ո՞ւր էր, յոր թռեաւ այն վեհ հոգին, եւ առ ինչ արդեօք :*

*Սոցա պատասխանն՝ որոյ մէջ է, Հայր վշտացեալ, Ձեր մխիթարութիւնը՝ դուք քան զմեզ քաջ գիտէք: Ձեր քարոզած Ս. Աւետարանը կուսուցանէ զայն, որմէ օգտիլ եւ սթափիլ ոչ միայն արդի պարագայից մէջ՝ պէտք մ'է Ձեզ անհրաժեշտ, այլ աւելի պարտք մ'է անխուսափելի :*

*Ձեր զաւակն յերկինս է թռած եւ բունած, Հայր Մկրեան, զոր Դուք սիրեցիք թէպէտ անհնարին սիրով, բայց չէիք կարող սիրել այնչափ, որչափ սիրեց զինքն Աստուած եւ կը սիրէ :*

*Նա երջանիկ էր Ձեր գրկաց մէջ, բայց այժմ երանելի է ի հանգիստ երկնից փառաւորեալ.*

*Մնամ վշտահար Հօրդ ցաւակից որդի*

**Բերայ, 1 Ապրիլ 1876.** **Յ. ՄԷՐԵԷՄ-ԳՈՒԼԻ**

(ԹԻՒ 18)

*ՀԱՅՐԵՆԻՔ, թիւ 291, յ3 Ապրիլի՝ խմբագրեալ ի Մկրտիչ Էֆէնտիէ Մելիքեան Պարտիզակցւոյ.*

---

## ՅԱԿՈԲԻԿ ԷՖԷՆՏԻ Յ. ՄԿՐԵԱՆ

Գիտութեան բուրաստանին մէջ նոր բացուած ծաղիկ մը, բնութեան ամենէն ընտիր ձիրքերովը օժտեալ, շաբաթ օր խամրեցաւ թառամեցաւ յաւիտենականութեան ծոցն երթալու համար։

Այս ծաղիկն էր Կ. Պոլսոյ Պատրիարքական փոխանորդ Մկրեան Գեր. Տ. Յովհաննէս քահանայի հարազատ որդին ՅԱԿՈԲԻԿ ԷՖԷՆՏԻ ՄԿՐԵԱՆ հեզահամբոյր, հայրենասէր, գիտուն և բարեպաշտ պատանին որ իւր իննևտասնամեայ գարունը կնքեց պանդուխտ հողի վրայ՝ հայրենի երկրին կարօտովը լցուած։

Հանգուցելոյն յուղարկաւորութեան տխուր հանդէսը կատարուեցաւ կիրակի օր ի Մայր եկեղեցին, ուր ներկայ կը գտնուէին Ամեն. Ս. Պատրիարք հայրը, Ամեն. Տ. Խաչատուր Ս. Կաթողիկոս, Գեր. Սիմոն եպիսկոպոս, մայրաքաղաքիս եկեղեցեաց քարոզիչ Հարք, Ազգային Երեսփոխանք, Քաղաքական Ժողովոյ անդամք, ամէն ազգէ բարձրաստիճան անձինք, Լրագրապետք և 5000ի չափ յուղարկաւորաց խուռն բազմութիւն մը։

Հանդիսին շքեղութեանը մեծ փայլ տուաւ

Ամեն. Տ. Պատրիարք հայրը որ տուանց եկեղեցական զգեստուց դագաղին առջեւէն կը քալէր ի նշան բարեյիշատակ հանգուցելոյն վրայ ունեցած հայրական ամբաւ սիրոյն։ Երբ դագաղը Մայր եկեղեցին հասաւ, Ամեն. Տ. Պատրիարք հայրը սրտառուչ և իմաստալից դամբանականաւ մը պատուեց հանգուցելոյն մարմինը և նորա ծաղիկ հասակի մէջ ունեցած գրական հանճարը ազնիւ սիրտն ու հոգին դրուատելով, լացաւ և իրեն հետ ամէնքն ալ լացուց։

Միւնոյն չքեղութեամբ և հանդիսիւ հանգուցելոյն մարմինը մինչև Լանկա տարուելով, անտի Պալըգլըի գերեզմանատունը փոխադրուեցաւ և հոն ամփոփուեցաւ։

Վաղամեռիկ հանգուցելոյն՝ մեր և ամենուն սրտէն ու յարգելի պատանւոյն աղէխարով ծնողաց, ազգականաց և բարեկամաց լացն ու վիշտը անհնար է պատմել, որք հանգուցելոյն դագաղին շուրջը բոլորած հրաժեշտի ողջոյն տալով չէին յագենար։

Ամէն ոք որ կը ճանչնար զինքն ի մօտոյ և քաջ հասկցած էր անոր հեզահոգի սիրտը, բազմաբեղուն միտքը և քրիստոնէական ազնիւ զգացմունքը, անհնար է որ չը խոստովանի թէ նորա կեանքը Ազգին մէջ արժանաւոր զաւակներ յարուցանելու օրինակ և առաջնորդ կրնայ ըլլալ։

Սա Պաղչէճիկի՝ իւր հայրենի երկրին աղքատիկ վարժարանին մէջ նախնական ուսմունքն առնելէն վերջը 1869ին Մայրաքաղաքս եկաւ և իւր ծնո-

ղաց որդեգրորդ խնամողները և Խասգիւղի Ճան-Նուպար վարժարանը մտաւ աշակերտելու համար, ուր երեք տարի ամբողջ գիշեր և ցերեկ, անդուլ և անքուն ուսման պարապելով, հիւանդութեան փոքրիկ նշաններ սկսան տեսնուիլ վրան ինչպէս սովորական է տեսնել յոգնաջան տքնութեամբք վաստակելոց վրայ։ Այս պատճառաւ թողուց վարժարանը, որ շատ ծանր էր իր սրտին և զոր յանչափս կը սիրէր իբր գիտութեան խանձարուր։

Ճան-Նուպար վարժարանի դասատուք և ուսանողք ցաւեցան և շատ ցաւեցան այսպիսի ուսումնասէր աշակերտէ և հեզահամբոյր ընկերէ մը բաժնուելնուն վրայ. ուստի շատ անգամ այցելութեան կուգային իրեն և վարժարանի վիճակին վրայ կը խորհրդակցէին։ Սա անմիջապէս սկսաւ հեռաւոր երկիրներ գտնուող գիտնական անձանց հետ թղթակցութեամբք յարաբերութիւն հաստատել, ինչպէս են Ռուսաստան ծերունի Գաբրիէլ Պատկանեանի և Տփխիսի ազգային լրագրապետաց, և ուրիշ գիտնական ազգայնոց հետ, որոնք հանգուցելոյն տաղանդը, հայրենասիրական զգացումները, վառվռուն երեւակայութիւնը տեսնելով և Կ. Պոլսոյ ազգային լրագրաց մէջ մերթ ընդ մերթ նորա բանասիրական, պատմական, հնախօսական և լեզուաբանական յօդուածները կարդալով, կը հիանային և պատիւ կը համարէին այնպիսի մատաղատունկ բայց հանճարալից պատանույ մը հետ բարեկամութիւն հաստատել։

Հանգուցեալը վարժարանէն մեկնելէն վերջը ամբողջ չորս տարի կեանք ունեցաւ. իւր հիւանդագին աւուրց մէջ երբեք գրիչը չէր թողուր, զի միտքը բազմաբեղուն էր և կուզէր դուրս տալ ինչ որ կերկնէր։ Ամենեւին չէր յոգներ և ոչ իսկ կը ձանձրանար գրելէ. շատ անգամ Ազգին ներկայ վիճակին և ապագային վրայ խորհրդածելով կը ցաւէր և դեղ դարման կը մտածէր. բոլոր այցելուները անխտիր կը յարգէր ու կը պատուէր, և զինքը միանգամ տեսնողները ալ այնուհետև բարեկամ կըլլային իրեն։ Հիւանդութիւնը օր օրի կը սաստկանար, բայց նա կը ժպտէր ու կսփոփէր երբ գրիչը ձեռքը կառնուր կամ երբ նոր երկասիրութիւն մը ցուցնէին իրեն, մանաւանդ երբ Խրիմեան որբազանի կամ Ծերունի Պատկանեանի գրչէն ելած ըլլար այդ, զորս յանչափս կը սիրէր և մինչև իսկ կը պաշտէր։

Այսպիսի դրամով կեանք մը ի հարկէ պիտի ծանրացնէր իւր հիւանդագին վիճակը որ անդարմանելի ըլլալուն նշանները ցուցնել սկսած էր. այնպէս որ բժիշկները գրելէ և վերծանութենէ բոլորովին արգիլեցին զինքը. սակայն նա չը լսեց բժշկաց խորհրդատու ձայնին և սկսաւ երկասիրութեան մը խմբագրութեամբը զբաղիլ և այս եղաւ «ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ» անուն ընտիր մատենիկը, որ մեռնելէն 10 օր առաջ ի լոյս ելաւ և կարծես իւր հիւանդագին տառապանաց մէջ մեծ մխիթարութիւն տուաւ։

- Այնուհետև սկսաւ բազմաչարչար կեանք մը վարել, տուայտեցաւ և հիւծեցաւ. բայց նոյն իսկ անկողնին մէջ լրագիր կը փնտռէր և կը կարդար և եթէ մերժէին կամ դժկամակէին, կուլար և կը հառաչէր։ Շատ անգամ իւր վիճակին վրայ կը խորհրդածէր և բոյժ ու դարման կորոնէր. բայց միանգամայն չէր մոռնար իւր տղեկեզ ծնողքըն ու ազգականները մխիթարել՝ որոնք գիշեր ցերեկ իւր մահիճը չրջապատած ի սրտէ կ՚ողբային նորա այս յուսահատական վիճակին վրայ։ Վերջապէս չորեքշաբթի օրէն սկսաւ սրտաճմլիկ խօսքեր ընել իւր ծնողացը, յօժարակամ Հաղորդութիւն, աղօթք և հսկում խնդրել, զԱստուած օգնութեան կանչել և անոր գթութիւնն իր վրայ ու օրհնութիւնն իւր ընտանեաց վրայ հայցել։

Սակայն մարդկային ամէն ջանք և աշխատութիւն անօգուտ եղան. անողոք մահն արդէն մօտեցած և իւր աւարն առնել տանելու պատրաստուած էր. շաբաթ առաւօտ իւր սիրելի ծնողքը և սիրասուն քոյրերն, եղբայրներն ու ազգականները քովէն չը հեռացուց և քրիստոնէական ու որդիական զգացմամբ վառուած զամէնքը մի առ մի գրկեց, համբուրեց և աղօթքի հրաւիրեց։ Շատ սրտաշարժ և տխուր էր այս տեսարանը. Ինքն արդէն դունաթափ եղած, հիւծած ու մաշած, բայց անվեհեր սրտով և յաւիտենականութեան յուսով լցուած մէկ ժամէն աւելի խօսեցաւ անոնց հետ, մխիթարութիւններ ուղղեց և երկնային ուղեւորի թեւեր առնելով ժամը 5 ին

իր ծաղիկ կենաց գարունը կնքեց ճշմարիտ հաւատացեալի մը յուսալից հոգւովը, անվհատ սրտիւ և անխռով մտքով:

Մարդ չկրնար իր արցունքը բռնել, երբ իւր կենաց վերջին վայրկեաններուն մէջ ըրած խօսքերը լսէ կամ կարդայ:

«Հայրիկս և մայրիկս, մրմնջեց հրեշտակա-
«տեսիլ պատանին, մի՛ լայք այսուհետև, այլ ա-
«ղօթեցէք. ամպերուն մէջէն զՅիսուս կը տես-
«նեմ որ կը վերակոչէ զիս. ես չեմ մեռնիր, այլ
«նոր կեանք մը կսկսիմ յաւիտենականութեան
«մէջ: Աղօթեցէք, ուր որ ալ լինիք, եկեղեցեաց
«մէջ, հրապարակներու վրայ և տուներու մէջ.
«ձեզի յիշատակ կը թողում երկասիրած մատե-
«նիկս, որպէս զի անով յիշէք զիս:
«Հայրիկս, 17 տարեկան հասակէս ի վեր ըս-
«կսայ քեզի օգնել Մկրեան բազմաճիւղ գեր-
«դաստանին խնամք տանելու համար. բայց բաղ-
«դը չը թողուց. հիմա երկնային ջրով կը պա-
«պակիմ և կերթամ ծարաւս լեցնելու:
«Երկնից երանութեան մէջ տեղ պատրաստ-
«ուած է ինձ, ես կը տեսնեմ զայդ, ուստի կեր-
«թամ յանմահութիւն:
«Հայրի՛կ, Ձեզ կը թողում խել մը գրութիւն-
«ներ, պիտանիները պահեցէք անպէտները նե-
«տեցէք. իսկ քերական մ'ունիմ շինած, ինչպէս
«կուզէք, այնպէս ըրէք: Դուք մեծ մարդ էք ին-
«ծի համար, զի ծնողական պարտաւորութենէն

« աւելին բրէք, ամէն խնամքը տարէք, կրթեցէք
« և մեծցուցէք զինս :

« Իսկ դուք, քոյրեր և եղբայրներ, հնազանդ
« եղէք իրարու, սիրեցէք զիրար, ինչպէս ես զձեզ
« սիրեցի միշտ. մի՛ լաք վաղաժամ զաւկի և
« եղբօր մը վրայ զոր կը կորսնցնէք յաշխարհի,
« բայց նա կենդանի է միշտ յերկինս» (1) :

---

(ԹԻՒ 14)

ՆԱՄԱԿ՝ Ազարիկ Միհրդաս էֆէնտիի Գէորգեան սեանց ձեռագրաւն ի Նիկոմիդիա.

---

## ԱՌ

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Ի ՊԱՐՏԻԶԱԿ

Որդեկորոյս Հայր, պատուական բարեկամ,

Անհուն մոխիրս ի բոթդ գուշէի, յորժամ պէսապարակ գիշերու հասեալ ժամանեալ ինձ հեռագիրդ գուժկան եւ աւաղ, Հայր որդեկորոյս, ծանուցնս եւ գժուարակիրս ինձ տայր երկնել զբաղում պատասուեաց արժանի Բենիամինիդ արեւու, զսիրեցելոյ որդւոյդ ազնեաց եւ զհոգւոյդ հատորոյն, եւ թեւս թեթեւս ընծանայի ունել, առ ի սուրալ սրանալ գնալ ի մայրն քա-

---

(1) Միհրանիշ Էֆ. Մէլիքեան ի ժամուն յորում խօսէր զայսոսիկ որդեակն իմ., ներկայ գտանէր առ մահճօք նորա՝ և նշանակեալ էր :

ղաքաց, եւ զդուրս՝ այլ զհանճարոյ եւ զգօնութեան պատկանողարան ճակատուն քաղել զհամբոյր անուշարձ հրաժեշտին զոր դրոշմեալ էր իմ ի վերջնում հրաժեշտի ողջունին՝ զոր զգօն եւ առաքինի պատանին գայր յետին բարեկամիս մատուցանել ի հերուն . . . :

Եւ այսօր չարաչուքն ստուգութիւն զվաղամեռիկդ հծծէ յունկս իմ զպարկեշտ եւ զզգօնն եւ զուսումնափայլ Յակոբիկ . . . :

Հայր մի եւեթ, Հայր պատուական, հայր մի եւեթ զգայ զկշիռ այնքանեաց ծանու հարուածոյ. եւ իմ մինչդեռ եւս ոչ անթաց աչք էին ընդ անակնկալ մահ Նորածիլ եւ Նորափթիթ Շաւարշիս, այլ փոքր միւս եւս ամպարշտանայի անէծս կուտելով ձեռին՝ որ անխնայ եւ ընչովլին տապաստ յերկիր արկանէր եւ զբոյդ զնորատունկ մի զքսան հազիւ վայելեալ գարուն՝ այլ հօծ պտղովք արգասեաց . . . : Լացի յոյժ եւ դառնագին ոչ զանզուգական պարմանին միայն որոյ կափուցեալ էր բազմայոյս կենացն գարուն փողանցուկ, եւ յանվերջն եւ յանծայր թռանէր նա ի մշտագարուն, ոչ այնքան զարժանի զՀայրդ որ զօրէն մարդոյ՝ զանծանօթ ապագայի ինմա թերեւս հաստատեալ էիք զյոյս եւ զմխիթար, ոչ այնքան զմայրն որդեգորով եւ ծնելասէր՝ որ զնմանութիւն հռովմայեցի տիկնոջն Գրակգոսեան բերեալ յանձին՝ զամենայն զթանգարժէկան գոհար իւր համարէր զվաղամեռիկն իւր որդեակ եւ արժանալէս. եւ ոչ այնքան զհամօրէն եղբարս եւ զքորս եւ զամենայն պարագայս իւր զկարի կարեւորս, այլ լացի եւ լամ եւ լացից ընդ երկար զԱզգ մի որբ եւ անտէրունչ, զազգ մի հէգ եւ թշուառ՝ յորմէ բուրաստանէն անկարեկիր խլէին իսպառ զաւակ մի, զնորատի մի մարդատունկ՝ ապագայի բազում բարեաց գուշակ :

Եւ զԹանձն վերջացեալ լինէին . . . ։ Եւ ոչ իսկ յաւուրն յիշատակէ պատուակալեցայ՝ յորում Անպարտականն ի հեզութիւն վերբերեալ գայր մատնէր ի քաղաք Քրիստոնէեայ Հօտին՝ ելանել բաղձել ի քաղաքԹեւ կամաց բարձունս սքանչ իմ ամենայն չարեացապարտ ամբարշտիս ։ Մոռացայ զԴաւիԹ եւ զնորա «Ձի ընդունայն է ամենայն մարդ մսեղեայ» զպատգամսն . մոռացայ եւ ոչ յուշէի իսկ կապեցի Թէ Իսրայէլի սիրեցելոյն Յովսէփայ պարտ էր արդեօք ի հարազատաց խուրոց ի ձեռս անկանիլ ի գուբ վասն առ յապայ փրկուԹիւն նոցա... ։ Եւ բնաւ իսկ ոչ յուշ ինձ եղեւ Թէ՝ սերմանելոյն ապականուԹեամբ կայ միայն յարուԹիւն անապականն ։

Եւ զայս ամենայն մոռացեալ իմ իսպառ՝ գամ անձագան ուրեմն զարտօսրս իմ զաղի խառնել ընդ Հօրդ որդեկորոյս արտասուաց՝ ընդ պաշտօնէիդ խորանին Սրբութեան՝ որոյ կարօտի միշտ եւ հեգս մարդկուԹիւն առ ցուրտ հողոյն ընդ ցուրտն մեր անշնչացեալ մարմին եւ դիակ՝ ի կնիք անշարժուԹեան մինչեւ ցօրն աներեկոյ . . . ։

Գամ իբր ոչ եԹէ յաւակնեալ ի հաւատ՝ Թէ յետ այնքանի փարաւազից մատուցելոց Ձեզ ի բնաւ որոց ոչ անծանօԹ ինձ ընտիր ընտիրքդ են բարեմասնուԹիւնք, արտասուալիցս զգացմանց յայտնուԹիւն գրեցի առ ինչ, եւ իբր ոչ եԹէ աղէխորովդ այդ անձին ստանանել ինչ զօրիցէ ձայնս բարբառոյ անապատի, իբր ոչ եԹէ կարեվիրիդ այդ սրտի ի խոր խոցելոյ սպեղանիս ինչ մարԹ ինձ իցէ լինել, ծն անդր, այլ ցորչափ որդեակդ հոգեհատոր ԹօԹափեալ զփոշին աղցաւոր հանգիցէ ի գիրկս Հօրն տուչի մահու եւ կենաց՝ որ հրամայեացն «Թոյլ տալ մանկտւոյն գնալ առ նա», զոյգ ընդ նմին մաղԹել Ձեզ զերկնից եւեԹ զցօղ մխիԹա-

բարութեան իւր պաշտպանութեան [illegible] պարգեւներ մեր-ատացք՝ դերդ ընդ Տէրոջ եւ երբեմն [illegible] հօտ-ցեր, եւ ամենայն սրտագրումից՝ որոց հանդէսէլ [illegible] չենք ընդ միշտ յետնեալ բարեկարգական։

**ԱՂԱՐԻԿ ՄԻՀՐ. ԳԷՈՐԳԵԱՆ**

Նիկոմիդիա, 5 Ապրիլ, 1876.

---

(ԹԻՒ 15)

**ԱՒԵՏԱԲԵՐ, թիւ 16, ի 6/18 Ապրիլի, յօդուած Գ. Աճրու-ճիկ Այվազեան ուսումնական երիտասարդի կեառացոյ.**

---

Պատրիարքական փոխանորդ Մկրեան Գեր. Տէր Յովհաննէս Հօր որդին, Յակոբիկ Մկրեան, որ երկար ատենէ ի վեր գժնդակ ախտէ մը կը տառապէր, ապրիլ 8ին իւր մահկանացու կենաց զարունը կնքելով խորին սգոյ եւ տրտմութեան մէջ թողուց իւր սիրելի ընտանիքն, ազգականներն եւ ծանօթները։

Հանգուցելոյն մարմինը հետեւեալ կիրակի օր Հիսարտիպիէն մեծ հանդիսիւ Մայր եկեղեցի բերուեցաւ, ուր Ամեն. Պատրիարք Սրբազանը համառօտ բայց ազդու դամբանական մը խօսելով յիշեց հանգուցելոյն բարեմասնութիւնները, մեծ տաղանդը, ազնիւ սիրտն եւ անքիծ հոգին, մանաւանդ թէ անոր վերջին պահուն մէջ յայտնած Քրիստոնէական վսեմ զգացումները, եւ ջանաց անոր հաստատուն հաւատքովը մխիթարել նորա սգացեալ ծնողքն եւ բարեկամները։ Մարմինը զարձեալ մեծ հանդիսիւ եկեղեցիէն տարուեցաւ

մինչեւ ի Լանկա, եւ անտի Գալըգալը, ուր ամփոփուեցաւ ։ Յուղարկաւորութեան հանդիսին ներկայ էին երեք չորս եպիսկոպոսունք, շատ մը վարդապետք եւ քահանայք եւ իբր 3,000 ժողովուրդ։

Հանգուցեալը հոգւոյ, սրտի եւ մտաց շատ մը ընտիր ձիրքերով զարդարուած պատանի մ'էր, որոյ անբիծ վարքը, մեծ տաղանդն եւ շատ զովելի յատկութիւններն ապագային համար կը խոստանային մեծամեծ յոյսեր, որք, աւաղ, հիմա սեւ գերեզմանի մէջ թաղուեցան։ Յակոբիկ անխռով դիմագրաւեց մահուան, եւ իր վերջին պահուն ծնողքն ու սիրելիներն անկողնոյն քովը կանչելով զանոնք համբուրելէ ետքը, «Ես Քրիստոսի կ'երթամ, եւ ձենէ վերջին խնդիրքս այն է որ ինձ համար շատ սուգ եւ վիշտ չընէք, այլ զիրար՝ սիրէք» ըսաւ եւ հոգին աւանդեց։

Արդարեւ Պատրիարքական փոխանորդ Հայրը մեծ կորուստ մ'ըրաւ, բայց միայն ինքը չէ որ կ'ողբայ Յակոբիկին մահը, շատեր արտասուաց կաթիլներ թափեցին անոր դագաղին շուրջը, եւ իրենց կսկիծներովը ցուցուցին թէ ազգն ընտիր անդամ մը, երիտասարդները մտերիմ բարեկամ մը, Հայ գրականութիւնը հանճար մը կորսնցուցին։ Գերեզմանէն անդին փայլող յուսոյ պայծառ լոյսը որ Յակոբիկի ցաւոց անկողնոյն մթութիւնը եւ գերեզմանի խաւարը փարատեց, կարող է նաեւ մխիթարել նորա գորովագութ ծնողաց եւ վիրաւոր քերց եւ եղբօր սրտերն։

Մեր ցաւակցութիւնը կը յայտնենք, եւ այն մխիթարութիւնը կը հայցենք յերկնից։

Կ. Պոլիս, 11 Ապրիլ 1876, Ա.

(ԹԻՒ 16)

*ՆԱՄԱԿ, Մկրտիչ աղա Տէր Կարապետեանի յԱրսլան-Պէյ գիւղէ Նիկոմիդիոյ.*

---

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Կ. ՊՈԼՍՈՅ

ՅԱՐԴԱՆՈՑ Ի ՊԱՐՏԻԶԱԿ

*Գերապատիւ Տէր Հայր,*

*Ձեր հարազատ որդեկին Ազնիւ Յակոբիկի մահուան դառն գոյժը լսեցի, եւ կարի շատ ցաւեցայ, մահը երիտասարդութեան հասուն հասակի մէջ կը քաշէ կը տանի զնա ի հանդերձեալ աշխարհ, եւ ի դառն սուգ կը համակէ զՁեզ Ձեր ազնիւ գերդաստանիւքն եւ հարազատներովն, արդարեւ յոյժ ցաւալի արկած մ'է այս որ Ձեզ պատահած է, սակայն սորա Նախախնամութեան անքննելի վճիռներէն մին ըլլալը դուք քաջ գիտէք, որուն անշուշտ իւրաքանչիւր մարդ պիտի վիճակի, եւ ձմ դիտէ, նա թերեւս այժմ յաւիտենական կեանքը եւ անվախճան երանութիւնը կը վայելէ. դասոնք մոռածելով պէտք էք մխիթարուիլ, թէեւ ասիկա այնպիսի կսկիծ մ'է որ մխիթարութիւն չընդունիր, սակայն որչափ կսկծայ մարդ այսպիսի արկածներու վրայ, միշտ անօգուտ է.*

*Ձեր ի Պարտիզակ գալն լսելով ուզեցի եւ ես միանգամ գալ այդր՝ եւ բանիւ բերանով տեսակցիլ ընդ Ձեզ, եւ լնուլ միանգամայն բազմաժամանակեայ կարօտութիւնս, սակայն ինչպէս սովորութիւն է այսպիսի ժամանակներ՝ յաճախորդներ շարունակ պակաս չըլլալով եւ քիչ մալ անձնական տկարութիւնս արգելք եղան նպատակիս յառաջ մղելու, թէեւ փոխանորդաբար մեր*

որդի Կարապետը խրկելու խորհուրդն ալ յղացայ, որ իրեն ալ փափաքն էր, սակայն եւ նա դժբաղդաբար ջերմի հիւանդութեան բռնուած ըլլալով, այն իսկ չը յաջողեցայ խրկելու, որ նա ալ իւր ընկերոջ Պարոն Յակոբիկին դառն մահուան վրայ զգացած անբացատրելի ցաւն ալ Ձեզ կը բացատրէ գրոյս հետ առանձին Ձեզ գրած գրովը։

Ուստի այս մասերուն Ձեր ներողամտութիւնը հայցելով՝ եւ Ձեր սուրբ աջոյն ալ համբոյր խոնարհ մատուցանելով՝ Մնամ անձնուէր ծառայ Ս. Հօրդ

ՄԿՐՏԻՉ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

1876 Ապրիլ 7, յԱտղանպէկ.

(ԹԻՒ 17)

ՆԱՄԱԿ, որդւոյ Նորին Պարոն Կարապետի հասակակցի հանգուցելոյս ի Տէր.

ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՀԱՅՐ ՄԿՐԵԱՆ

ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Կ. ՊՈԼՍՈՅ

ՄԵԾԱՒ ՅԱՐԳԱՆՕՔ Ի ՊԱՐՏԻԶԱԿ

Գերապատիւ եւ Սրբակրօն Տէր Հայրդ իմ.

Կորուստ յաւիտենական զոր կորուսաք, գանձ անգիւտ եւ պատուական զգործ վաստակաւոր ձեռացդ ասեմ, զոր անադորոյն աւազակն աշխարհակուլ յափշտակեաց եւ տարաւ։ Ի բացուստ յանդիման առնեն մեզ զերիտասարդ մի ախտանեան տարածեալ առաջի գործակալէտ ծնողացդ եւ հարազատից, եւ ի մէն մի դիմաց կաթիլք դառն արտասուաց ոլոռն ոլոռն անկեալք յերկիր թանան զշիրակնացեալ մարմինն։ Յայս տեսիլ գերաշխա-

րան մի անկարեկիր մահկանացուի է սիրտ ի բուռն սունել, ոչ գովարիլ աղերոց եւ ոչ յարտասուս հարկանիլ. կենոյն եւ ցիս է տեսանել, Հայր ախրապզած, յիս որ մի էի ի հնարապատ բարեկամաց աղնիւ որդեկիդ, բայց առանց որ չէի անդ . . . ահ, ընդարմանան մատունք իմ, եւ գրիչ յեւաս ընդ կրունկն նահանջի, եւ արդ-ցաւք կրկնակի ծանրացեալ ի վերայ դուն գործեմ փութալ ժամանել եւ փոխանակ ցանկալի մարմնոյն՝ զկերպարան նորա համբուրել, եւ թերեւս զդառնութիւն ցաւոյն մեղմել երկուստեք։ Քանզի քաջ գիտեմ Հայր, բազում մարդիկ ի մխիթարութիւն Ձեր յառաջադէմ գտան քան զիս, վասնորոյ յետնեալս յոչ կամաց զթերութիւն մեծի նուիրական պարտեացս թղթովս լնուլ նկրտիմ զայժմուս, սակայն եւ այն ոչ թէ ի սփոփանս, զի չեն պէտք Ձեզ մխիթարութեանց, որ գիտէք զմահ, եւ հայիք ի նա իբրու յանմահութիւն եւ ի հանգիստ երանութեան ։

Այժ, այսուքիկ ցաւք անհնարինք միայն ի խոր խոցեն զսիրտս զի արժանաւոր ժառանգ իմաստասէր ողւոյդ եւ գեղեցիկ ախորժակացդ ի մէջոյ բարձաւ, այն՝ որ ոչ յագեալ աստեացս գիտութեամբք, ճախրեաց յօդս, վերացաւ ընդ ամպս երկնից, սլարարիլ գեղապարիլ երկնաւորացն հոգեզուարճ գիտութեամբք հոնեցելովք յանսպառ աղբերէ իմաստութեան ։

Խռովեալ սրտիւ եւ արտասուաթոր աչօք համբուրելով զթալիկացեալ ձեռս Սուրբ Հօրդ, մաղթեմ ի Հօրէ մխիթարութեամբ Սուրբ Հոգւոյն տալ դադար ձայնից հառաչանաց ելելոյ ի խորոց սրտէ վշտացելոյդ ։

Մնամ Ս. Հօրդ խոնարհ ծառայ

ԿԱՐԱՊԵՏ Ս. ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

1876 Ապրիլ 7։ յՄուրզաճ-Պէկ

(ԹԻՒ 18)

ԵՂԵՐԵՐԳ, Պօղոս Էֆէնտիի Տաշեան
համազգի բանաստեղծի.

---

### Ի ՄԱՀ

## ՅԱԿՈԲԻԿ ՊԱՏԱՆԻՈՅ

ՈՐԴԻՈՅ ՍԻՐԵՑԵԼՈՅ ԲԱՐԵԿԱՄԻ ՄԵՐՈՅ

## ՏԵԱՌՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐԵԱՆ ՔԱՀԱՆԱՅԻ

ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԱՐԳՈՅ ՓՈԽԱՆՈՐԴԻ

Յանծանօթէ կեանք գոյանայ առ անծանօթ միշտ գնայ,
Անծանօթին ամէն վկայ, միշտ անծանօթ նոյն մնայ,
Ըղձում տղաս առ ի քախել անկ է ըղձիւր չախջախել
Հայր արտասուել գու լռէ գիտես թէ ուր գնաց քո տղայդ

Քաղցին մխիթար չունի իմ քնար,
Մահ կեանք հաւասար կշռոյն են նժար,
Անմահին գաղտնեաց պահապան ծառայ,
Դու գիտես թէ ուր գնաց զոր ծնար ։

Ամէն ամէն այն միութեան են մասունք
Զոր չուրթ եղաւ կամ փշրեցին մեր բունք,
Մարդ կայծանեւ, վարդ թառամեալ, մեր յոյսեր,
Յամաք ամպեր, կենաց վերեւ լուսափունք ։
Ամէն ամէն յաւիտենից յաւիտեան
Յաւէտ դիմէ անեզրական բարութեան,
Հայր խօսք սէր, հայր խի՛ քո վէր, ամենայն
Օժանդակէ աստուածորդի մարդկութեան ։

Գթա՛ծդ Աստուած, երկրպագեմ անհուն սիրոյ քո անբաւ.
Ոչ արտասուել մեզ տաս ունայն խորին խորհուրդ է մեր ցաւ,
Հայր իմ զի դու յառաջնորդաց ես Հայ ազգի՝ կոծեցար
Զի միշտ տխուր եւ փշալեաց մարգարէից է անձաւ:

Հայէ հայր իմ երկրպագետաց նիւթականաց առ ճակատ,
Դաշտաց տիրէ թէ երկրամերձ այլ շանթահերձ խիստ գագաթ,
Ցաւ ի վերայ քո հին ցաւոց տէր կուտակեց ու դիզեց
Զի բարձրանայ ոգիդ բազմի վերայ սոցա առնէ դատ:

Զի դատաւոր միշտ ընդ ցաւոյ ընդելանայ յատենի
Հայր իմ ի սէր մարդոյ խլեց Աստուած զորդւոյդ վարդենի,
Սակայն հայր ես, անօգնական չես թէ մնայ քո զաւակ
Ոգի որդւոյդ միշտ տի շրջի վերայ քոյոյ մատենի:

Ծեր աշխարհիս մի՛ ասեր ինչ տալ կարէ դեռահաս,
Մտացութեան ի հովիտ յիշատակ մ՚է մեր տապա .
Ամս հազար գթութեան, հայր իմ, որդիդ տայրեցաւ,
Յիշատակաւ իւրով տես՝ չեղեն ազգաքաջ որտիդ մեա:

Խաղաղութիւն քո ցաւոյ, լաց հայր իմ լաց, այլ խնդրաղ,
Աստ խոնարհաց մի միայն ձեւ պաշտամանն է ծիծաղ,
Այո՛ թէ մի է Աստուած, այլ պաշտօնն է այլածէս,
Մեծ ես մեծիդ անկ պաշտել գէտ ակն ի վայր առ դադաղ,
Սակայն հայր ես, Տէր գթած անմխիթար ոչ թողու
Ըզհայրութիւն իւր յետուստ երբէք գնալ կաղ ի կաղ,
Մխիթարիչ հարց ու մարց յարուցանէ ի քարանց.
Զի հայրութիւն է իւր տիպ անմահական անձնուաղ,
Ի գոգն անուշ քո որդւոյ ներկեց զարկեւ ըղձութիւն
Պաղ տապանին քար անդամ, ցաւդ խեղ, ըղձաս, է մատաղ.
Սիրէ զիս հայր, տէր ի փառս հանգստեանց քո որդւոյ
Բնակեցոյց յիս զոգին երբ երգեցի ես զիւր տաղ:

ՊՕՂՈՍ Թ. ՇԱՀԵԱՆ.

Քաղկեդոն, 7/19 Ապրիլ 1876.

## (ԹԻՒ 19)

### ՆԱՄԱԿ՝ Խաչատուր Աղա Նազարեթեանի Կ. Պօլսեցւոյ.

---

Գերապատիւ Տէր Հայր,

Գիտեմ, տխրամած ոգւով Ձեռքդ ծնօտիդ վրայ աչ-
քերէդ կծու արտասուաց հեղեղներ կը հոսին, որդ-
ւոյդ հիւանդութեան դառն տառապանքը, անագորոյն
մահուան անողորմ հարուածը, գիտեմ, երեւակայու-
թենէդ երբէք չեն վրիպիր. իրաւամբ կուլաս, կողբաս
զաւկիդ վրայ, ողբ, կոծ, արտասուք, արդարեւ բաւա-
կան չեն մխիթարել ծնողք մը՝ որ երիտասարդ զաւակ
մը, վարուքը՝ բարուքը՝ եւ ուսմամբը՝ ծնողացը ապա-
ւէն մը, Ազգին յոյս մը, մարդկութեան օգնական ան-
հատ մը, իրենց ձեռքովը սեւ հողին կուտան. արդարեւ
թշուառ Հայր. եւ ես ալ Ձեզի պէս եմ. իմ աչքերս
ալ արտասուելէ չեն դադրիր, զի ես ալ տակաւին ութ
օր յառաջ քսանամեայ զաւկիս ցուրտ մարմինը գրկեցի,
տխուր դագաղին եռեւէն ինկայ, ի զուր պօռացի, ի
զուր գոչեցի. եւ ես ալ ձեռքովս Սիմոնիս հոգին Աս-
տուծոյ՝ մարմինը հողին տուի, ես ալ իրաւամբ կող-
բամ, կուլամ եւ չեմ ուզեր մխիթարուիլ. գիտեմ, Հայր,
եւ փորձիւ գիտեմ, որ զգացած դառնակսկիծ ցաւեր-
նիդ, անագորոյն մահուան չափ՝ ժամանակ եւ արժա-
նիք որոշել չգիտնալուն է. կըզգամ որ այս ցաւը իւր
յարակից մխիթարութիւնը չունի. եւ ով կրնայ որդե-
կորոյս ծնողաց աչաց յորդ արտասուքը ցամքեցընել,
եթէ ոչ դարձեալ մահը, բայց ոչ, կարծես ի ներքուստ՝
ձայն մը կեցիր կը պօռայ եւ թոյլ չիտար մահուամբ

ուեթ մխիթարիլ. հայր մը կըսէ, մինչդեռ ի հաւատոյ գիտէ եւ համոզուած է որ՝ իւր սիրուն զաւակը աշխարհի ամէն դառնութիւններէ ազատած՝ իր յաւիտենական հանգիստը գտած՝ իւր Փրկչին գիրկը փառաւորուած կերջանկանայ, յանցանք իսկ է նմա բոլորովին անմխիթար՝ Աստուծոյ օրհնեալ կամացը դէմ գանգատիլ. այսպէս եւ ես Ձեզ կը կրկնեմ, Տէր Հայր, Օրհնեալ ըլլայ Քրիստոնէութիւնն, թող մեր զաւակները Հոն փառաւորուին ու երջանկանան եւ մենք հոս աղէկտուր տառապինք ու տագնապինք. թող անոնց յոյսը պսակվի եւ թող մեր սիրտերը անոնց կարօտիւքը աղէկէզ մորմոքի. եւ դու մխիթարուէ, Տէր Հայր. զի եթէ Ձեր զաւակը իւր կենդանութեամբը Ձեր յուսոյն պսակը պիտի ըլլար, իւր մահուամբն ալ Ձեր յոյսը պսակեց, իւր հանճարաւոր տաղանդովը շատ մը հայրերու սիրտ իրեն նման տաղանդաւոր զաւակ ունենալու փափաքովը լեցընելով. մխիթարուէ Տէր Հայր, զի՝ Ձեր զաւկին անունը անմահ պիտի մնայ ի պսակ Ձեր քրտնաջան դաստիարակութեան. եւ մխիթարուինք ու ըսենք. Օրհնեալ ըլլայ Նախախնամութիւնը որ մեր ձեռքէն ալ հաճեցաւ մեր երիտասարդ զաւակները իւր քովը իւր Ամենասուրբ գիրկը ընդունիլ. ալ թող մնայ մեզ՝ իւր մխիթարութեան Հոգին խնդրել եւ մնացած զաւակներնուս կեանք, կենդանութիւն, բարօրութիւն եւ առողջութիւն հայցել, որոյ համար Ձեր Սրբանուէր մաղթանացը ապաստան՝ կը ներկայացնեմ զայս երկտող, որուն ընդունելութիւնն իսկ մխիթարութիւն մ'է Ձեր նուաստ բարեկամին ։

1876 Ապրիլ 7. ի Նիկոմիդիա, Խ. ՆԱԶԱՐԷԹԵԱՆ

(ԹԻՒ 20)

## ՆԱՄԱԿ՝ Պատուելի Յակոբ Վարժապետի Պէյլէրեան, ի Կէյվէ Օրթագիւղ.

---

Գերապատիւ Տէր.

Այն ինչ լուաք յաւուրս յայսոսիկ զգօթաբեր լուր զառն մահուան ամենասիրելի որդւոյ Ձերոյ անուանակցի մերոյ՝ բնիկ միաբան Ս. Երուսաղէմի յԱրժ. Մամբրէ վարդապետէ՝ որ ի Տօնի Ս. Զատկիս աստ գտանի այցելութեան եւեթ առթիւ, ընդ որում ի խօսակցիլն մեր ընդ Մեծ. մահտեսի Յարութիւն աղայի մահտեսի Երեմեանց՝ իբրեւ հարց եւ փորձ արարեալ զօրպիսութենէ խոհական Տեառնդ մերոյ ի մէնջ ի Նուաճտիցս կողմանէ, ցաւ ի սիրտ նա պատմեաց մեզ եւ հաղորդեաց զմահագոյժ ի Տէր հանգուցեալ սիրասուն զաւակի Ձերոյ եւ մեր, ընդ որ յանհնարինս տրտմեալ եւ տխրեալ անդէն եւ անդ հատաք զթել բանից մերոց, եւ ի սաստիկ յուզմանց սրտից մերոց այլ յայլմէ եղեալ եւ կապեալ զարձակ լեզու մեր ի բաց մեկնեցաք անտի ։

Ո՜հ, Աստուած իմ Աստուած . . . Օրհնեալ Տէր, օրհնեմք միշտ եւ հանապազ զՔեզ, գոհանամք զՔոյին բարեխնամ գթութենէդ, եւ երկրպագեմք խոնարհ սրտիւ յամենայն ժամ սպաշտելի, խնկելի, տօնելի եւ երկրպագելի ամենասուրբ կամաց Քոց, որ անսահման մարդասիրութեամբդ այսպէս տնօրինեցեր . . . ։ Ո՜հ, եւ Դու որդեակ իմ սիրասուն, սիրելի անուանակիցդ իմ, որ կատարելով զօրհնեալ կամս Արարչին թռեար հոգւով եւ վերացուցեր ի վերինն Երուսաղէմ յաւուր հանդիսաւոր մտից Տեառն մերոյ ովսաննայիւք յԵրու-

սաղէմ, եւ յամենայն մահացու արկածից եւ վտանգաց ազատս զքեզ կացուցեր, յայսմ հետէ փառս մատո՛ սուրբ հոգւովդ ընդ սուրբ ընկերակցացդ միշտ փառաւորելոյն ի բարձունս՝ եւ ուրախ լեր ։

Իսկ Դու՝ անզուգական բարեկամդ իմ, Հա՛յրդ վշտացեալ, աղաչեմ զքեզ, յանձին եկ, մի յանչափս տրտմիր յանօգուտ, գիտեմ զի ինձ նման զաղէ՛, միանգամայն եւ զանուշիկ արտօսր կարօտանաց սիրասուն Որդւոյդ ցօղէք միշտ յաչացդ բնականապէս. այլ սակայն՝ տուք դարձեալ փառս անպատում մարդասիրութեան Տեառն, զի օրհնեաց Աստուածային օրհնութեամբ իւրով զմնացեալ պտուղս որովայնի ձերոյ, եւ երկարեսցէ զթել կենաց նոցին եւ Ձեր եւ մեր ; մինչեւ հասցուք օղնականութեամբ շնորհաց Նորին եւ առաքինական գործովք ամենեքեանս վարձուց յաւիտենից ։ Ողջ լերուք ։

Զամաց լիութիւն եւ զերկարութիւն կենացդ մաղթելով, Մնամ խոնարհ ծառայ Արժ. Տեառնդ

ՅԱԿՈԲ ՊԷՅԼԷՐԵԱՆ

Ց. Դ. Եթէ ներքին տկար աչք իմ, զգաստացեալ զոգիս Ձեր եւ ընտանեացդ առ ի զովացուցանել, ճառօրէն գրչաւ կամէի յօրինել բանս ի մխիթարութիւն, այլ սակայն աւա՛ղ, եւ եղո՛ւկ խղճալւոյս, որ բոց հրայրեցութեան ցաւագին սրտիս առ այս՝ տոչորէ եւ խանձէ զիս աղէկիզմամբ, այլ սակայն զինչ օգուտ, որ սակս կարօտիմ եւ ես ոչ սակաւ մխիթարութեան անմխիթար Տեառնդ ։ Եւ երանի էր ինձ յայնժամ, եթէ կարօտ էր Երկին միոյ « Ցակոբայ », ուրախ եւ զուարթ սրտիւ փոխանակէի զանձն իմ ընդ փոխելոյն սիրելի անուանակցիս յԵրկինս, բայց պարգեւդ մեծ՝

Նմա շնորհեցաւ յԱստուծոյ ։ Ուրեմն՝ համկիրճ բանիւքս այսոքիւք , ընկալարուք զսիրտ իմ ։

Սրբեցէք եւ զարտասուացն աղբիւր ցաւագին եւ անմխիթար Եղէցկին Մօր մերոյ . այսպէս են եւ կամք համօրէն ընտանեաց . . . ,

Յատկապէս մահուան Յարութիւն եւ մահուանն Նփրեմ Մեծ. աղայք մեր եւ ի սրտէ բարեկամք խոհական Տեառնդ մերոյ հանդերձ ամենայն ընտանեօք իւրեանց ձայնակցին ընդ մեզ յողբ եւ ի սուգ , եւ խնդրեն ի մխիթարութիւն զՀոգին Սուրբ ։

1876, Ապրիլ 7, յՕրբ. Կէյվէի. ՆՈՅՆ (1)

( ԹԻՒ 21 )

ՆԱՄԱԿ՝ Տ. Մատթէոս Վարդապետի Նազարեանց, Գեր. Առաջնորդին Տրապիզոնի.

Գեր. Սիրելի Հայր սգազգեաց.

Եթէ լացին ամեն անոնք անդատնելի աղէկէզ կորուստեանդ վրայ, որոնք Ձեր սրտակիցներն էին, աներկմիտ եմ մինն ալ գիս ճանաչած ըլլալնուդ ։

Այո՛, կարեվէր խոցեց սյն գոյժը, ոչ միայն Ձեր հայրական սիրտը, այլ եւ ամեն անոնց, որոնք լուսաւոր-

(1) Յակոբ Պասուելլի Պէյլէրեան՝ է մին յառաջին աշակերտաց մեծանուն Մուրատ վարժապետի Բէրիացւոյ, ի վանս Ս. Կուսին յԱրմաշ:

եալ հոգւոյն վրայ ապագային մէջ մեծ յոյսեր կը տածէին Ազգի պարծանաց նկատմամբ ։

*Յաւիտենականին կամքը ուզեց զանի երկնքին մէջ փառաւորել, երկրի մէջ ալ ձգելով արձան յաւերժական նորա քրտանց արգասիքը . Դաստիարակութիւնը կըսեմ, որ նուիրեց Ազգային մանկանց հայելի Առաքինութեան ։*

*Մխիթարուեցէք Հայր սիրելի, մխիթարուեցէք . եւ համոզուած եմ որ մխիթարուած էք . վասն զի արժանապէս կոչուած էք պաշտօնեայ մխիթարելու ։*

*Մխիթարուեցէք, վասն զի Ձեր որդին կենդանի է բոլոր զինքը ճանաչողաց սրտերուն մէջ ։*

*Եւ ինձ կը մնայ բաժին իմ տխրութեանս հետ աղօթել Տիրոջը որ հանգուցելոյն որդեսէր Տիկին Մօր սիրտը Հոգւին Սուրբ սփոփէ եւ ամոքէ, եւ պատուական գլուխնիդ ողջ մնալով հանգուցելոյն մնացած օրերը Ձեր պատուական կենացը յաւելցնէ ։*

*Մնամ յամենայնի սիրող զՁեզ*

**ՄԱՏԹԷՈՍ Վ. ՆԱԶԱՐԵԱՆ**

1876 Ապրիլ 7, Տրապիզոն.

(ԹԻՒ 22)

## ՆԱՄԱԿ, Ծերունի Քերթողին Հայոց Տեառն Գաբրիէլի Պատկանեան ի Ս. Պետերբուրգ.

---

ԱՄԵՆԱՍՐՏՈՒՄ

# ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐԵԱՆ.

ԽԱՉԱԿԻՐ ԱԻԱԳ ՔԱՀԱՆԱՅ ԱՍՏՈՒԾՈՅ ԲԱՐՁՐԵԼՈՅ

ՕԾԵԱԼ ՏԵԱՌՆ ԱՄԵՆԱԿԱԼԻ

Ո՛ր փուշ սայրասուր քան զայս՝ զոր բուսոյց Քեզ երկիր ի գործս ձեռաց Քոց. Ո՛ր խայթոցք տատասկի զառնակսկիծ մորմոքեցուցիչք քան զայս՝ որ հանգոյն ցանկոյ միջնորմ ամբարձան ի մէջ Քո եւ բուրաստանի քաղցրահոտ ծաղկանց, յորում զուարճանայիր եւ որովք զմայլէիր երբեմն, եւ փոխեալ ի վիշտս անհնարինս՝ պաշարեցին զՔեզ շուրջանակաւ: Զայս՝ յայս յանդիման տեսին մթագնեալ աչք ծերունւոյս, յորժամ գտաւ ի ձեռս նորա արտօսրաթոր նամակ ծնողիդ գրեալ ի քսան եւ հնգից մարտի, եւ բռնազբօս մղեաց զնա յարտասուակցութիւն:

Աւուրք էին համածաւալ արտասուաց, յորս Արարիչն բնութեանս չարչարէր, եւ Նմին չարչարակցէր եւ արեգակն եւ լոյս տունջեան: Արտասուէր մարդ, զի Փրկիչ իւր մեռանէր, արտասուէին երկինք, զի Փեսայն իւր ի մահ աճապարէր, արտասուէր եւ Եկեղեցին, զի Հիմնադիր իւր ի պատանդ վարէր: Այլ ես՝ բաց յարտասուակցութենէ նոցին եւ Քեզ, արտասուեցի եւ առանձին եւս, զի պատկերացուցի զծնեալդ Աստուծոյ իմոյ ըստ Դաւթի անկեալ ի գետին առաջի Աստուծոյ, եւ

պահօք զանձնդ ճնշեալ, եւ աղօթիւք յոյս Նորին թուլեալ, եւ կականալիր արտասուօք զզարշապարս Նորին թացեալ, եւ աղէկէզ ողբովք զբարեգթութիւն Նորին թախանձեալ, եւ զարմացայ, զի Նա՝ Որ ողորմածն էր եւ գթած, եւ ոչ յապաղէր կարկառել ումեք զԱջն օգնականութեան, որք բուռն հարկանէին զքղանցից Նորին, ոչ գթասիրէ եւ ոչ դարձուցանէ՝ յարուցեալ զորդեակն Քո ի մահճաց՝ ի ծոց ծնողիդ ։

Նովին իսկ զարմացմամբ դարձուցի զզարմանս իմ ի տխմարութիւն իմ, զի յանդգնեցայ ի վեր ամբառնալ զծայր վարագուրին, որով բարեհաճեալ էր սքողել ծածկել Ամենազօրն եւ Ամենակարողն զԻւր անթափանցելի տնօրէնութիւնս անքննելի խորհրդոց, որ երբեմն ընկալաւ ի ձեռանէ Յեփթայեայ զպատարագն ուխտեալ, եւ յետոյ դարձոյց առ Աբրահամ զողջակէզն յինքենէ պահանջեալ ։ Միթէ պակասեաց առ ի Քէն ճիգն որոց եւ իցէ մարդկային հնարից ։ Միթէ նուազ գտաւ ուրեք խնամարկութիւն ծնողականդ գորովանաց ։ Միթէ յիսնեակք գիշերախառն աքնութեանց անձեռնհաս Մայրին կրկնութեանց եւ երեքկնութեանց, եթէ պէտք ընդ առաջ ելանէին ծնողիդ դնել ի չար բոլորապտուղ պատարագաց ի սեղան սրբոյդ առ Որդեակդ հրաւիրեալ ի ճաշ անմահութեան՝ եւ զյետին նշխարս կենացդ ։ Այլ այս ամենայն կարօտ էր տակաւին ընդունելութեան Այնորիկ՝ Որ ասաց՝ «Ես իսկ եմ Յարութիւն եւ Կեանք» ։

Գուցէ՝ թէ Որ յայնժամ զմին ի սիրելեաց Իւրոց զՂազարոս կոչեալ էր ի գոգոյն Աբրահամու, այժմ զմիւս սիրելին Իւր զՅակոբիկն կամեցաւ բազմեցուցանել անդ ի յաւիտենական հանգստեան ։ Գուցէ թէ սերմն այն բարեստոհմիկ եւ սուրբ հաստատ-

նալ ի նմին, եւ բորբոքեալ ատխս առ անարժանս որ-դիական սիրոյն բոցով. գուցէ թէ միայն այն արժա-վայելէր սրտաթափիչ առ բարին Ազգի. գուցէ թէ հասանէր այն վարդապետին ամենապարգեւեալ շնորհաշուք. ծիրուք մշտադալար մանկութեան ազգասիրութեան. գուցէ թէ բնաւորութիւնն այն ազնուաւոր չնաշխարհիկ երկ-նաքաղաքացեաց հայրենասիրութեան. գուցէ թէ կըր-թութիւնն այն՝ որով տակաւին սակաւուորք յոյժ գըր-տանին յազգի մերում մշակեալ եւ զօրացեալ, տարաբն զնա քաղաքավայելուչ վերնագաւառայնոց քաղաքավարու-թեան, եւ հրաւիրեցին զնա տարածել՝ ընդ Ենովքայ եւ ընդ Եղիայի համախմբել զներբողութեան թիւ խոր-հրդական՝ տաւաղել յերկս տաղաւարս նոյնպէս խոր-հրդականս եւ խորախորհրդայս։

Երբեւի՝ թէ միայնակ շրջէր Աբէլ ընդ հարսին իւրում Սալոմեայ ի Դրախտի փափկութեան, եւ մեծաւ անդր Որդեակն Քո կամէր կառուցանել զնոր երկնային միու-թիւն։ Երբեւի թէ ընդ կենսապարգեւ շքով Հովհաննու ծառոյն կենաց միացեալ կայր վայր յարաղուածս; եւ ի ժառանգութիւն նորին փոխեցաւ գետաւուրց պատան-եակն՝ չեւ հաղորդակից եղեալ թռնիարութեան զոր ան-ընդհատ մատուցանեն սատանայ, աշխարհ եւ մարմին։ Գուցէ ի զովարար հող՝ ուր այժմ ննջէ Յակոբիկդ՝ եսես հաստատեալ զստորոտ սանդղխոցն Յակոբայ, եւ անդի ճեպեաց մերկանալ զմարմնոյն զգեստ, զի թեթեւ թեւօք հոգւոյն վերասցի ի Հայրենիս իւր, ուստի մերժեալ են ամենայն ցաւք, եւ վիշտք, եւ տրտմութիւնք, եւ հե-ծութիւնք։ Վասնորոյ եւ հաւատք իմ ի ներքուստ խրախուսեալ քաջալերեն զիս ասել առ Քեզ՝ ընդ արտասաշնորհ Պարգեւողին մխիթարութեան՝ թէ Որդ-եակն Քո ոչ է մեռեալ, այլ ննջէ յուսով յարութեան՝

յայնժամ եղիցին եւ երկինք նոր եւ երկիր նոր »։

Իսկ քեզ՝ Օծեալդ ընդ Ահարոնի, այլ Քահանայակիցդ Մելքիսեդեկի, քեզ՝ զորոյ թախծանաց զչափ ոչ կարելով նկարագրել, ընդ օրինակի նկարչի՛ ուրուք՝ որ անձեռընհաս գտեալ զանձն ի ծայր վրձնին օժանդակութեամբ գեղոց եւ արհեստին աւանդել տախտակին զկերպարան հօր վաղամեռիկ որդւոյ, վարագուրաւ քողարկեմ զերեսդ, քեզ՝ ասեմ, յոյժ լիցի օրինակ անհասանելի անօրէնութեան Որ էին, զոր եցոյց յատանում աւուրն մեծի Սրբազնանուէր Քահանայագործութեան Հնոյ Ուխտի՝ չարատախուրել զգլուխդ, չպատառել զհանդերձդ ; եւ չելանել ի դրանէ խորանի վկայութեան, զի իւղն օծութեան՝ որ ի Տեառնէ է՝ ի վերայ քո է. այլ լացցեն ամենայն եղբարք քո եւ ամենայն տուն Իսրայէլի ։

Եղբայր քո եւ ես եմ, եւ տուն Իսրայէլի է տառապեալ Ազգն մեր. ի ծոցոյ նորա ապականեցաւ անձն՝ որ գուցէ թէ երբեմն յաղողէր լինել երկրորդ ոմն Վարդան Մամիկոնեան։ Ուրեմն՝ իսկ թոյլ տուր լալ յայսըմհետէ եւս զաւուրս բազումս, զի ես քաջ ճանաչեմ զյարդ այդոցիկ գոհարաց, որք են մարգարիտք գեղեցիկք պատուականք եւ հազուագիւտք, նա թէ եւ անգիւտք իսկ, յաւէտ ոչ այնքան ի մանեակ պարանոցի քո, որքան ի քայլս եւ յապարոշ համօրէն Ազգի։ Դու՝ դադարեսցես ի լալոյ, եւ սփոփեսցես եւ մխիթարեսցես, զի երանութեան արժանացար ընծայելով զաւակ ի Սիոն։ Յուշ լիցի քեզ՝ քարոզդ պատգամաց Աստուծոյ, զի զօրինակ ի վերջնումս Քրիստափորն Գողոմպոս եբաց զաչս դարուց եւ ժամանակաց, ցուցանելով ախոյեանց՝ թէ բաց ի յերից մասանց Հնոյ Աշխարհի՝ Եւրոպայ, Ասիոյ եւ Լիբիոյ՝ գոյ եւ չորրորդն՝ որ կո-

չեցաւ Նոր Աշխարհ, նոյնպէս եւ բազմօք յառաջ քան զայն՝ զոր մարգարէք եւ օրէնք Հնոյ Ուխտին անդի-տացեալ էին. եկեալ Աստուածն մարդացեալ՝ ծանուց-եալ էր՝ թէ զինի այսորիկ ժամանակաւոր եւ անցա-ւոր կենցաղոյս գոյ եւ հանդերձեալ կեանք անանց, ուր թագաւորելոց եմք ընդ նմին յաւիտեան. եւ Դու՝ մի ես յաւետարանչաց նորին, վկայեցիր եւ արժան է քեզ արդէն լսել ի ազոյդ, եւ թողուլ՝ զի լացցուք մեք ընդ անմխիթարելիս Ազգի, յորմէ բարձաւ այժմ պատուանի մի, այլ թեւաւ Աղաւնի մի՝ զուգէ ոչինչ նուազ քան զԳոլոմպոս (¹), չիջաւ լապտեր մի, անկեցաւ ի բարձանց երկնակամարին աստղ մի, էանց յայնկոյս գերեզմանի անձն մի, որ զուգէ կարէր երբեմն հանդիսանալ այլ հզօր զօրութեամբ, որ աստուածն ի դեռաւուրց անտի ցու-ցանէր զանձին զամենայն առհաւատչեայս հանդերձեալ առաքինութեանց յորս զարգանայր իմաստութեամբ, եւ հասակաւ, եւ շնորհօք առ յԱստուծոյ եւ ի մարդկանէ.

Տրամաբանեալ Հայր պատուական, չեն եւ այն արտասուք՝ որք խոխոջեն եւ ունին յաւէժ անընդհատ խոխոջել ի նկրտուստ ի խորս սրտից եւ հոգւոյդ զա-մենայն աւուրս կենաց Քոց, անտարակոյս բարձ այժմ զայդ խաչ դժուարընդել. յուս Քո եդ զայն Ինքն Ամենաբարձն Յիսուս յաւուր յորում Ինքն մերձենալով ի տուն մահուան Իւրոյ՝ յարութեամբ քառօրեայ մեռե-լոյն ծանոյց զԻնքն Տէր կենաց եւ Յաղթօղ Մահու. որպէս զարտաքին արտօսր յաչացդ, որոց լոյս՝ որում աղաւնեան վտանգս յորդահոսան ողողանեցդ, ոչ է Քո սեպհականութիւն, այլ՝ Ազգի՝ որում անտանեգրեալ ես ի ծառայութիւն յամաց բազմաց, եւ չունիս իրա-ւունս վատնել զայն յանձնիւրոյ թախծանս.

(¹) Ձի և Գոլոմպոսդ՝ Աղաւնի թարգմանի ի մեզ :

պարգեւս զուարթութեանց, եւ հաստատեսցէ զայս Քո եպիսկոպոսիս համբերութեամբ կենսածիր անձկալութեան այցելութեան Տեառն ողջունելոյն ի յաւիտենից եւ ի յաւիտեանս ։

Եւ ես՝ որոյ ձայնն անարժան չերկնէ լսելի յունկս Աստուածապետականին, դարձուցանել ընդ Եզեկիայի ի կեանս զմատաղաւուրց օրհնեակն Քո, առաջի բարձրացեալ Աթոռոյն խոնարհեցուցեալ զգլուխ իմ եւ զծունր արտաքս եւ հոգւոյս՝ անձկանաւ զարտասուաթոր աչս իմ յերկինս եւ առեալ առ Քրիստոս Որդին Աստուծոյ անոխակալ եւ բարեգութ, առնել հոգւոյս հանգուցեալ Ցակոբիկ ծառային Իւրոյ, որ առ դրան մահու հոգայր զանդորրութենէ ծերունեալս՝ հանգիստ եւ ողորմութիւն, գթալ արարչական սիրով Իւրով ի նա՝ որ սիրեալ էր զանարժան ծերունիս, որպէս զՀայրդ իւր սպասուական, յիշել զնա յաւուր մեծի գալստեան Արքայութեան Իւրոյ՝ որ ի հոգեվարս իւր ո՛չ մոռացաւ զանտես եւ զանծանօթ թշուառականս, առնել զնա արժանի ողորմութեան, քաւութեան եւ թողութեան մեղաց մարդկօրէն վրիպանաց, յորժէ ո՛չ կարէ ազատ մնալ ոք որ կեցցէ, որ թողեալ ի սրտի իւրում զդիզաւարդեալ մեղս եւ զյանցանս եօթանասնամեան եւ հինգ ամեայ անդարձ եւ անզեղջ մեղաւորիս, միջնորդս կանգնէր առաջի այնոցիկ որք բարեխօսէին առ երկնաւոր Թագաւորն ի մոռացօնս արկանել զանցեալս մեղապարտ կարծեալսն յընթացս քառորդի մնոյ դարու․ դասաւորեալ պայծառացուցանել զնա ընդ Սուրբս եւ ընդ Սիրելիս անուան Իւրոյ, որ սուրբ էր սրտիւ եւ հոգւով, եւ նովին մաքրութեամբ զուն գործէր սիրել եւ ջնջել զաղտ անուան անծանօթական եւ հայրաբարոյի ծերունւոյս, եւ բազմեցուցանել յանձնակողմեան

զաստուած զնա՝ որ ի գլուխ տառապանաց ջանայր հանել զպարտականութեան ծերունիս, եւ կորզել զբարձի թողլ տարաբերեալ անզօր ակարս՝ ի կարոյ եւ ի տղմոյ, խոստովան լինելով՝ զի Նա միայն է Տէր եւ Արարիչ եւ Դատաւոր արդար՝ Որ դատէ զկենդանիս եւ զմեռեալս, Որ ի լռել քարանց՝ ի բերանոց մանկանց եւ տղայոց գիտէ հրատարակել զիւր կամս եւ զճշմարտութիւն, եւ Նմա միայնում վայելեն փա՛ռք՝ յանանց յաւիտեանս :

ՏԵՐՈՒԻՆԻ ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ

Ի 1876, Ապրիլի 8,
ի Սանկտ Պետերբուրգ·

---

( ԹԻՒ 23 )

Նորին Քերթողի այլ ուրտառուչ Բանք ի նամակէ որ առ գիտնական Վարդապետն Որուանձտեանց·

---

Ցաւ ի սիրտ՝ յառաջ քան զլուծանել զծրար Նամակի ձերոյ՝ ընթերցայ ի Նամակի Զաքարիայ Մխիթարեանի, առ որ գրեալ էի՝ ստէպ տալ ինձ տեղեկութիւն զողջունէ հիւանդին, զվաղահաս վախճանելոյ Յակոբիկ պատանւոյ :

Զինչ ասացից, ոչ արտասուք դադարին յաչաց՝ եւ ոչ հեծութիւնք հանդարտին ի խորս սրտիս. Նամակ ձեր հանդէպ աչաց կայ, եւ ես ընդ մէն մի տառիւք որոնեմ եւ խնդրեմ սփոփարար ինչ աւետիք յարութեան նորա, եւ անդադարմունք իմ քարշեն, ձգեն յայլ խելս Երանի, թէ չէր ծանօթացեալ, երանի թէ չէր երախտապարտեալ, երանի թէ չէր սիրահարեալ ի Հայրն եւ

յՈրդւին եւ ի սուրբ Հոգւոյն Նորա, Հօր սուրբ, խոստովանիմ ճշմարտապէս, զի թէ ոչ արտաքեսցէ առ իս ուստեք մխիթարութիւն ինչ, պատասխանիդ այդ ոչ անապան քարշեսցէ զիս ընդ իւր ի տապան։ Ես կարծեմ թէ ես սպանի զնա, ես համարիմ՝ թէ ես եղէ առիթ վաղաթառամ թարշամելոյ նորա, եւ՝ որ այնքան զգուշէի ի մարդասպան վատահամբաւութենէս, այժմ կամիմ յանձն առնուլ զայս նոր անօրինակ սպանութիւն, զորմէ անընդհատ հնչին արձագանգ կողկողանաց բազմերախտ Տէր Յովհաննէսի ի փապարացեալ հոգին՝ թէ Տէր Գաբրիէլ՝ եթէ աստ դիպեալ էիր, ոչ էր մեռեալ որդեակն իմ։

Ես միայն ի վերայ հիման նամակաց ձերոց ճանաչէի ընդ աղօտ զՏէր Յովհաննէսն՝ որ սիրէ զիս՝ զատելիս բազմաց, երանի՜ թէ եւ ոչ համայնից։ Բաց յայսմանէ չգիտէի այլ ինչ։ Ի նամակէ ձերմէ իմացայ՝ թէ Մկրեան Տէր Յովհաննէս Փոխանորդն Պատրիարքի, առ որ երեք կամ չորս նամակս էի գրեալ միայն վասն իմոց կարեաց, զծրարսն զոհս բերէ ինձ, թողեալ զորդեակն ի մահճի՝ դեգերելով դրանց ի դրունս՝ ի փրկութիւն իմ։

Ես որպէս ի հայելւոջ տեսի զտգեղութիւն իմ, զի որ գերմարդկային առաքինութեամբ է պերճացեալ, տակաւին մնացեալ է անտես ի շլացեալ աչաց իմոց։ Այժմ ես չգիտեմ, ո՞յք ոմանք կազմեն զգերդաստան իմոյ փենեհէսի։ Ունի՞ զՆրիցուհի, թէ մնացեալ է հանգոյն Մելքիսեդեկի. ունի՞ այլ եւս որդիս կամ դստերս, թէ հանգոյն Յոբայ մնացեալ անորդի, ունի՞ ցդուան դերեզմանի աղօթակել, Ողորմեցարո՛ւք ինձ, ողորմեցարո՛ւք բարեկամք, զի ձեռն Տեառն մխեցաւ յիս։

Արդեօք արդարեւ այսու Աստուած կամեցաւ նոր

Թեւակոխէր հոգի իմ արձանացուցանել ի քարաւէզ: Գրեցի զմին ի հազարաց որք խճողեալ խռնէին ի խելապատակիս չճեղում, եւ ահա ընդ սմին առաքեմ ի ձեռս ձերոյ սրբութեան զի մատուսջիք ի դիմաց իմոց: Ես հազարաւոր համբուրից սրբոյ աջոյ Նորա ունիմ յուս իմ բեկինս պարտուց. դուք առ այժմ միայն զգրկափար համբոյր իմ մատուսջիք արտօսրատոգոր երեսաց Նորա, երեսացն ասեմ, յոր փոխանակ իւղոյն որ իջեալն է ի գլուխ եւ ի մօրուս Դորա, եւ ի մօրուացն ի գրապանս զգեստուց Դորա, այժմ ցօղին կայլակք արտասուաց, որպէս երբեմն Խաչաչարչար Նախատըպի Դորա՝ կայլակք ոլոռնակն քրտանց. Նա սպասէր տակաւին մահու, զոր Դա չօշափեաց յանձին սիրական ձագուկին իւրոյ. Նա միայնակ էր, եւ սպասէր զի Մայր իւր եկեսցէ եւ լիցի պատարագակից ինքեան, այլ Դա՝ ընդ Որդւոյ իւրում որպէս զոյգ աղաւնեաց մատուցաւ ի սեղան, յորում մին թաթաւեցաւ յիւրում արեան, եւ միւսն յարիւն որդւոյն:

Ո՛հ, հնոց վառի ի սրտիս, եւ ես զիս տեսանեմ ի նմին մշտակէզ խանձեալ եւ խարուկեալ: Երեւի այսպիսի իմն էր հնոցն Բաբելոնի, որոյ բոցն բարձրանայր քառասուն եւ ինն կանգուն, այլ իմ սրտի բոցն ցոլայ յամպս եւ յերկինս. երանի թէ եւ աղօթք իմ նմանէին սմա, զուցէ հասանէին առ Որ ուղերձեալ էին. այլ աղօթք իմ որպէս ծուխ սեղանոյն Կայենի դարձան եւ դարշահոտ արարին զիս յաչս իմ, եւ տան ինձ անդադար կրկնել, թէ երեւի՝ չարաչար խնդրեցեր:

Զի՞նչ չարիք գոյին ի սմին, եթէ ես աղաչեցի զԱ.ստուած բառնալ զդուռն ողորմութեան իւրոյ, եւ առաքել զբժշկութիւն՝ մատաղաւուրց պատանեկին, եւ պսպոփանս՝ տխրատարտեալ ծնողին:

*Ցիմարիմ ի մտածութիւնս իմ, տեսանեմ զի մահ դաւիր հարկանէ, եւ կերակուր ի ժանիս նորա մտանեն ընտրեքն. արդեօք եւ Աստուած առնէ անտի զիւր բաժին, առաջի որոյ պատուական է մահ սրբոց իւրոց. Ինքն գիտէ, եւ կամք իւր օրհնեալ եղիցին։*

**ՄԵՐՈՒՆԻ ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ**

**9 Ապրիլ, 1876, Ս. Պ. Բուրգ,**

---

**( ԹԻՒ 24 )**

*ԼՈՅՍ. Հանդէս Ազգային, ի 10 Ապրիլի խմբագրեալ ի Տ. Հմայեակ վարդապետ Դիմաքսեան.*

---

## ՅԱԿՈԲԻԿ ԷՖԷՆՏԻ Տ. ՄԿՐԵԱՆ

*Մարտի 28ին՝ Ազգին մէկ զուարթածաղիկ յոյսն ալ թառամեցաւ։*

*Յակոբիկ էֆէնտի Տ. Մկրեան՝ Գերաշնորհ Պատրիարքական փոխանորդ Հօր անհամեմատ որդին՝ որ ուսմամբ, առաքինութեամբ եւ ամեն տեսակ հոգեձիր բարեմասնութեամբք իւր հասակակիցներուն նախանձելի տիպար մ'էր, իննեւտասնամեայ գարնան հասակին մէջ իւր մահկանացու կենաց ընթացքը կնքեց։ Հայրն՝ ինչպէս անոր կրթութեան եւ դաստիարակութեան նիւթական եւ բարոյական ամեն փոյթ տարած էր, նոյնպէս անոր հիւանդութեան՝ բժշկականութեան բոլոր ճարտարութիւններն օգնութեան կոչած էր զար-*

ման մ'ըլլալու այնպիսի որդւոյ մը՝ որ ամբողջ ազգին սիրելի հանդիսացած էր. սակայն դժնդակ ախտն ամեն բանէ յաղթեց ի սուգ անմխիթար համակելով Մկրեան առաքինազարդ գերդաստանն ։

Յակոբիկ թէեւ պատանի մ'էր, բայց խոհուն փիլիսոփայի մի պէս կմտածէր, ճարտար բանաստեղծի մի պէս կերեւակայէր, քաջ գրագէտի մի պէս կենդանի կը նկարագրէր գիտութիւններն ու արուեստներն. ինչպէս յայտնի կը տեսնուի իւր հիւանդութեան միջոցին գրած երկասիրութենէն որ Հայ մանկտւոյն կտակեց եւ այնպէս մեկնեցաւ։ Թագի, փառաց եւ մեծութեանց թեկնածու չէր նա. իւր մտաց եւ սրտի միակ առարկաներն էին Դաստիարակութիւն եւ Հայրենիք, զորս Աստուծոյ չափ կը սիրէր եւ կը պաշտէր. անոնցմով սկսեց իւր կեանքն եւ անոնցմով կնքեց ։

Յակոբիկ իր յիշատակովն աշխարհիս մէջ կենդանի է, իր առաքինութեամբն գերեզմանին մէջ ալ անմահ է, որուն խորերէն բացորոշ կտեսնէ անհունութիւնը եւ ցանկացած ճշմարիտ հայրենիքն զորս այս աշխարհիս մէջ ստուերի մի տակ ծածկուած կը նկատէր. բայց ասոնց հետ մէկտեղ՝ մեծ կորուստ մ'է Ազգին համար անոր տարաժամ մահը, անմխիթար կսկիծ մ'է իւր ծնողացը, որոց համար համբերութիւն եւ երկնային մխիթարութիւն կը մաղթենք ցաւակից սրտիւ ։

(ԹԻՒ 25)

*ԲԱՆ, Գ. Տ. Մանաւեան վարժապետի, հրատարակեալ ի նոյն Լոյս հանդիսի.*

---

ԱՌ

# ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ

## ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ

*Վշտացեալ Հայր,*

*Ծաղկազարդի օրն՝ չեմ մտածկուսիր ընաւ՝ կենացդ ամենէն վշտագին օրն էր, վասն զի անդարմանելի կորուստ մ՚ըրիք, որ ծանրաթախիծ սգով համակեց ձեր դորովագութ սիրտը։ Զնաշխարհիկ զաւակ մը ծնել՝ որով աշխարհ զՁեզ Հայր անուանեց, զանի հայրական սիրոյ գորովանօք սածել եւ սնուցանել, զգուշանալ այն ամեն վտանգներուն՝ որ ամեն վայրկեան անոր անմեղութեան կսպառնային, եւ այսպէս անժամ, աւաղ, անջրպետ կանգնի՝ Ձեր եւ անոր մէջ տեղ՝ ցուրտ գերեզման մը . . . հոգեմորմոք յիշատակ մ՚է այս։ Կը փափաքէիք որ նա Ձեր շիրիմը կանգնէ, բայց անգութ ճակատագիր մը այդ տխուր պարտականութիւնը Ձեր վրայ կը ծանրացընէ Ձեր կամաց եւ բնութեան զասակարգութեան հակառակ . . . Ահ, այս է եղեր Ձեր բաժակը։*

*Այն սգապատ օրն՝ թերեւս շատերն՝ իբրեւ քրիստոնէական կրօնի պաշտօնեայ զՁեզ մեղադրեցին համաշալից եւ ցաւահոս արտասուացդ համար. անոնք չտեսան եւ չէին կրնար գուշակել՝ որ սրտէդ արեան գետ մ՚ալ կ՚ջաւ այն գերեզմանին մէջ, ուր վաղամե-*

ուրկ սիրելւոյդ աճիւնն ամփոփեցաւ։ Ի՛նչ գիտնան . . . ներողամիտ եղէք անոնց, Հայր, որդեկորոյս հայր մը միայն կրնայ որդեկորոյս հօր մը զգացումն զգալ եւ բացատրել ։

Թէպէտ մէկ քանի անգամ հազիւ տեսութիւն ըրած եմ Ձեր անպուգական զաւկին հետ, բայց շատ սիրած էի անոր հանճարն անոր ծանրաբարոյ բնոյթն, ի մի բան՝ բնութենէն անոր օժտեալ բարոյական ձիրքերն՝ որ անոր մէն մի շարժման եւ խօսքին մէջ մեծ դեր մը կը կատարէին, եւ որք բարեգուշակ ապագայ մը կաւետէին իւր առաքինափայլ գերդաստանին եւ Ազգին ։ Այսօքեկ անջնջելի տպաւորութիւն մ՚ըրած են ինձ, եւ այս առթիւ բնական պարտականութիւն մ՚ունէինք յուղարկաւորութեան տխուր հանդիսին ներկայ գըտնուիլ եւ Ձեր արտասուաց խառնել իմս ալ. սակայն ժամանակիս ձախորդ բերմունքն . . . պարտաւորած են ներկայիւս յայտնել խորին ցաւակցութիւնս ։

Մի յուսաք բնաւ թէ Ձեզ մխիթարիչ մ՚ըլլալ կը փութամ. սանկ ծանր պաշտօն մը ժամանակն իսկ չկրնար ստանձնել, որ բնութեան անդիմադրելի օրինաց արձանագիրն է։ Ցկեանս լալու պարտաւոր էք զանի. այն արցունքներն՝ հայրենի գորովոյ պարտիքն եւ որդեկիզ ընկերական եւ առաքինական բարեմասնութեանց իրաւունքներն են. բարեմասնութիւններ՝ որոնք առ Ազգն յուսալից խոստումներով լի էին, եւ որոց խայրիքն՝ իբրեւ անդրանիկ գրաւական՝ Ազգին կտակեց չեւ քսան գարուն անոր ճակատն պճնած՝ այնպիսի պահու մը, յորում մահուան անագորոյն արբանեակն անոր գեղածաղիկ կենաց հետ կը մաքառէր եւ մինչեւ իսկ յաջողեցաւ արգելուլ նոր գարնան վարդն անոր անբիծ ճակտին վերեւ բացուելու։ Այս

խորհրդաւոր յիշատակներն իրաւամբք չեն թողուր ծնելագութ սրտիդ՝ որ աչացդ մէջ նոր արցունքներ չը դնէ. քաջ գիտեմ զայս. ուրեմն լացէք, բայց մի յուսահատիք. որչափ ալ նուիրական կաթիլներն՝ զոր բնութեան գերագոյն հեղինակը մեր մէջ դրած է, յաւիտենից յիշատակներ են, այնչափ ալ անոնց մէջ յուսահատութիւն խառնել աններելի է՝ մանաւանդ ձեզի նման աննկուն եւ անընկճելի սիրտ կրող Քրիստոնէի մը համար. եւ թերեւս երիտասարդ օրհասականին վերջին նայուածքն եւ շունչն՝ Ձեզմէ բաժնուած միջոցին՝ զայս կը հայցէին ողորմագին, ներկայացնելով աւելի երջանիկ եւ խաղաղ հայրենիք մը հանգչելու դաշնագիրն, որ բարոյական հարկի մը ներքեւ կը դնէ յուսաբեկ չըլլալ եւ չափաւորել դիւրազգաց սրտիդ դառնակսկիծ մորմոքը։

Ցաւակից Ձեզ

30 Մարտ 1876, Սամարիա. Տ. Մ.

---

(ԹԻՒ 26)

ՆԱՄԱԿ՝ Գ. Գեորգ Մ. Շիրինեան Վարժապետի յԱտաբազարէ.

---

## ԳԵՐԱՊԱՏԻՒ ՀԱՅՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐԵԱՆ

### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Կ. ՊՈԼՍՈՅ

Վշտակից իմ Ս. Հայր,

Ազգային լրագրաց մէջ հրատարակուած անակնկալ մահուան գոյժ մի կայծակնահար ըրաւ սիրտս եւ ի խոր խոցեց հոգիս. դաշոյնի մի հարուածն այսչափ խորամուխ չէր կրնար լինել։ Երկու երեք օր լուիկ մնջիկ

մխիթարուիլ ուզեցի սրտիս վշտին յայտարար արտասուքն աչերէս դուրս թափելով, բայց մխիթարութիւն չգտի. քանի լացի, այնչափ յորդեցին արտասուքս։ Ուստի այս ցաւոցս հնար միայն զայս գտի որ գամ զՁեզ, սրտախորով ծնողդ կրկին լացնել. ցաւով ցաւ բուժելու եւ արտասուքով արտասուք սրբելու դժնդակ հարկին տակ կը գտնուիմ. Աստուա՛ծ իմ. ինչ պայման մխիթարութեան . . . ,

Պատուական Ս. Հայր, մահուան խորշակն Ձեր հոգւոյն ծաղիկը զարկաւ, Ձեր սրտին հատորիկն, Ձեր յոյսն, Ձեր երջանկութիւնն, Ձեր փառքն եւ մեր, բարեկամացս պարծանքն տարաժամ յափշտակեց, որն է ամենասիրելի Յակոբիկդ, հանճարի բողբոջ մի, ուսման եւ գիտութեանց անհուն գանձերուն սիրահար մի, բարի վարուց տիպար մի, վերջասլէս հոգի մի՝ որ հազիւ իւր փայլուն ճառագայթներն արձակած, մահուան սեւ ամպոց քօղին տակ ծածկուեցաւ յանկարծ։ Ո՞ւր գնաց. — մեր սուրբ կրօնն, մեր անհունի եւ անմահութեան գաղափարներն, եւ անվերջ յառաջադիմութեան (մանաւանդ իմացական եւ բարոյական) անյագ բաղձանքներն, զորս բնութիւնը անկած է ի մեզ, կ'ասեն թէ Նա մեր նիւթական աշխարհին վրայ երեւելէ դադարեցաւ՝ անմահութեան աշխարհին հորիզոնին վրայ փայլելու համար իբրեւ մի անշէջ եւ անմուտ աստղ. անմահութեան աշխարհին հորիզոնին վրայ կասեմ, ուր բնաւ ամպ չկայ, ուր բնաւ արգել չկայ, ուր բնաւ ցաւ չկայ, ուր բնաւ մահ չկայ, այլ միայն անվախճան կեանք, լոյս եւ խնդութիւն։

Բայց Տէր քաղել ծաղիկ մի որ դեռ այն ինչ ծիլ ու թերթեր կարձակէ, եւ բոյրեր ու ժպիտներ կը սփռէ իւր չուրջը։ Ի՞նչ էին այդ ծիլն ու թերթերն՝ եթէ ոչ

քսանամեայ մի գեղեցիկ հասակի երկնատու շնորհքներն. Ինչ էին այդ բոյրերն՝ եթէ ոչ իւր ազնիւ բարքն ու վարքն եւ իւր անդրանիկ երկասիրութիւնն, զորոյ հրատարակութիւնն, աւա՛ղ, հազիւ իւր մարմնաւոր աչօքն տեսաւ, եւ ինչ էին այդ ժպիտներն՝ եթէ ոչ իւր տուած գեղեցիկ յոյսերն, որք ընտիր ճաշակի եւ յառաջադիմութեան ոգւոյն վրայ կը յենուն:

Արդարեւ Նորա կեանքը կարճատեւ եղաւ. բայց որչափ կարճատեւ, նոյնչափ բեղմնաւոր, նոյնչափ փառաւոր եղաւ, Նա իւր կենաց գարնան մէջ իսկ՝ ուր մարդկային կեանքն սովորաբար ստորին կը լինի, տղայական կամ խուժանի կեանք չվարեց, միշտ բարին միշտ տեւական, միշտ գեղեցիկն, միշտ վսեմն խորհեցաւ ու պաշտեց. Կարծես հոգին կասէր իրեն «Շուտով յառաջ գնա ասպարիզիդ մէջ, ընդ հուպ պիտի մեկնիմ այս կաւէն.» Դուն ուրեք տեսնուած է որ մարդ աւելի երկարատեւ մի կենաց ասպարիզի մէջ ստանայ այն սիրտն, այն ոգին, այն վառ երեւակայութիւնն, այն աշխատասիրութեան աշխոյժն, այն ճաշակն, այն սկըզբունքն եւ դրականութեան այն անյագ տենչն, զորս Յակոբիկդ ունեցաւ ծաղիկ հասակի մէջ:

Ահա այսպիսի բարեմասնութիւններով լի եւ ապագային համար մեծամեծ յոյսերով յղի որդի մի կորուսիք դուք, բայց այս կորուստն ընողը դուք չէք. բարեկամք հազուագիւտ ընկեր մի, Ազգն խիստ օգտակար անդամ մի, ծաղիկ մի կորուսին. Ուստի դժբաղդը միայն դուք չէք, այլ Ձեզ հետ բարեկամք Ձեր եւ Ազգն ողջոյն. վկայ այս ըսածիս՝ բարեկամաց արտասուքն եւ ծանօթից ցաւերն որք իրենց արձագանքը գտին լրագիրներու մէջ: Այսպիսի մահեր արիւնհեղութիւն կը համարուին մարդկային զգացմանց եւ գնահատութեան առջեւ, բայց

ծ գիտէ գաղտնիքն Նախախնամութեան որ իւրաքանչիւր տեսակաց հիւանդութեան մէն մի բնութիւն տուած է, զայս բուժելի եւ զայն անբուժելի առնելով։

Առանց չափազանցելու կրնանք ասել թէ հիւանդութեան ծագումէն ի վեր Ձեր տարած խնամքն, հոգատարութիւնն եւ դարմանի փոյթն բիւրաւոր հայրերու վրայ հազուագիւտ լինելու աստիճանին հասաւ ։ Էսքիւլաբի նշանաւոր աշակերտներ չորս տարի միջոցի չափ անընդհատ թափեցին Նորա վերայ իրենց բոլոր ճարտարութիւնն, բայց անագորոյն հիւանդութեան բնութեանն իշխել անկարող եղան, եւ վերջապէս Ձեզ մնաց ի բաժին այդ մեծ կորուստն ընել, կորուստ մի որոյ վերայ խոցեալ մի սիրտ լացէն զատ միջոց չունի սփոփուելու, զի ինչպէս հրդեհն ջուր, նոյնպէս այդ կորստեան շամփուրին վերայ խորովեալ մի սիրտ արտասուաց հեղեղներ միայն կուզէ իր բոցերը մարելու համար ։ Թող չմեղադրուիմ ուրեմն երբ ուրիշ ցաւակից բարեկամացդ տուած խորհուրդին հակառակ՝ կը գամ իմ լացովս կրկին Ձեր լացը շարժելու, եթէ մշտացդ հուրն կրկին արծարծեցի, զայն չիջուցանելու միջոցն եւս ընդ իս բերի, այն է իմ արտասուքս՝ զոր Ձեր կրակին վերայ կը թափեմ ներկայիս ։

Սակայն չափաւոր ըլլանք յամենայնի. այս ծանր հարուածին տակ իսկ մխիթարուելու մեծ կէտեր ունիք։ Նախ այն է որ Ձեր գորովալի խնամոց շնորհիւ մահուան ահարկու արշաւանքն երկու տարի յետս մղեցիք։ Ձեր երկրորդ մխիթարութիւնն է Նորա Երկասիրութիւնն որով գրական աշխարհին մէջ անմոռաց յիշատակ մի թողուց իւր անուան, կցելով զայն իւր բարի վարուց, գեղեցիկ բարեմասնութեանց եւ ազնիւ բնաւորութեան քաղցրիկ յիշատակին հետ, որ ոչ միայն

իւրայնոց, այլ եւ բարեկամաց սրտից խորերուն մէջ պիտի մնայ անջինջ։ Իսկ Ձեր երրորդ եւ վերջին մխիթարութիւնն է բարեկամաց արտասուքն, որք Նորա դագաղին եւ շիրմին վերայ թափեցան, եւ որոց հետ խառնելով եւ զիմս կը մաղթեմ յերկնից իւր անհուն գթութեան ցողերն Ձեր խորավիշտ սրտին վերայ։

Մնամ ցաւակից բարեկամդ

**Գ. Մ. ՇԻՐԻՆԵԱՆ**

11 Ապրիլ 1876, Ատաբազար.

Յ. Գ. Քաղաքէս Փափազեան հաճի Սիրական էֆէնտին իւր խորին ցաւակցութիւնն ինձ կը յանձնէ Ձեզ մատուցանել սուրբ աջերնիդ համբուրելով։

ՆՈՅՆ

---

(ԹԻՒ 27)

## ՆԱՄԱԿ՝ Աստուածատուր Աղա Մաղաքեանի՝ (1) յԱտաբազար.

ԱՌ

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ

### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԱՐԺԱՆԸՆՏԻՐ ՓՈԽԱՆՈՐԴՆ Ի Կ. ՊՈԼԻՍ

Վշտահար Հայր,

Հայրենիք՝ Հայրենեաց եւ ազգային յառաջադիմութեան նախանձախնդիր ուսումնապերճ պատանւոյ մի իւր մի թերթին ի ճակատն դրոշմեալ սեւաթոյր գե-

(1) Եղբայր Հոգելոյս Տ. Ստեփաննոս Արքեպիսկոպոսի Առաջնորդին Նիկոմիդիոյ՝ որ և եղև Տեղապահ Պատրիարքութեան Կ. Պոլսոյ։

բեղմանին վերայ աղխաղորմ կողքայ եւ կական կքառնայ առաջի գիտնական աշխարհի, եւ գրեթէ արտասուալից զգացմամբ եւ վիրօք կը լնու յանակնկալս ամեն Հայ սրտերն՝ որք ճշմարտապէս կը սիրեն զազգն եւ կը սպասեն զուսումն։ Եւ արդարեւ այս անգիւտ կորուսան կրկնակի ներգործեց համօրէն ազգայնոց, մի՝ զի այդպիսի ամենադովելի բարեմասնութեամբք օժտեալ ընտիր եւ եզական հանճարէ մը գրկեցան, եւ երկրորդ՝ զի սոյն հանճարոյն բեղմնաւորիչ բնական Տէրն անարիւն տխուր գործադրութեամբն համակեալ եւ պաշարեալ կը տեսանեն. զՔեզ կասեմ, ո՛ Հայրդ հասարակաց, աղէխորով ցաւոց եւ դառնութեանց ովկիանոսին մէջ մինչ ի խորս թաւալեալ՝ առաջի ունելով չնաշխարհիկ որդւոյն մահուն ճիրաններէն դիակնացեալ, երկոքեանդ միանգամայն սիրելիք մերձաւորաց եւ ցանկալիք հեռաւորաց։ Ո՛վ անգութ մահ, ընդէ՞ր այդպէս տարաժամ քաղեցիր աշխարհաւեր մանգաղաւդ նորաբողբոջ հասկ մը այն ինչ ի հունձս հասեալ, զիա՞րդ ճմլեցիր կթելու մօտ ողկուզին ճիւղը, որ իւր քրտնաջան մշակին եւ տրտմեալ Ազգի մի յուրախութիւն՝ իւր քաղցր բաժակին ճաշակը պիտի մատուցանէր։

Իսկ դու տարաբաղդ Հայրենի՛ք, մինչդեռ մենք քո սիրուն էջերուն մէջ գիտութեանց շքեղ դաշտին վերայ նոր զինուորեալ նահատակին նահատակութեանց հանդիսատես լինել կակնկալէաք, մինչդեռ նորա գիտնական կենաց հորիզոնին վերայ նոր պայծառացեալ արշալուսով պիտի զուարճանայաք, վասն է՞ր վաղ փութացիր նորին կենագրաւ դառն դուժիւ մեր լսելիքը վրդովել, մեր աչաց ընդդէմ վարագուրել գեղածիծաղ արուսեակը մահատարասուռ խաւարաւ։ Սակայն քեզ պէ՞ մեղադիր լինիմք, Բարձրելոյն անքննին կամքն եւ խոր-

հուրդն է՝ որ հաճեցաւ առ ինքն կոչել զՑակոբիկ էֆէնտին, որպէսզի մրրկածին օդերէն անցնելով՝ վերին անապական օդերը լիովին ծծէ եւ իր պապակին արբուցանէ, ուրեմն Թողումք որ Նա իւր պատրաստեալ կոչունքը վայելէ Կոչողին աթոռին կից ։

Եւ արդ՝ դու Եղիսէ, ծրագիրի վերարկու մատուցանեմք Քեզ՝ որով մխիթարիք ընդ միայնութիւն Ձեր. այժ; կը խոստովանիմք որ Թէպէտ Ձեր համակրութեան արդէն արժանացեալ՝ ի սրտէ կզգամք այն վէրքը՝ որով դուք յանհնարս վիրաւորեցաք, սակայն ունիմք միթէ այն ճարպիկ բաղուկը՝ որ զայն վերարկու Ձեզ կարկառեմք. Ձեզ՝ որ երկու աշխարհաց միջակէտը կանգնեալ՝ աննման զնուակիդ անժամանակ ելից համար սուրբ դադաղն մինչ կրկին եւ կրկին կհամբուրէիք, վերջին ճգամբք կմեռանէիք նորա հետ եւ դարձեալ կը կենդանանայիք. մեծ էր այս պատերազմը, ով Հայր վըշտաչարչար, ընդդէմ անագորոյն մահու. ուստի եւ մեծամեծ ամրութեանց պէտք ունիք նորայն դժնդակ սրոյն եւ հարուածոց դէմ. ճն անդր, ով պիտի լինի Ձեր ամրութիւնն, Ձեր հզօր դղեակն — անշուշտ անդրդուելի Հաւատք. Ձեր կըսեմ, լուսաւոր եւ պայծառ գաղափարն՝ զոր ունիք հանդերձեալ աներեւոյթ երկրին վերայ, ուրեմն հաստատուն մխիթարութիւն ի ներքս ի Ձեզ է, անմեկնելի ի Ձէնջ, յայնմ հետէ ձւմ կարօտ էք։ Սակայն աՀա հինգ հազար հայրասէր ժողովրդեան շրջապատեալ բազմութիւն մը, եկեղեցական եւ աշխարհական դասու բարձրաստիճան անձանց խումբը, եւ ի վէր քան զամենայն համայն Թուրքիոյ Հայոցս իմաստուն Հայրապետ մը ի մօտոյ արձանացեալ՝ կենդանի աղդու բարբառով՝ գիտեմ կմեղմեն զքո ծնողական անհուն մորմոք եւ կսփոփեն սատի. իսկ

անտի գրաւորական բանիւ Մեծ. Օտեան Նշան էֆէնտիի վսեմախոհ խօսքերն, Ամեն. Խրիմեան Սրբազանի ճարտար եւ սրտաճմլիկ գրիչն՝ որ նոյն իսկ հանգուցեալ բանասիրին ախորժակացն խիստ գգուելի եղեալ էր, Հայրիկին քաղցրախօս քնարն ասեմ, այո, չուտով պիտի արգելուն եւ սրբեն քո արտասուք յարտասուաթոր աչացդ ։

Ի վերայ այսր ամենայնի, ով Հայր գորովալից, «ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ» ընտիր մատենիկն՝ զոր հանգուցեալ երկասիրողն ի կենդանութեան Ձեզ ընծայեաց իւր բարոյական գոյութեան նուիրական անմահ յիշատակ, եւ իւր ուսումնական փառաց եւ պարծանաց իբրու առհաւատչեայ կտակեց Ձեզ, նմա տուէք Ձեր հայրական ուշն, նոյն պիտի խօսի գորովագութ ծնողիդ հետ անմռունչ եւ սրտաթունդ, զՁեզ պիտի մխիթարէ եռանդուն Որդւոյդ յաւիտենական բաժանման վերայ՝ որ չյագենալով ատեաց գիտութեամբք՝ երկնային Արխապագին մէջ գերագոյն գիտութեամբք իւր անզուսպ ցանկութեանց եւ խանդին յագուրդ տալ սլացաւ ։

Իսկ ինձ անարժանիս ի հեռուստ աստի նորա սքանչելի կենսագրութեամբք զմայլեալ, կայ մնայ միայն եւ միայն արտասուախառն մաղթանօք հայցել յայնմանէ՝ որ միայն ունի զանմահութիւն. Ձեզ եւ ազնուափայլ Գերդաստանիդ օգնութիւն եւ մխիթարութիւն. զի Նա է Հայր գթութեանց եւ ամենայն մխիթարութեանց յամենայն նեղութեան մերում՝

Եւ մնամ միշտ Ազգասէր Հայրութեան ձերում
անկեղծ մտօք եւ սրտիւ

**ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ Տ. Յ. ՄԱՂԱՔԵԱՆՑ**

**1876. Ապրիլ 11, Ատաբազար.**

(ԹԻՒ 28)

ԴԱՄԲԱՆԱԿԱՆ *Նշան Էֆէնտիի Օտեան.*

---

Օրթաքէօյ, 12 Ապրիլ, 1876.

*Սիրելի բարեկամ,*

*Ի Յիշատակ հանգուցեան սիրելի Որդւոյդ եւ իմ բարեկամիս կ'աղաչեմ ներփակեալ Դամբանական տողերը կարդացէք ու պահեցէք զայն։*

*Անձնուէր բարեկամդ*

Ն. ՕՏԵԱՆ

# ԴԱՄԲԱՆԱԿԱՆ

## Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ

## ՏԵԱՌՆ ՅԱԿՈՎԲԱՅ Յ. ՄԿՐԵԱՆ

28 ՄԱՐՏ 1876

« Մահը մեծ լոյսին դուռն է ։ »
Վ. ՀԻՒԿՕ

*Մօտ չորս տարի է որ դրեթէ շարունակ հիւանդ էր այս պատանեակը. դեռ երեկ մեռաւ եւ այսօր ի գերեզման կը դնենք զինքը։ Դիակ մը գերեզման դնելը Աստուծոյ ձեռքը ափ մը հող յանձնել է. Աստուած այս հողէն՝ նոր մարդը կ'ստեղծէ նոր դրախտին մէջ։ Մահը արարչագործութեան լրումն է. Մահը մարդուս վախճանը չէ՝ այլ անոր կեանքին յարատեւութիւնն է։ Մինչդեռ մենք ներկայ հանգուցեալ պատանեկին մարմնոյն թաղման տխուր հանդէսը կը կատարենք հոս՝*

հրեշտակները յերկինս Նորա անմահ հոգւոյն վերամբարձման տօնը կը տօնեն ցնծութեամբ։ Ինչպէս մարդիկ մարդ յաշխարհ ծնած ժամանակը կ՚ուրախանան՝ նոյնպէս Նորա ի գերեզման մտած ժամանակը հրեշտակները կը ցնծան, զի հրեշտակ մը վերացաւ յերկինս. արդար եւ անարատ հոգիները կը սաւառնին ու կը վերանան ի յերկինս ։

Եթէ մարդիկ անմահ միայն այս աշխարհիս մէջ՝ թերեւս երկնից դպրութիւնն ու գիտութիւնը անծանօթ միայն մեզի՝ եւ յաւիտենականութիւնը իր անսահմանութեանը մէջ թափուր մնար արդար հոգիներու խումբէն՝ որք անկեալ հրեշտակաց դասակարգութիւնը կ՚ամբողջեն ու կը միանան անոնց հետ. մարդիկ հրեշտակները կը ներկայեն յերկինս. Այս է ահա մարդուս վախճանը որ սկիզբն է երանութեան ։

« Երանի մեռելոց որք ի Տէր ննջեցին ։ »

Ներկայ հանգուցեալ պատանեակը, Յակոբիկ էֆէնտի Մկրեան, որ ի գերեզման կը դնենք՝ Նիկոմիդիոյ Պարտիզակ գիւղը Մկրեան ազնուական գերդաստանէն սերեալ՝ անդրանիկ արու զաւակն է Կոստանդնուպօլսոյ Պատրիարքական Փոխանորդ Գերապատիւ Տ. Յովհաննէս Մկրեան Հօր. սա իւր չքնաղ եւ արժանապատիւ հօրը տիպարն ըլլալով ըստ ամենայնի՝ չնաշխարհիկ եւ արժանի զաւակ եղաւ իր ընտանեացը ։

— Սա իր մանկութեան առաջին տարիները գիւղին դպրոցը եւ հօրը մատենադարանին մէջ ուսման սկզբնական ճաշակը ընդունելով՝ յետոյ իր պատանեկութեան սկիզբները երեք տարի շարունակ Շահնազար-Նուպար վարժարանին մէջ մարզուելով՝ զարգացաւ յուսմունս եւ ի գիտութիւնս. եւ համեստ ու ծանր բարքով բարգաւաճեալ՝ Հայ երիտասարդութեան խրախոյս եւ Ազգին մէկ

օգտակար անդամը ըլլալ կը խոստանար. խոստումը բաւական չէր, այլ իւր առ Ազգն ունեցած ջերմ համակրութենէն վաղագոյն զգածեալ՝ Հայ մանկտւոյն դաստիարակութեանը աւելի լաւ եւ դիւրին միջոց մը մատակարարելու տենչանօք մինչդեռ իր հիւանդութիւնը պահ մը դադար տուաւ զինքը հիւծելէն, Ցակոբիկ գրիչ ձեռք առաւ ընտիր ոճով եւ հասուն գիտութեամբ Դասագիրք մը յօրինելու. գործը սկսաւ եւ իր հիւանդութեանը հետ շարունակեց. դեռ տասն օր առաջ ի լոյս ընծայեց այս պատուական գրքոյկը «ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ» անունով. ասի իր գրական աշխատութեան նախախայրիկն էր, վերջինն եղաւ։ Գիրքը մեզի թողուց եւ ինքը մեկնեցաւ աշխարհէս. — Ցակոբիկ մեռաւ բայց իր մատեանը կենդանի է։

Այս հանճարին ծնունդը՝ Մկրեան որդի, Ազգին զաւակ, արդի երիտասարդութեան բարի օրինակ եւ ապագայ սերունդին հայր ու դաստիարակ ըլլալ հանդերձեալ էր, սակայն Աստուծոյ մատենին դպիրն եղաւ վաղագոյն։ Ազնիւ եւ բարի մարդ ըլլալու ամէն հանգամանքները ունէր, ուստի այս ամէն բարութիւնները շուտով երկինք կոչեցին զինքը։ Աւաղ, տարաժամ ի գերեզման կը թաղչի այս չնաշխարհիկ զաւակը. ըստ մեզ կորուստը մէկ՝ բայց իր ծնողաց եւ ընտանեացը համար կրկին է ցաւը, որդին եւ զաւակը միանգամայն կը կորուսեն։

Մարդիկ քանի որ այս աշխարհիս վրայ կ'ապրին՝ ընտիր անձերու պէտք ունին ընկերութիւնը. Հայկական ընկերութեան կազմութիւնը Ցակոբիկ Մկրեանի օգտակար օժանդակութեանը պէտք ունէր. կարի պիտի նպաստէր սա հայկական գրականութեան, գաղափարաց յառաջդիմութեան եւ լուսոյ ծաւալման։

Լոյսը չափազանց կը սիրէր, յառաջդիմութիւնը կը պաշտէր, գրականութեան սիրահար էր, տատանիկ սիրահարութենէն շուտ հեռացաւ. սակայն չը վհատեցաւ, այլ պայքար եղաւ աշխարհիս ունայնութեան եւ անկայուն կացութեանը դէմ, մարտնչեցաւ աշխարհիս խաբուսիկ երազներուն դէմ եւ անվեհեր ի գերեզման ընթացաւ։

« Մահը մեծ լոյսին դուռն է։ »

Ցանկօրէն չափազանց կը սիրէր լոյսը, սակայն այս աշխարհիս լոյսը բաւական չըլլալով զինքը յագեցնել՝ մեծ լոյսին դուռը կը մտնէ յաղթանակաւ, Աստուծոյ յանձնելով իր հոգին եւ հողին յանձնելով իր մարմինը։ Բարեյիշատակ հանգուցեալըն Աստուածպաշտութիւնը կատարեալ, կրօնասիրութիւնը անթերի, յոյսը մեծ եւ հաստատուն՝ ջերմեռանդութեամբ եւ երկիւղածութեամբ Եկեղեցւոյ Սուրբ Խորհուրդներուն հաղորդուելէն զկնի՝ իր ընտանեացը հրաժեշտ եւ Երկնից ողջոյն տալով Աստուծոյ մերձենալու պէս մեկնեցաւ աշխարհէս. յաւիտենականութիւնը ընդգրկելով յանմահութիւն վերածեցաւ։ Մահը կանխաւ զգալով՝ աներկիւղ ըմպեց բաժակը իր եղբօրը եւ քոյրերուն աւանդելով որ սիրեն զիրար. սիրով ապրեցաւ այս աշխարհիս վրայ նաեւ սիրով մեկնեցաւ աշխարհէս։

Փառք Ամենակալին Աստուծոյ որ հոգւով սրբով հանգեաւ այս պատուական պատանեակը. այս պիտի ըլլայ իր գորովագութ ծնողաց եւ համայն ընտանեաց մխիթարութիւնն ու սփոփանքը որ քան զնահապետն Աբրահամ կատարեալ պատարագ կը մատուցանեն Աստուծոյ. Աստուած կ'ընդունի այս պատանեակը մարդիկ պէտք չէ կոծեն զայն։

Արդ՝ այս խորհրդաւոր տաճարիս մէջ մեր արդար հոգիի մը հանգստեան պաշտօնը կը կատարենք խմբո-

վին՝ մաղթենք միաձայն առ բարձրեալն Աստուած որ օրհնէ սորա տապանին հողը, մխիթարէ իր ծնողաց, ազգականաց եւ բարեկամաց բեկեալ սրտերը եւ Մկրեան Յակոբիկի կենաց եւ մահուան օրհնեալ յիշատակը անջնջելի պահէ ապագայ սերունդին մէջ:

**Ն. ՕՏԵԱՆ**

---

**(ԹԻՒ 29)**

**ՆԱՄԱԿ Գեր. Տ. Խորէն Ս. Եպիսկոպոսի
Հօր Վանացն Արմաշու.**

Հոգեշնորհ եւ սիրեցեալ եղբայր,

Կարի յոյժ դառն վշտօք չարչարեցաւ եւ ծիւրեցաւ սիրտ քո՝ մանաւանդ թէ եւ մեռաւ իսկ ընդ փոխումն ամենասիրելի որդւոյդ յաշխարհէս: Բարեկամք քո եւ ամենայն ծանօթք փութացան մխիթար բանիւք շիջուցանել զհրատապ բոց ողջակիզեալ սրտիդ, այլ ես ոչ կամիմ խափանել զայնպիսի ինքնարծարծ եւ անշիջանելի հուր հայրական կրից, այլ ի մեծութիւն հանդիսի հաւատոցդ հայել՝ յորում փորձեաց զքեզ Աստուած եւ եգիտ իւր արժանի:

Քահանայ Աստուծոյ ես, Սիրեցեալդ Եղբայր, պաշտօնեայ յիշատակի մշտնջենաւոր մահուան՝ որ ի վերայ Խաչին՝ պատարագաւ. կերակուր քո է կատարումն կամաց Աստուծոյ, եւ ճաշակ քո սուրբ է վարդապետութեամբ Աստուածաշունչ կտակարանաց. քարոզ ես հասարակաց յարութեան եւ մեծահաւատ ի հանդերձեալ ստոյգ հաստատմունս: Դու յայսպիսում երկնաւոր հան-

դամանող. յորս օծեար ի Հոգւոյն, զաւակ ունէիր, զաւակ անդրանիկ եւ քսանամեայ ի ներքոյ առաքինութեամբ լի՝ եւ յարտաքոյ ամենայն շնորհօք առ ի մարդկանէ զարդարեալ, իմաստութիւն զոյգ ընդ հազուագիւտ համեստութեան եւ մաքրութեան սրտին գեղեցիկ յոյժ փայլէր ի նմա. ի բնածին առատութիւն մնաց այնչափ առաւելեալ մինչեւ յառաջ քան զքո ինչ թերեւս խոկալդ զգիտնարար պարապմանց նորին, ես ինքն քեզ յիշեցուցանէի եթէ առ ինչ ինչ բաւական էր այնպիսի տաղանդ։ Այո, գանձ էր նա՝ յորում էին ծածկեալ ամենայն ակնկալութիւն ծնողիդ, բարեկամացդ եւ բազմաց յոյժ։ Սակայն, զինչ քան զերկինս ամրագոյն տեղի ի դնել իւրաքանչիւր զգանձս մեր, ուր ո՛չ գող մերձենայ եւ ո՛չ ցեց ապականէ։ Ցոռութիւն եւ ապականութիւն աշխարհիս գողք են եւ ցեցք, որ զառաքինութիւնս երիտասարդաց գողանան եւ ապականեն, քո որդին եւ հասարակաց մեր գանձ յափշտակեցաւ յերկինս, զի մի՛, ըստ Սուրբ Գրոց յռռութիւն շրջեսցէ զիմաստութիւն նորա։

Ի հաւատոց են մխիթարութիւնք մեր եւ ոչ՝ որպէս առաքեալն առ Թեսաղոնիկեցիսն ասէ՝ ի մոլորութենէ։ Եթէ յաստեացս ինչ բան առնուլ ի մխիթարել զիս եւ զքեզ, անհնար էր, զի ոչ ինչ էր աստէն ի զուգակշիռ կամ ի փոխ առնուլ քում զաւակին, մանաւանդ թէ եւ զիարդ հաւատալ մեզ աշխարհի, յորում ամենայն ինչ բաց յառաքինութեանց կեղծիք են ամենեւին եւ նենգութիւնք։

Ջնաւ Խաչին, Եղբայր, յորում ամենեցուն մեր պարտանք բովանդակեալ են, յիշեցուցանեմ Քեզ ի մխիթարութիւն եւ ոչ զգոչաւորագոյն աղաղակ սնոտի մխիթարութեանց աշխարհի հնչեցուցանեմ, որք Քեզ

ինչ ոչ պղղեցուցանեն։ Ի հանգստեան վշտակած սրտից. եւ ի մխիթարութեանդ է եւ հանգիստ հոգւոյ ննջեցեալ զաւակին, որպէս Սուրբ Հայրն մեր ի Ցանկալուպատում գիրան ասէ։ Եւ ես ընդ քեզ մխիթարեալ աղօթեմ վասն նորա՝ հանգուցեալ երանելոյ նմին, որ չեւ զանուանեալ սակէն ի չարիս եկ եւ գնաց առ Աստուած։

Ցանկանալով մխիթարութեան սփոփեցեալ երջօրդ՝
Մնամ աղօթակից
ԽՈՐԷՆ ԵՊԻՍ. Հ. Վ. ԱՐՄԱՇՈՒ

1876 Ապրիլ 12,
Ի Ս. Վանս Ցարմաշ.

---

(ԹԻՒ 30)

ՆԱՄԱԿ՝ Գեր. Տ. Մեսրոպ Ս. Արքեպիսկոպոսի յԵգիպտոս.

---

Գերապատիւ Ս. Եղբայր ի Քրիստոս,

Արդարեւ ողբալի է աշխարհս, յորում որ եւ է գերագոյն ատաղձանաց ժամանող անձինք եւս, զոգցես արտասուալից վախճան տուած են իրենց կենաց. ամե ունայնութիւն կոչելով, միւսը ամենէն առանձնութեան մէջ ողբով ու հեծեծանօք կը մեկնին աստի. քանզի եւս իմաստասիրաց եւ բանիբուն անձանց դասը՝ անկարող գտնուեցաւ շահատակել կենցաղոյս ցաւոց ու փորձանաց. ափսոս ի սարսուռ չարաչօգել կը փութամ նկատելով Ձեր Գերապատուութիւնը իսկ նոյն թախծանաց ու տրտմութեան ենթակայ գտնուեցաւ,

*անջատուելով սիրասուն առաքինի զաւակէն. տարաժամ կորուստ. խոց խայթահար հայրական սրտի. այն ինչ ակն ունէիք Նորին նշանաւոր անդամ մը նկրկայանալուն, դժբաղդաբար կը տեսնէք գալկած ու չնչացեալ. Կը ցաւիմք եւ մեք աստէն ի ցաւ մեծ եւ չմարթիմք այլ ինչ արտասանել, բայց եթէ երկնային մխիթարութիւն սրտից Ձերոց։*

*Հապա, մխիթարուի Ձեր Գեր. Եղբայրութիւնը յուշ ածելով վաղամեռիկ հարազատիդ գերափառ կոչման վերանալը, հրաշագան բերկրութեանց հանդիսանալը եւն. եւն։*

*Ձկայ առնումք յայնմ, որքան որ շարունակել կը բաղձամք, չկարենալով նուազել մեր սրտին զգացած խորին ցաւը, խնդրելով ի բարձանց մխիթարութիւն սրտից Ձերոց, լուսաւորութիւն հոգւոյ Նորին, եւ վայելումն անանցն կենաց։ Պահպանեսցէ Տէր զմնացեալ զաւակունս անխորձ պահելով զԳերդաստանդ համայն եւն ։*

*Որ ի Նուէրս մաղթանաց աղօթարար Ձեր*

**ՄԵՍՐՈՎԲ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

**13 Ապրիլ, 1876.**

**յԱրքեպիսկոպոսարանս Հայոց,**

**Գահիրէ.**

(Թիւ 31)

## ՆԱՄԱԿ Տ. Պետրոս Վարդապետի Գերապատիւ Առաջնորդին Սեբաստիոյ.

*Գեր. տրտմազգեաց եղբայր ի Քրիստոս,*

*Այս օրերս Մասիսի 1812ՐԴ թիւը գուժեց մեզ այնպիսի տխրազգեաց սոսկալի լուր մը, աւաղ, լուր մ'որ բոլորովին ահաբեկ ըրաւ զմեզ, հապա որչափ նորա վշտալից ծնողը. ահ երիտասարդ մ'որ իւր քսանամեայ կենաց գարնան անուշաբոյր ծաղիկը թօթափելով ուղեւորեր է դէպ ի յաւիտենականութիւն, յանմխիթար սուգ եւ ի տրտմութիւն համակելով իւր տարաբաղդ ծնողք եւ ազգականք, միանգամայն մեծ կսկիծ պատճառելով նորա ուսումնասէր եւ բարեբարոյ ձիրքերը ամէն լսողներուն ։*

*Սակայն ինչ օգուտ տրտմութիւն եւ հեծեծանք, քանզի վերնախնամ Տեսչութեան կամք եւ հաճոյքն է եղեր այդ ազնիւ երիտասարդին ի յերկինս չուելը, միանգամայն փառք եւ մխիթարութիւն է նորա վըշտահար ծնողաց, որ այժմէն իմանալի լուսով զարդարուած աթոռոյն վրայ բազմեալ նախախնամողին առջեւ առանձին բարեխօս մ'ալ ունեցան, ուստի ուրիշ բան չի մնար մեզ ըսել, միայն նորա անզրաւ փառք եւ Ձեր գերապատուութեան եւ պարագայից հայցել մխիթարութիւն յերկնից ։*

*Մնամ Գերապատուութեան Ձեր սրտացաւ*

**Խ. ՊԵՏՐՈՍ ՎԱՐԴ. ՍԵԲԱՍՏԻՈՅ**

15 Ապրիլ 1876, ի Սեբաստիա.

## (Թիւ 32)

## ՆԱՄԱԿ՝ Բաղիշեցի Գ. Բարսեղ Հայկունի դաստուրին ի Կէյվէյէ.

---

Գերապատիւ Հայր.

Կը ցաւիմ որ տխուր պարագայի մը մէջ Ձեր Հայրութեան ստիպուած եմ նամակ գրել, այնպիսի պահում՝ յորում Անդրանիկ որդւոյդ Ցակոբիկի տարաժամ մահուան գոյժն կ՚ընդունիմ լրագրաց միջոցաւ։

Մարդկութիւն նաւ մանաւանդ երախտագիտական ոգին անխուսափելի պարտ կ՚դնէ յիմ վերայ այն պարագայում յաւէտ վշտակցութեան սիրտ եւ զգացում կրել եւ յայտնել, յորում այս յեղաշրջիկ կենաց աղէտներ կը շրջապատեն մեր նմանիքը, երբ նոքա բնութեան մատուցած դառնահամ բաժակը խմելու մերթ կ՚դատապարտուին ։

Սիրելի որդեկէդ վաղահաս մահ՝ յիրաւի ցաւոյ եւ կարեկցութեան, վշտաց եւ տխրութեան դատապարտեց ոչ միայն Ձեր գերդաստան, ծանօթք եւ բարեկամք, այլ եւ համայն Ազգս։

Հայազգ՝ կորուստ մի ունեցաւ, զոր արդարեւ չէ կարելի մոռանալ եւ չյիշել։ Ուսեալ եւ ապագայ Հայ սերնդեան դաստիարակի մը կորուստ՝ ոչ սակաւ վիշտ եւ թախիծ կը պատճառէ ամէն Հայ, բայց զգայուն սրտերուն, եւ ամէն անոնց որք քաջ զգացած էին Նորա եռանդուն Հայրենասէր մտաց եւ զգացմանց ։

Աւա՜ղ որ մահուան անգութ մանգաղ ընդ միշտ այնպիսեաց խլած եւ քաղած է Հայկական դարաստանէն, որք տակաւին Նորաբողբոջ վարդերու նման նոր

բացուած էին, ուստի, Հայրենասիրութեան եւ առա-քինութեան հոտերը բուրել Հայ դարաստանին թշուառ ընտանեաց։

Այս բոյրք՝ բնութիւն զլացաւ ոչ միայն Ձեր ազնիւ գերդաստանին, այլ եւ համայն Ազգիս, որ մեծ յոյսեր կը տածէր Նորա բարոյական եւ մտաւոր կենաց վերայ։

Բայց պատուական Հայր, մի յուսահատիք, եւ մի տրտմիք չափազանց, զի երկնից վճիռը անյեղլի եւ անդարձ է, որոյ առջեւ մարդկութեան ծագումէն ցարդ, յաշխարհիս հզօր կայսերց սկսեալ ցյետին ռամիկն լռած եւ խոնարհած են։

Հայրիկ, տեղի տուէք տրտմութեան եւ արտասուաց ժոյժ ունեցէք, մեք ձեզմէ պէտք ունիմք ուսանիլ համբերութեան ամէն անսպասման դասերը, համոզեցէք, որ կարող լինիք սփոփիչ եւ մխիթարիչ լինել որբոց եւ այրեաց տառապելոց, որք Հայրակորոյս եւ որդեկորոյս վիճակի մէջ գտնուելով Ձեզ կը ներկայանան սփոփանք գտանել, եւ որոց երկինք Ձեզ սփոփանաց եւ մխիթարութեան Դաստիարակ-պաշտօնեայ կարգած է։

Վասնորոյ՝ կը մաղթեմք, որ Երկինք Ձեր վիշտեր եւ տրտմութեան աղէտներ փարատէ. որք բնական է որ ունենան ծնողք ի կորուստ քաղցր որդեկաց իւրեանց, եւ Սուրբ Հոգին իւր մխիթարութեան անուշիկ զովաբար խաղաղութեամբ Ձեր վշտացեալ սրտեր սփոփէ։ Ողջ լեր։

Բարեկամութեանդ աղօթող

Հ. ԲԱՐՍԵՂ ՀԱՅԿՈՒՆԻ

1876, Ապրիլ 16.

Ի Կէյվէ, ի Միջագիւղ ի Ս. Մանակ Վ.

( ԹԻՒ 22 )

## ՆԱՄԱԿ Սերոբէ Աղայի Էրմանեան, ի Կէյվէ — Օրթագիւղ.

Գերապատիւ Հայր.

Ձեր Որդւոյն տարաժամ մահուան գոյժը, երբ Փունջ լրագրին մէջ կարդացինք, բոլոր ընտանեօք տխրութեան եւ վշտաց ովկիանոսին մէջ ընկղմեցանք, յոյժ վշտացանք, եւ ով կրնայ առանց վշտի եւ արտասուաց արտասանել այնպիսի Որդւոյ մը տխրաւիթ մահը, որ տակաւին երիտասարդութեան գեղեցիկ գարնան մէջ բացուած հոտաւէտ ծաղիկ մի լինելով Մկրեան դարաստանին մէջ, պիտի բուրէր սիրոյ եւ առաքինութեան բոյրերը, ոչ միայն Ձեզ, այլ եւ իւր հեռաւոր եւ մերձաւոր բարեկամաց ։

Ա՛հ, դառն եւ դժխեմ մահուան անգութ մանգաղ՝ ինչպէս պահ մի չատատամնեցաւ այն ծաղկի կեանքը խլելու, որ տակաւին նոր բացուած էր եւ նոր դեռ գարնան անուշիկ հովեր պիտի ծծէր եւ նոր պիտի իւր սերմերը սփռէր Հայ մանկուոյն մտաւոր անդոյն մէջ ։ Ա՛հ, չեմ կրնար արցունքս զսպել, մինչ այսօրինակ տխուր եւ անբնական աղէտներ տեսնելու կը դատապարտուիմք ։

Բայց ինչ կրնայ ընել անզօր մը իւրմէ զօրաւորագունին, եւ մինչ աշխարհիս ստեղծագործութենէն ցարդ մէկը կրցած է իւր հանճարով եւ տկար հնարքներով բնութեան գաղտնիք թափանցել, Ամենակարողին մտաց եւ նորա դիտաւորութեանց անհունութեան հասու լինել ։ Բնութեան վճիռը անյեղլի է, Նախախնամութեան կամք եւ տնօրէնութիւնը՝ այս աշխարհ՝ չէ կարող վրիպել ։

Ուստի մի յուսահատիք, եւ մի լքանիք, Աստուծոյ մէն մի տնօրէնութիւք իւր մէջ քաղցրութիւններ եւ սփոփանքներ կպարունակեն ։

Նա այս պահուն՝ երկնից հորիզոնը սեւամած ամպերով կ՚մթագնէ, բայց յաջորդ պահուն զայն վճիտ եւ փայլուն կ՚պարզէ ։ Նա այս վայրկեանին տխրութեամբ կ՚լեցնէ, այլ միւսում խնդութեան քաղցր ժպիտներով կ՚սփոփէ ։

Մի յուսահատիք, երկինք Ձեզ եւ համայն Գերդաստանդ սփոփելու համար ով գիտէ ինչ քաղցր եւ բերկրալի միջոցներ պատրաստած է, եւ միթէ նորա միջոցներէն մինն չէ այն մխիթարութիւն, որ բնական է գալ յետ ծանր թաղծից եւ սրտամորմոք հեծեծանաց ։

Հայր, դուք յերկնուստ կարգեալ էք այսպիսի տխուր դեպքերում սփոփարար եւ մխիթարիչ մեզ, երբ մահուան աղէտներ վշտաց հոսանքներ մեզ վերայ տեղան, մեք Ձեզ պիտի ապաստանիմք, երկնից եւ յաւիտենականութեան վեհ զգացմանց եւ յուսաժպիտ անեղծանելի խնդութեան հրահանգները ընդունելու, այս է ձեր կոչումն ։ Այո՛, մի բարձր կոչում, որոյ առջեւ այս կենաց վիշտեր պիտի լռեն եւ անազդեցիկ պիտի մնան, տեղի տուէք տրտմութեանդ, որոյ ենթարկեալ էն հզօր կայսրերէն սկսեալ մինչեւ ցյետին գործաւոր ։

Կը մաղթեմ որ Ս. Հոգին Ձեր եւ համայն սիրելի գերդաստանիդ տխրացեալ սրտերը մխիթարէ իւր յատուկ եղած սփոփանօք ։

Մնամք Ձեր Հայրութեան աղօթարար

**Ն. Տ. ՍԵՐՈՎԲԷ ԷԼՄԱՍԵԱՆ**

1876 Ապրիլ 16, ի Միջագիւղ.

(ԹԻՒ 34)

## ՆԱՄԱԿ՝ Գեր. Տ. Բարթողիմէոս Ս. Արքե-պիսկոպոսի Պրուսայու.

*Գերապատիւ Ս. Եղբայր ի Քրիստոս,*

*Գիտէք քաջ թէ կեանքն՝ ի Կեանս է ։*

*Ո՛չ ապաքէն Դուք Ձեր սիրելի Որդեկին համար կեանք կուզէիք։ Նորա կեանքն ալ Կենաց մէջ մտնելնիդ՝ Հաւատոց պտուղն է ։*

*Այժ, Առաքինեւոյդ հաւատքը՝ առաքինի Որդեկիդ կենաց տարիներն յԱնմահութեան կը համրէ։*

*Դուք Քրիստոսատունկ Դրախտին Մշակ, թաղեցիք տնկեցիք միանգամ Ձեր Տունկը՝ Ձեր աչաց արտասուքներովն ոռոգելով. Նա անթառամ պիտի ծլի ծաղկի յաւիտեան՝ Յաւիտենական կենաց համար ։*

*« Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին ։»*

*Ապա եթէ մեր տկար մարմինը կ'քստմնի՝ թող մեր հոգին զօրանայ յօժարակամ ըմպել այս կսկծալից բաժակը, եւ հոգւոյն խմածը որքան ալ դառն ըլլայ՝ Սուրբ Հոգին կը քաղցրացնէ ։*

*Որոյ Ամենասուրբ Թեւոցն սփոփանաց յանձնելով զՀայրդ սգազգեաց՝ մնամ աղօթարար եւ վշտակից*

*Առաջնորդ Պրուսայ*

**ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍ ԱՐՔԵՊՍ.**

1876, Ապրիլ 17.

յԱրքեպիսկոպոսարանն Պրուսայ.

(ԹԻՒ 35)

ԱՐՇԱԼՈՅՍ ԱՐԱՐԱՏԵԱՆ լրագիր Զմիւռնիոյ թիւ 1038, Խմբագրեալ ի Ղ. Գ. Պալթազարեանէ.

# ՄԱՀԱԳՈՅԺ

Կ. Պոլսոյ Պատրիարքական Փոխանորդ Գեր. Տէր Յովհաննէս քահանայն Մկրեան ծանրապէս փորձեցաւ ի հայրական գորովալի զգացմունս իւր։ Վերին Նախախնամութիւնն, որոյ խորհուրդքն անիմանալի են, ի 28երորդումն ամսոյն անցելոյ կամեցաւ առ ինքն կոչել զիննեւտասնամեայ սիրասուն որդեակ նորա զպարոն Յակոբ շնորհալի երիտասարդն, որ իւր ծնողաց քաղցր մխիթարութիւնն և երջանկութիւնն էր։

Ուշիմ, գրագէտ, մատենագիր և լի ազնիւ ու հայրենասիրական զգացմամբք, հանգուցեալն սահմանեալ էր օգտակար ծառայութիւնս մատուցանելոյ ազգին ի պաշտօնս Մկրեան գերդաստանին։ Բայց աւաղ որ անագորոյն մահն տարաժամ յափշտակեաց զնա ի գրկաց դժբաղդ ծնողաց իւրոց։ Կորուստ ամենացաւալի, որոյ զծանրութիւնն սրտակորոյս ծնողք միայն քաջ կզգան և կը ճանաչեն։

(ԹԻՒ 36)

ՆԱՄԱԿ՝ Նորին խմբագրի Ղուկաս Էֆէնտիի Պաղտասարեան.

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳ ՔԱՀԱՆԱՅ

### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Ի Կ. ՊՕԼԻՍ

Վսեմահաշտ Տէր Հայր,

Թոյլ տուք ինձ, աղաչեմ, գալ ողբալ ընդ Ձեզ դառաբաժամ փոխումն առ Աստուած՝ շնորհալի որդեկին Ձերոյ Յակոբայ՝ սիրեցելոյն ի ձէնջ եւ յամենեցուն, ի յուշ բերելով եւ զնման երկուց հրեշտականման ամենասիրելի որդեկաց իմոց Միհրանայ եւ Արշակի, յերկինս հրաւիրելոց ի հասակի 6 եւ 7 ամաց,

Այո՛, գիտեմ փորձիւ, Հայր պատուական, զի տկար է բնութիւն մարդոյս եւ միակ մխիթարութիւնն որդեկորոյս ծնողաց՝ ջերմ արտասուք են առ նուազն զամիսս ինչ, եւ յետ այնորիկ ժամանակն եւ բարեպաշտական խորհրդածութիւնքն մեղմեցեն, սակաւիկ ինչ զցաւս նոցա : Ցաւք, որոց տխուր տպաւորութիւնն անջնջելի մնացէ միշտ ի սիրտս մեր :

Այս է ահա վշտալի ընթացք մարդկային կենաց, որ երբեմն յիշեցուցանէ ինձ զբան Հելլենացի հին փիլիսոփայի միոյ, որ ընդ խնդրով արկանելով զբարութիւն մարդկային գոյութեան հարցանէր թէ՝ Մարդոյս գոյութիւնն՝ բարութիւն մի է թէ թշուառութիւն. եւ հաստատէր դժբաղդաբար թէ թշուառութիւն է:

Աւելորդ համարիմ յուշ ածել Ձեզ թէ՝ գործ է գիտնական եւ բարեպաշտ անձի՝ յայտնի տխուր պարա-

դայս, արիութեամբ խորհիլ եւ գտանել մխիթարութիւնս թէ վասն ինքեան եւ թէ վասն գերդաստանի իւրոյ՝ ասելով, Տէր ետ եւ Տէր էառ, կամք Տեառն օրհնեալ եղիցի ։

Համբուրելով զԱջ ձեր, մնամ միշտ

Անձնանուէր բարեկամ Ձեր

ՂՈՒԿԱՍ Գ. ՊԱԼԴԱՋԱՐԵԱՆ

Զմիւռնիա, 17 Ապրիլ 1876.

---

(ԹԻՒ 37)

ՆԱՄԱԿ Փիլիպոս էֆէնտիի Խաչոյեան,(1) ի Սկօլկօզէ (վիճակ Պրուսայու).

---

Հոգեշնորհ Տէր,

Այն սիրտը որ քրիստոնէական վեհ առաքինութեանց եւ աստուածային սուրբ գիտութեանց շտեմարան մի եղած է, ինչպէս հնար է իմ աղքատ մտացս ծնունդը եղող այս փանաքի գրութեամբս զայն մխիթարելու յանդգնիլ ։

Կիմանաք պատուական Հայր, որ Ձեր Որդւոյն դէպ ի անմահացած կեանքը փոխադրուելուն նկատմամբ խօսիլ կուզեմ ձեզի, բայց կարելի է թէ ձեր հայրական սիրտը առժամանակեայ բաժանման կսկիծէն չկրնար զգալ այն քաղցր մխիթարութիւնները՝ զոր մեր քրիս-

(1) Անդրանիկ որդի մեծանուն մահտեսի Թորոս աղա ֆըչխանին նոյն գիւղի՝ հանգուցելոյ ի Տէր ։

առնչական ճշմարիտ եւ սուրբ կրօնքը կը մատուցանէ մեզի, ուստի զանոնք միայն կուզեմ յիշեցունել Ձեր սուրբ հայրութեան, աղաչելով որ փոխանակ այն մխիթարութիւններն ուրիշներէն սպասելու, բուն իսկ Ձեր սրտին մէջ կարդաք զանոնք, ըստ որում պէտք է յիշեցունել ձեզի թէ մահը՝ ճշմարիտ քրիստոնէի համար անմահութեան սկիզբն է ։

Իսկ ձեր Որդին քանի որ ձեր բարի վարուց եւ առաքինութեանց հետեւող գտնուած է. ըստ որում հարազատ որդին հօրը նման կըլլայ միշտ, անշուշտ հիմայ ինքը երկինքը Աստուծոյ փառքին մէջ կը հանգչի, պէտք է ուրեմն առոր համար ցաւիլ եւ վշտանալ. գիտեմ որ զինքը չափազանց կը սիրէիք անշուշտ իր առաքինութեանց համար, անոր համար ալ հիմայ չափէն աւելի կը ցաւիք, բայց իր բուն հօրը Երկնաւոր Հօրը սէրը՝ Ձերինէն աւելի եղեր է որ իւր քովը հրաւիրեց զինքը. իր առջեւը կայնելու եւ յաւիտեան իր սէրը ու փառքը վայելելու համար, աւանդ մի էր ինքը՝ որ Երկնաւոր Հօրը կողմանէ Ձեզի յանձնուած էր, Տէրն իր աւանդն ուզեց եւ առաւ մենք ինչ իրաւունք ունիմք ցաւելու, չէ՞ մի որ այսպէս ընելովնիս իր Սուրբ կամացը հակառակած կըլլամք։

Բայց ցաւելու արժանի մէկ կէտ մը այս տեղ կերեւայ իբր թէ ինքը իր ծաղիկ հասակին մէջ աշխարհէս հրաժարեցաւ, սակայն այդ կէտն ալ Ձեզի նման առաքինի եւ խոհեմ անձի մը համար աւելի մխիթարութեան քան թէ յուսահատական տրտմութեան կէտ է, ըստ որում քաջ գիտէք թէ մենք աշխարհի մէջ ողորմելի պանդուխտներ եմք, որչափ հոս աւելի սպասեմք, այնքան աւելի թշուառութիւն քաշած կըլլամք, իսկ ընդ հակառակն որչափ շուտով բաժնուիմք ասկից՝ այն-

չափ ու քէչ ներողութիւն քաշելով՝ մեզի համար երկինքը պատրաստուած յաւիտենական փառքը ժառանգելու բարեբաղդութիւնը ունեցած կըլլանք ։

Ահա այսպէս Ձեր սիրական Որդին Աստուածային բարի տնօրինութեանը չթափանցելով այլ եւս ընդ երկար աշխարհի տառապանաց ծովին մէջ, ուր վիշտն ու ցաւը կը թագաւորեն, եւ ուր չկայ ուրախութեան բաժակ մը որուն մէջ մեր քիմքերը դառնացանող թոյն մը խառնուած չըլլայ, գնաց այն յաւիտենական աշխարհը՝ ուր ոգիսի ժողովինք ամենքս ալ տեսանց այլ եւս երբեմն բաժնուելու մէկզմէկու սէր վայելելու համար, ահա ասոնք յիշելով՝ ո բարեխնամ Տէր իմ եւ Հայր, կաղաչեմ որ Ձեր տրտմութիւնը չափաւորէք, գիտնալով որ այս է եղեր Երկնաւոր Տիրոջը սուրբ եւ օրհնեալ կամքը, որուն կաղօթեմք ամէն օր ըսելով « Եղիցին կամք Քո » ։

Մխիթարիչ Սուրբ Հոգւոյն երկնային խաղաղութիւնը Ձեր եւ Ձեր ընտանեաց սրտին մէջ մաղթելով,

Մնամ Ձերումդ հոգեւորդ սուրբ Հայրութեանդ միշտ խոնարհ եւ բարեացակամ բարեկամ Ձեր

ՓԻԼԻՊ. Թ. ԽԱՉՈՅԵԱՆ

17 Ապրիլ 1876, Սէօլէօզ.

Եղբայրս մահտեսի Մարտիրոս աղան եւս յատկապէս Սուրբ Աջդ կը համբուրէ։

(Թիւ 38)

## ՆԱՄԱԿ՝ Տ. Գէորգ Վարդապետի Գեր. Առաջնորդին Կուտինայու.

Գերապատիւ Եղբայր ի Քրիստոս,

Ցաւօք սրտի կարդացի լրագրաց մէջ Ձեր անդրանիկ որդւոյն մահուան գոյժը։

Ստուգիւ անմխիթար կորուստ մի է հանգուցելոյն տարաժամ մահը Ձեզ եւ Առաքինափայլ ընտանեացդ, եւ կսկիծ մեզ եւ համայն հոգեկցորդ Սիրելեացդ Ձերոց եւ բարեկամաց՝ եւ որոց միանգամ ի մօտոյ ճանաչէին ծաղկահասակ Հանգուցելոյն բարեմասնութիւնքն եւ իւր ծաղիկ հասակին մէջ ստացած մտաւորական գովելի ձիրքերը։

Գերապատիւ Եղբայր, մեր կարեկցութեան այս տողերը չնորոգեն Ձեր կսկիծն եւ արտասուք, եւ մի այսու ծանրանայցեմ ինչ Ձեզ, յիշեցնելով զի ոչ դարձցի արտասուօք որ անդարձն մեկնեցաւ, եւ թէ չունիմք ինչ առնել, այլ խոնարհիլ եւեթ համբերատար ոգւով առաջի կամաց եւ անքննելութեան Բարձրելոյն, յորմէ հայցելով վշտահար սրտիդ համբերութիւն եւ մխիթարութիւն,

Մնամ Աղօթակից Ձեզ միշտ
Առաջնորդ Կուտինայու

1876, Ապրիլ 18.
Կուտինա.

ԳԷՈՐԳ Ծ. Վ. ԴԵՐՁԱԿԵԱՆ

(ԹԻՒ 39)

ԵՂԵՐԵՐԳ՝ Կ. Արշակ Խ. Փափազեան ուսումնականն երիտասարդի՝ աշակերտակցի Հանգուցելոյս, եւ Տեսչի վարժարանին Անդրիանուպօլսոյ, որ յ7 Ապրիլի 1877, ձեռնադրեցաւ Քահանայ – Վարդապետ, եւ անուանեցաւ Արիստակէս.

---

# Ի ՄԱՀ

## ՅԱԿՈԲԻԿ ՄԿՐԵԱՆԻ

### ԹԱՌԱՄԵԼՈՑ Ի ՏԻՍ ԶՔՆԱՂ ՄԱՆԿՈՒԹԵԱՆ

Թեւեր եւս քեզ երկին ի թռիչ ընդ այեր,
Սաւառնել դէպ ի հովիտն այն կենսաբեր,
Ուր խինդ ծիծաղ՝ ուրախ երգեր նուագին,
Անդ մահացուին բնոյթքն յանմահ կը ձգտին.
Թռեար, այո, ո Յակոբիկ իմ ընկեր,
Ուր սէր սիրոյդ քեզ միշտ կարդար հրաւէր,
Թռեար անձամ այս աղէտից աշխարհէն,
Զուրկ զմեզ թողլով շրթանդ քաղցրիկ ժպիտէն.

Կայտառ դիմացդ ահ արեւ,
Այդ ինչ շուտով թառամեցաւ,
Քաղցրիկ աչացդ լոյս հրաձեւ
Է՞ր այսպէս շուտ մարեցաւ.

Անգութ մահուն ձիլ չէ փորձեր հարուածներ,
Առաջին չէ այս որ տեսնեմ ես աւեր,
Անյագ որկորն այն դաժան
Շատեր կուլ տայ ի դամբան.

## ( ԹԻՒ 41 )

## ՆԱՄԱԿ՝ *Մանուկ էֆէնտիի Ղարաճեան ի Հայկս.* (1)

---

*Գերապատիւ Ս. Հայր իմ,*

*Այն օրերէն ի վեր յորս եւ վերջին անգամ Ձերդ Գերապատուութենէ սիրալիր ընդունելութիւններ վայելելու պատիւն ունեցայ, անհամբեր սրտիւ կ'սպասէի Հայրենիք դառնալու եւ առթիւ մը իմ խորին երախտագիտութեանս հաւաստին նուիրելու, բայց Եւրոպա ըրած ճանապարհորդութիւնս չներեցին իսկ ասկէ առաջ իմ այս նուիրական պարտաւորութիւնը լեցնելու։*

*Արդ մինչդեռ կ'մտաբերէի գրիչ ի ձեռին առնուլ, ահա, ով կրկնակի դժբաղդութեանս, լրագիրները արագ գուժեցին ինձ Ձեր հոգեհատոր հայրագատին պարկեայց անողորմ մանգաղին զոհ երթալը. իմ հետ՝ շատեր իսկ, ջերմ հառաչանքներ արձակեցին դէպ ի այն՝ որ յ'Անմահութիւն սլացաւ։*

*Սակայն Հայրի՛կ, դուք երկնից պաշտօնեայ էք, սփոփեցէք։ Մի թողուք որ Ձեր որդեսէր սիրտն վշտաց տակ ընկճի, զի այդ սիրտ ծնած է արտասուքներ սրբելու՝ եւ ոչ արտասուելու։ Թող մենք լռիկ արտասուենք, իսկ Դուք. հաճեցէք ընդունիլ մեր որդիական անկեղծ եւ ջերմ յարգանքներն, որով՝ պատիւ կ'համարիմ ինձ ըլլալ Ձերդ Գեր. Հայրութեան՝*

*Ամենախոնարհ եւ Ամենահնազանդ.*

**ՄԱՆՈՒԿ Գ. ՂԱՐԱՃԵԱՆ**

**1876 Ապրիլ 22, Բերիայ.**

---

(1) *Մանուկ էֆէնտի՝ անդամ ընտրեցաւ յայսմ ամի Օսմանեան Երեսփոխանական ժողովոյն ի Բերիոյ, և եկեալ ի Կ. Պօլիս՝ պատիւ եղև Ազգիս իւրովք Ատենաբանութեամբք։*

(ԹԻՒ 49)

## ՆԱՄԱԿ՝ Տ. Սարգիս Վարդապետի Պատրիարքական Փոխանորդի ի Խարբերդ.

---

Գերապատիւ Տ. Հայր,

Մահն ըստ ինքեան դառն ու զկծեցուցիչ է ամէն հասակի մէջ. բայց հանճարեղ եւ առաքինազարդ երիտասարդ որդւոյ մի տարաժամ խամրիլը իւր աչքովը տեսնող հօր մի վիշտը, ո՛հ, արդարեւ անբացատրելի է։

Բնութիւնը շատ անգամ անգութ կերեւի իւր տնօրինութեանց մէջ՝ եւ եթէ մարդկային հունաւոր իմացականութեամբը անհունին գործերը հետախուզենք, գիտէք՝ թէ ինչ եզրակացութեան կը հանինք։

Իմ երկարժամանակեայ կրած տառապանքս մոռցուց Ազնիւ Յակոբի սգաւոր մահուան դառնաղէտ գոյժը։ Եթէ Ձեր վշտահար սիրտը մխիթարողներուն դուցէ վերջինը կը լինիմ՝ իսկ ընդ Ձեզ ցաւակցելու մէջ թերեւս առաջինն եմ։

Ս. Հայր, դերեզմանը իւր բոլոր ահարկութեամբն հանդերձ՝ ստորերկրեայ ճանապարհ մ'է, ուստի բարիներն յԵրկինս կը սլանան, Յակոբ սլացաւ գնաց Հոն։

Ա՛հ, եթէ Քրիստոնէական սրբազան կրօնին շնորհած հանդերձեալ կենաց քաղցր յոյսը չը լինէր՝ անշուշտ Ձեր սիրտը երբէք մխիթարութիւն չը պիտի կրնար գտնել։ Որչափ թշուառ են անոնք, որոց յոյսը գերեզմանին եզրին վերայ կը մարի։

Մի չափանցէք Ձեր սրտի մորմոքը, Ս. Հայր, վասնզի երբ Աստուած կը հրամայէ, մահկանացուաց խոնարհ հնազանդութիւն եւեթ կը մնայ։

*Իմ խորին ցաւակցութիւնս յայտնելով, երկնային մխիթարութիւն կը հայցեմ Ձեզ եւ Ձերայնոց ։*

*Մնամ Ձեր Սրբութեան վշտակից,*
*Փ. Ա. Խարբերդի*
**ՍԱՐԳԻՍ ՎԱՐԴԱՊԵՏ**

**1876. Ապրիլ 30.**
**ի Խարբերդ. ի Վանս Սարուրու.**

---

**(ԹԻՒ 43)**

*ՆԱՄԱԿ՝ Տէր Գէորգ Աւագ Քահանայի ի Զմիւռնիա.*

---

## ԳԵՐ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ Կ. ՊՈԼՍՈՅ

*Գեր. Ս. Եղբայր ի Քրիստոս,*

*Վշտալի ստորագրութիւն Նամակի Ձեր, որ յանցելումն եօթնեկի, վշտացոյց կարեվէր զսիրտ իմ եւ զոգի, եւ սթափեցոյց զծերութիւն իմ ի բազմահոգ զբաղանս Տեղապահական պաշտամանս, եւ անձին մեղադիր եղեալ առ անագանելոյ մխիթարական գրոյս առ արտասուաթոր Հայրդ որդեկորոյս՝ փութամ, թէպէտ ի մետասաներորդ ժամու՝ կատարել զիմ պարտիս։*

*ՅԱստուած, սիրեցեալդ եղբայր, յԱստուած եւ եթ կառուսցես անքթիթ զաչս քո, քանզի ի նմա եւ եթ գտցես զորդիդ քո զսիրելի ։*

*Ե՛ն են ծնողք յաստիս, որք զմիակն իւրեանց զաւակ տան զոհ ի փառս հողեղէն արքայի· այն*

ինչ Արքայն երկնաւոր հրաւիրէ զորդիս քո յիւր ի փառս, յիշեա, զի անթառամ է պսակն՝ զոր պսակէ զճակատն ուղղադրոշմ, անվախճան են փառքն, որովք երանաւէտ զնա առնէ յանկէտն երանութեան. զոր վաղ կամ անագան առեսցես զնա պերճ ի շնորհս պերճ ի փառս, եւ վայելեսցես զարդիւնս հայրական խնամոցդ, որով վաստակեցար եւ յարդարեցիր զնա լինել Տաճար Ամենասուրբ Երրորդութեան, եւ ըստ նախահօրն Նուիրեցեր զսիրելի աղիս քո առ Աստուած, զԱքէլդ սիրասուն ընդ մահակաւ Եղբայրասպանին, այն է անողորմ մահու, որ անանջրպետ եղբայր է մարմնոյ մարդկութեանս ։

Մաղթելով սիրելի Որդեկիդ զեղբայրակցութիւն Քրիստոսի, եւ Ձեզ զմխիթարանս Հոգւոյն Սրբոյ, կնքեմ զբանս ։

Գեր. Ս. Եղբայրութեանդ Միամ աղօթաւոր,
Առաջնորդական Տեղապահ
ԳԷՈՐԳ ԱՒԱԳ ՔԱՀ. ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ

1 Մայիս 1876,
յԱռաջնորդարան Հայոց, Իզմիր.

---

(ԹԻՒ 44)

## ՆԱՄԱԿ՝ Տէր Սիմոն Դաւիթեան Պարտիզակցի Քահանային յԱյտըն.

---

Գերապատիւ եւ Բարեխնամ Տ. Յովհաննէս Հայր,

Արդարեւ ցաւելով կսկսիմ իմ այս Նամակս վասն զի մինչդեռ մեր Նուաստութիւնը, Ձեր որպիսութիւնը

*հարցանելու անձկանօք կը պատրաստուէի մատուցանել Գերապատուութեանդ երախտագիտական սոյն գրաւոր հաւաստիս, ահա բոլոր Ազգային թերթերն գուժեցին մեզ սիրական որդւոյդ տխուր եւ ցաւալի լուրը. երբ անծանօթ մարդիկ, որոնք յօտար ազգականութենէդ ըլլալով իրենց սրտից մէջ այս մասին զգացած ցաւը նաեւս լրագրաց եւ ուրիշ մխիթարական գրոց եւ կամ ներկայութեամբ բարձրապատուութեանդ կը ներկայացնեն, ապա մեր նուաստութիւնը որչափ. եւս առաւել ցաւ կզգամք այս մասին, զի թող թէ ի միում ազգակցութեամբ խմորեալ եմք, այլ նաեւս Ձեր բարձր պաշտպանութեան տակն ապաստանած եմք, ըստ որում մեծամեծ շնորհացդ արժանացած եմք եւ այժմ եւս այն շնորհաց մէջ կ'ապրիմք, վասն որոյ մեր ընտանեաց տէրը եւ հայրն էք դուք եւ մեք Ձեր վշտաց մասնակցելով բոլոր աշխարհին սիրելի եղող հարազատիդ սուգը կը պահեմք, սակայն ինչ օգուտ է, ծվ որ ալ ըլլայ, յակամայից պիտի ընդունիմք մահուն այս անդառնալի հրաւէրը, չկայ հզօրագոյն թագաւոր մը իշխան մը կամ աշխարհակալ մը որ իր ոսկեայ բաժակին մէջէն մահուան դառն մրուրը չը քամէ. վասն որոյ կայ մնայ մեզ մաղթել որպէս զի շատ օրեր ողջ մնաք ի Տէր ի պարծանս Ազգին մերոյ, Տէրը մնացեալ սիրելիներդ պահեսցէ որոնք անշուշտ Ձեր փառքն եւ պարծանքն են, որոց գովելի ընթացքն այժմէն արձագանք տալ սկսած են բոլոր Հայ հասարակութեան մէջ։*

*Մնամ Գերապատուութեանդ խոնարհ ծառայ*

**ՍԻՄՈՆ ՔՀՆՅ. ԴԱՒԻԹԵԱՆ**

յԱյտըՆ, 1876, Մայիսի 7.

(ԹԻՒ 45)

## ԿՈՆԴԱԿ՝ Տ. Եսայեայ Ամենապատիւ Ս. Պատրիարքին Երուսաղեմի.

ՊՏՐՐՔ

ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ծառայ Տէր ԵՍԱՅԻ Արքեպիսկոպոս, եւ շնորհիւ Ամենասուրբ Հոգւոյն . . . Առաքելական Սուրբ Աթոռոյս Երուսաղեմի, վերատեսուչ Սուրբ եւ Տնօրինական տեղեացն Քրիստոսի, յորմէ հասցէ շնորհք եւ օրհնութիւն ի վերայ Արժանաշնորհ Տէր Յովհաննէս մաքրակրօն Քահանայի Մկրեան հոգեւոր որդւոյ մերոյ եւ հարազատ պաշտօնէի Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցւոյ եւ որոց ընդ Ձեզ կալ մնալ յանտրտում մխիթարութեան եւ անդորրաւէտ խաղաղութեան ամէն ։

Ընդ Քրիստոսաւանդ ողջունիս եւ Աստուածային օրհնութեան յայտ առնեմ զի ցաւօք սրտի եւ դառն վշտօք լուեալ զտարաժամ վախճան որդւոյ Ձերոյ սիրելագունի ի ծաղիկ հասակի, որ արդեօք համանման հօրն Ազգասէր եւ առաքինի ընթացիւք ի յապագայսն ունել ունէր լինել օգտակար Անդամ Ազգիս եւ պտուղ քաղցր ի պարտիզի Ս. Եկեղեցւոյ՝ ողբացաք ոչ սակաւ, թառամեցաւ վարդն անուշաբոյր ի կոկոնին, զոր արդարեւ արժան է ողբալ. այլ սակայն ոչ ապաքէն որ ետ նմին կենդանութիւն եւ փոխադրեաց անդրէն ի դրախտն երկնային՝ նոյն Տէր է. ուստի պարտ է Քրիստոնէական համբերութեամբ պատկառ կալ Ամենօրհնեալ կամաց Աստուածային բարերարութեան, որոյ տնօրէնութիւնք թէպէտ անհաս մերոց հունաւոր մտաց՝ այլ միշտ բարի են վասն մեր, մանաւանդ թէ, «Չէք դուք յԱշխարհէ

ատոր» եւ թէ «Ես յաղթեցի Աշխարհի» օրհնաբանեալ բերանն խօսեցաւ Աստուծոյ. վասն որոյ մահ դուռն է յաւիտենական կենաց եւ սկիզբն վայելման անանց բարեաց, «Զոր ակն ոչ ետես եւ ունկն ոչ լուաւ եւ ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց»։

Ոչ եւս այլ շատ խօսեցայց զի դուք ինքնին Աստուածուսոյցք էք՝ Քահանայ բարձրելոյ Աստուծոյ եւ մխիթարիչ սրտամեցելոց, այլ փութամք ի խնդրուածս առ բարձրեալն Աստուած զի հանեսցի լուսաւորել զհոգի Որդեկին Ձերոյ սիրելւոյ՝ դասաւորելով ընդ սիրելիս իւր, եւ մնացելոցն կեանս երկարս պարգեւեսցէ պահելով ընդ հովանեաւ Աստուածային խնամոցն ամէն։

Առաքելական աթոռոյս Ս. Երուսաղէմի
**ՊԱՏՐԻԱՐՔ ԵՍԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿ.**

1876 Մայիս 7.

---

**(ԹԻՒ 46)**

*ԱՅԼ ՆԱՄԱԿ՝ Ծերունի Քերթողին Հայոց Տեառն Գաբրիէլի Պատկանեան.*

---

ԵՐԿՆԱՌԱՔ ՄԽԻԹԱՐՈՒԹԵԱՆ ԱՐԺԱՆԱՒՈՐ ԳԵՐԱՍՏԻՃԱՆԵԱԼ

## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ

ԽԱՉԱԿԻՐ ԱՒԱԳ ՔԱՀԱՆԱՅ ԱՍՏՈՒԾՈՅ ԲԱՐՁՐԵԼՈՅ

ՕԾԵԱԼ ՏԵԱՌՆ ԱՄԵՆԱԿԱԼԻ

Նորոգեցան ամենայն վէրք սրտիս ընդ հասանել ի ձեռս իմ քաղցրաբուրեան ծաղկանց եւ անուշահոտ վարդից ի փունջ բոլորելոց աստուածաճիղ մատամբք

ամենասիրելի. Որդւոյն Ձեր եւ մեր եւ համակ Հայրենեաց, անմահութեան արժանաւոր Ցակոբիկի, որ ընդ սանդղաւղսն հաստեալ ի Բէթէլ ելեալ ի վեր ի բնակակցութիւն երկնաքաղաքացեաց, ըստ Եղիայի արկանէ, եւ էարկ իսկ յիս զմաշկեակն իւր զանսայթաք. ՆԱԽԱՇԱՒԻՂՆ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ, զոր. եւ որպէս անզօր յայլ ձեռնարկ՝ արարի ինձ պալատան կարեւէր խոցուածոյս սրտի եւ հոգւոյ, առ ի մեղմել զցաւ եւ զկսկիծ որ վասն անջատման ի Նմանէ առանց տեսութեան, եւ ի զովացուցանել զանձուկ կարօտոյս համբուրելով զիւրաքանչիւր բառ եւ տառ ծնեալ ի ծայրէ ազգապախտան գրչին՝ յորմէ որբացաւ Թշուառականն Հայաստան։ Ես սփոփիմ ընթերցմամբ Նորին, կրկնեմ, երեքկնեմ, եօթնպատկեմ, եւ բիւրիցս ունիմ շրջշրջել, թէ կեցից, զի ի տողս Նորին գտանեմ զլրութիւն փափաքանացս ստէպ փարիլ ընդ հող տապանի Նորին, եւ համբուրել զվարդս եւ զշուշանս՝ զորս երախտապարգեւ գարունս ո՛չ զլասցի առատաձեռնել Նմին։

Անչափ է իմ գոհութիւն Հայր պատուական, զի Դուք սպեղանի բժշկութեան վիրաց երիկամանց Ձերոց դնէք զյարութիւն բազմամեայ դիակնացեալ զառամելոյս, հակառակ բանից ինքեան իսկ Քրիստոսի, առնելով զհաց սիրոյ եւ գորովանաց ծնողական. սրտի ի վաղաթառամ Որդեկէ եւ արկանելով շան, թէ եւ տիրասիրի եւ երախտագիտի. մինթէ ես կարեմ բնաւ իւիք զերծանիլ ի պարուանդութեանց երախտապարտութեանս, մինթէ իմ արտասուաց ցօղ ունիցի՞ ույժ ծաղիկ մի փթթեցուցանել ի Դամբարան ամենասիրելւոյդ անհետացելոյ, մինթէ կմախացեալն կարէ՞ փոխանակել զմատաղաւուրց գառն՝ որ եզաւ հանգոյն Աբելի ի սեղան երկնից, եւ բուրումն անուշութեան ողջակիզին

*Քու եւ ի բարձունս, Նոր Հայր Աբրահամ, որ զորդիդ պատարագես փրկանակ ծերոյս անտրտունջ լռութեամբ հաւատոյն՝ թէ ո՛չ կորիցեն վարձք առաջի Այնորիկ՝ Որ միայն գիտէ վարձատրել։*

*Գորովագութ Հայրութեանդ երախտապարտ*
*ամենախոնարհ ծառայ*

**ԾԵՐՈՒՆԻ ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ**

**8 Մայիսի, 1876,**
**ի Սանկտ Պետերբուրգ.**

---

**(ԹԻՒ 47)**

*ՆԱՄԱԿ՝ Համբարձում Էֆէնտիի Իփէկճեան*
*ի Լօզանն (Զուիցերիոյ).*

---

## ԳԵՐԱՊԱՏԻՒ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

*Գերապատիւ Հայր, սգազգած բարեկամ,*

*Էեզուս անկարող է ոչ վշտակցութիւնս բացատրել, ոչ բաւական ազդու բառեր գտնել Ձեր անգարմանելի կորուստը արժանապէս ողբալու եւ ոչ Ձեր կսկիծը ամոքելու։ Դուք սիրելի Որդի մը կորուսիք, ես սիրելի Աշակերտ մը. Նմին յաւիտեան Ցակոբիկս եւ ալ չի պիտի տեսնեմ զինք. երանի անոնց որ կարողացան վերջին համբոյր տալ իրեն։ Հեռացաւ մենէ, բայց իր քաղցր յիշատակը պիտի ապրի մեր մէջ քանի որ կենդանի ենք ։*

*Ընդունեցէք կաղաչեմ Դուք եւ իր անմխիթար Մայրը խորին ցաւակցութեանս հաւաստիքը։*

9 Մայիս, 1876.
Լօզան.

*Ձերդ*
Հ. ԻՓԷՔՃԵԱՆ

(Թիւ 48)

*ՆԱՄԱԿ՝ Տ. Յովհաննէս Խաչկեան խաչակիր Աւագ Քահանայի Հայոց ի Կալկաթա Հնդկաց.*

ԱՐԺԱՆԱՑԱՐԳ

## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻ ՄԿՐԵԱՆ

ՍՈՒՐԲ ԵՂԲՕՐ՝ ՈՂՋՈՅՆ ՑԱՒԱԿՑԱԿԱՆ

Ի ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ Կ. ՊՕԼՍՈՅ

*Ի սոսկալի ներգործութեան ժամուս, չիմանամ մի՞ր ոճ ի կիր առնուլ, առ ի սթափել զՁեզ ի վաղահաս որկածիցդ՝ յոր քաջ գիտեմք աղէկիզեալ տոչորիք։ Այո՛, մարդկայինս ընկերութիւն ուսեալ ի կենցաղէ առ միշտս իրերաց՝ ունել համակրութիւն, եւ առնել ի սփոփանս, բայց տեսցուք թէ արտաքնով բաւականն եւ ներքնոյ թաղծութեան Հոգւոյ ամոքումն. երանի թէ իցէր տուեալ ի կարիս մահկանացուին։*

*Ցայսմ եռանդ Հոգւոյ, փութամք զցաւակցութիւնս առ մահ սիրեցելոյն ձերոյ որդւոյ՝ ի ձեզ նուիրել, որ թուաւ 1812 Մասիսի լրագրոյ՝ գուժեաց յականջս աշխարհի. ճշ թէ կարէաք եւ ընդ սմին Ձեզ բանալ եւ զզգածմունս ներքին հոգւոյ յաղէտս Ձեր. կամ*

*բնակել ի բուժումն խոցուածոյ ձերդ սրտի, խոց՝ որոյ միայն կրողն զգայ յիւրում հոգւոջ, խոց՝ որոյ փարատումն՝ միայն մահուն ապապարեալ, խոց՝ որ ընդ ինքեան կրէ հուր կիզողական, սլաք սուր՝ ազդու եւ թափանցական, եւ քան զքաղցկեղին՝ դաժ եւ դժնդակ։*

*Հապա զինչ, մինթէ բաւիմք զինիլ ընդ Նախախնամութեան Աստուծոյ՝ որ ամենայն ինչ ըստ կամացն յարաբերեալ ի մարդ, ո՛չ՝ եւ ո՛չ բնաւ. ապա ուրեմն հարկ թողլոյ զամենայն յիւր ամենաքաղցր տնօրէնութիւն եւ ասել միշտ՝ Եղիցին կամք քոյդ։ Ցորմէ եւ խնդրել զծաւալումն շնորհաց Հոգւոյն սրբոյ, ի կազդոյր եւ ի սփոփանս, զոր եւ այժմ մեք աղերսեմք Ձեզ ծնողացդ, ի դիւրութիւն անըմբերելի արկածիդ, եւ Ձեզէն իսկ մաղթեմք հաւատալ՝ զմորմաք սրտի մերոյ անորիշ ի ձերմէն ։*

*Բազում օրինակ մխիթարութեան ունիմք ի Սուրբ Գիրս, թէ բաժակն դառնութեան ի մարդ, ոչ առանց մատին Աստուծոյ, որ ի փորձել եւ ի հարուածել զսիրելին իւր՝ չառնէ անտես եւ զողորմութենէն իւրմէ, փոխանակ միոյն՝ հատուցանէ զբազումս, հաւատով յուսով եւ սիրով տանողին զամենայն. յարուցանէ զՍէթ (որդի մխիթարութեան) փոխանակ Աբէլի, զՍողոմոն՝ փոխանակ մահացելոյն որդւոյ Դաւթի, որ յախտանալ որդւոյն զգածեալ տրտմութեամբ յոյժ, եւ որոյ ի մեռանելն՝ սթափեալ յամենայնէ ասէր, «Մինչ կենդանի էր մանուկն՝ ցաւօք աղաչեցի զԱստուած, թերեւս ողորմեցեալ թողոյր ինձ մնալ, բայց երբ մեռաւ՝ մինթէ կարիցեմ սգով յետս ի կեանս դարձուցանել զնա, ես առ նա երթալոց եմ. եւ նա առ իս ոչ դարձցի»։* (Բ. Թագ. ԺԲ. 22—23)։

*Ո՛ւր թողցուք ապա եւ զոր հրաշագործեալ ի գա-*

զանթին համբերութեան Յոբ, ուր ասէ. «Եւ Տէր կրկին քան զոր ինչ էրն Յոբայ ի յաճախութիւն». (Գլ. ԽԲ. 10) որպէս առաջին դուք գիտակ իսկ էք զամենայնէ ։

Ցետ մահուն մաւա գործելոյ յաշխարհ. եղաւ դամ-ճանակ մի յիւրաքանչիւր գերդաստանի, առ վճար անյեղլի պարտուց, ուր եւ վիճակ ձեր՝ ոչ ազատ ի սակարկութեանց անտի, բայց տարբերութիւն ի ամէն այս տեսանի, զի մին՝ յաւերժորդաց ինչ արկանէ ի դամ-ճանակն, եւ մին դոյիւ չափ զկետանս իւր՝ ըստ Այր-ւոյն Լոմայի. արդ Ձեզ թուի վիճակ վերջնոյն ձերով անդրանկաւ, զոր կարէր լինել Ձեզ՝ ամենայնի կեանս Ձեր. բայց եւ այսու ամենայնիւ չպիտի Ձեզ վհատիլ կամ տրտնջալ, այլ կիսաբերան փառս Աստուծոյ մա-տուցանել կամացն, եւ բարեմաղթել միշտ այլ զաւա-կաց Ձերոց երկարութիւն կենաց, եւ պարարումն առա-քինական երկամբք, եւ փոխարինութիւն աղաւնւոյ զաւակաց՝ զոր Տէր ունի Ձեզ պարգեւել, եւ մեք զնոյն ի Տեառնէ՝ Ձեզ տալ աղերսեմք ։

Ի հոգեւոր մատակարարութենէ աստի՝ դառնամք յաշխարհայինս. (եթէ ձեր հաճոյական լսելն) կայ արդ-եօք ի վիճակ հողեղինին՝ կայուն մնայուն ինչ. — պա-տասխանէ զգօնութիւնն՝ ոչ, եւ ոչ ինչ. թող եւ զոր բո-լորն տայ ունայնութեան ունայնութեանց. թարմատար յուսով՝ խաբի մարդ, թէ մարմնաւոր յիշատակն որ ի կենցաղի՝ մնայ մխիթար մեռելոյն անցաւորի, որ եթէ ուղիղ՝ չլինէր մոռանալ անուանց նախնեաց մերոց, հարց եւ նախահարց ։ Այո, մեօք թերեւս յիշին ան-ուանք Հօր եւ Հաւու, բայց մերովք սերնդօք՝ մոռաց-եալ լինին եւ նոքա, որպէս ապառեօք գոլոցողօք՝ անուանք նոցին մերոցն. ուրեմն զինչ յոյս, զինչ սփոփանս սրտի՝ եթէ փոքու շրջանիւ խամրանան ամե-

նոյն չափ լուսոյ եւ ակնկալութեան, եւ տիրէ ի վերայ տեսութեան իմաստնոյն. «Ունայնութիւնք ունայնութեանց» ։

Հայեցեալ եւ ի միւս կողմ տառապելութեան մարդկայնոյս սեռի, մանաւանդ եւ յերաշխէպս չարաչար կենցաղոյս՝ չտեսանի ինչ նազելի եւ ըղձական յաւժամենկեայ հանճոյ՝ որքան վիշտ ցաւոց հեծութեան յամենայն ուրեք, թերեւս Ձեզ ոչ պատահեալ՝ այլ մեօք ի մեզ բազում անգամ կարդալն աւաղանաց. երանի թէ կամ չէաք եկեալ յաշխարհ, կամ մեռեալ էաք յարդար վիճակի մանկութեան, թարց արժանանալոյ բաժակին դառնութեան զոր մեզ արբոյց եւ արբուցանէ աշխարհ, վիշտ հոգւոյ, աղէտ անձին, տառապանք կենաց, թախիծ սրբելեաց, եւ կսկիծ անհնարեաց ի զգալիս բնութեանս, առ որ եւ սովիմբք ամենեքումբք՝ յաւէտ պարտիմք նախընթաց մեռելոց, քան զկենդանիս՝ երանորել, յատկապէս նոցա՝ որք անմեղութեամբ լրքեալ զկենցաղս՝ եւ ելին առ Աստուած յերկինս, ուր եւ իբրեւ զարմաւենիս ծաղկեալ՝ վայելեն զփառս անվախճան. չասեմք զայս որպէս թէ ծնողք կամ մերձաւորք մեռելոց պարտին մոռանալ զանմոռանալի մահ սիրեցելոցն, այլ թէ անվայելուչ մանաւանդ առն Քրիստոնէի անդր քան զչափ, սուգ, կոծ, հառաչանք, եւ տրտմութիւնք, յորժամ անօգուտ ամենայն, եւ հետեւապէս վնասակար կենաց, որչափ մեք այժմ ենթակայեալ՝ կրեմք զանձամբ ։

Եթէ ընթերցեալ էք զհնոյ պատմութեան Հռովմայեցւոց՝ գիտէք անշուշտ, իսկ եթէ ոչ՝ ընթերցջիք զգիրս Մարկոսի Աւրէլիոսի. (Գլ. ԼԲ. Երես. 155) ուր տեսանելոց էք զբողոք առն պատգամաւորին Հրէաստանի յատենին Հռովմայ, ընդդէմ անողորմ խստութեան

Հռոմայեցւոց անդ․ Ի խստութենէ բարբարոսու-Թեան ձերոյ (աստ) ուխտեալ եմք չմերձենալ իւիքն, եւ չյարուցանել զաւակ, զի մի կրիցեն եւ նոքա՝ զոր մեքս կրեցաք եւ կրեմք յերեսաց անագորոյն խժդժու-Թեանց ձերոց եւն։ Ընդ օրինակէս ընդ այսմիկ՝ լինի խոկալ, Թէ զոր մեքս կրեցաք եւ կրեմք յան-բարեխոստ կենցաղէ, մանաւանդ եւ պաշտօնէ հոգե-ւորականուԹեան յերեսաց ոմանց մեզ վիճակաւորեցե-լոց սեւազգեստից, բարւոք մեզ չունել զաւակ, եւ տա-րաբաղդապէս չենԹակայել պաշտամամբք եւ կենօք ալէկոծեալ եկեղեցականուԹեանս, առաւել քան զա-սացեալսդ՝ դուք գիտասջիք ։

Նպատակ ցայս վայր գրելոցս հոգւոյ ոգնուԹեամբ՝ մի՛ այլ ինչ իմացուք քան զաղաչանս ի ձեզ, չտալ զան-ձինս ձեր յանձնարին սգոյ դառնուԹեան, այլ Քրիս-տոնէավայել բարեպաշտուԹեամբ սփոփել ձեզ, մա-նաւանդ եւ Տիրուհին ձեր, (որոյ կենդանուԹիւնն՝ կեանք է ձեր, եւ Տէր մի արասցէ պակասիլն՝ մահ իսկ հոգւոյ ձերում եւ մարմնոյ) զի առն արհւոյ՝ չէ պար-ծանք ի յաջողուԹեան եւ ի բարեբաստուԹեան չար-քենալն, այլ ի վիշտս աղէտից ձախորդուԹեանց՝ չշփո-Թիլ, չդառնանալ, եւ չկորուսանել զինքն. հաւատասջիք իրաւասուԹեանս, չարիք որ ընդ գլխով մերով խա-ղացեալ յամենայնի կեանս մեր՝ լերինք անգամ ոչ բա-ւէին տանել, այլ շնորհիւ Տեառն տարեալ մեր ցայս վայր, եւ տանիմք տակաւին անյողդողդ․

Ցառաւել ի գիտուԹիւն Ձեր հաճիմք Ձեզ մատնա-բանել՝ եւ զոր անցք ընդ մեօք. ի մեռանել երկուց զա-ւակաց մերոց առ կենդանուԹեամբ մօր նոցա, չեղեալ մեզ այնքան զգալի՝ որչափ երրորդս վերջինովս՝ որով եւ զմայրն զրաւեալ ի կենաց. որչափ. ի սա բովան-

դակեալ յոյս մեր եւ ակնկալութիւն, այնքան եւ տարաժամ զրկեալ եւ ի սմանէ, որոյ զմահուն համբաւ զմեզ ի պանդուխտ վայրի աստ՝ գոգջիք կենդանւոյն մեռոյց. զամ մի ողջոյն թէպէտ առ ամօթոյ որպէս մարդ ի պաշտօնի Քահանայութեան ընդ ժողովուրդն անայլայլ մնացեալ, զի մի այլ ընդ այլովք դատել զմեզ մարթանային, սակայն ընդ գիշերայն որպէս խօլական ոք՝ չկարէաք զսպել զարտասուս յաչաց, եւ այսպէս եթէ դուն ինչ երկարէր զկիրս զրահավառեալ՝ շատ լինէր մեզ խապառ բանդագուշել. աղաչանք մեր առ Աստուած լինէր միշտ զշնորհն ողորմութեան իւրոյ, զի որպէս տառապեցոյց՝ այնպէս եւ ողորմեսցի, տալով մեզ զշնորհն ժուժկալութեան։

Ի սմին միջոցի դիպաւ մեզ յեղակարծուց զգալ ինչ՝ զոր անբնական ի բանականն, այս է՝ մին ի ժողովրդոց մերոց աստի իբրեւ 80 ամեայ հասակաւ, երբեմն ճոխ հարուստ եւ ականաւոր վաճառական, եւ ի վախճանի ոչ միայն կորուսեալ զինչս իւր եւ գոյս, եւ մատնեալ ի յետին չքաւորութեան, այլ եւ կորուսեալ զլոյս աչացն. լինելով եւ սորա որդի մի ըստ չափու հարուստ եւ ձեռնահաս, նաեւ պարտական հօրն գումար իմն մեծի դրամոյ՝ զոր ընդ ժամանակս ժամանակս յաւուրս նեղութեան իւրոյ ընկալեալ էր ի հօրէն, ոչ զփոխն առ հայր իւր վճարէր, եւ ոչ որդիական պարտիւք զնա դարմանէր յիւրում տան. եւ սա տառապեալ ծերունի աստ եւ անդ մոյր շրջիկ լինէր, եւ որդին անպատկառ ոչ ի խղճէն, եւ ոչ ի նախատանաց այլոց զարհուրէր։

Ի միում աւուր ընդ միջօրէին եկեալ սորա յեկեղեցին խնդրէր ի մէնջ զբանալին եկեղեցւոյ, եւ խնդրեալ զներկայութիւն մեր. չիմանալով մեր զմիտս նորին՝ տուաք զբանալին ի բանալ զդուռն եկեղեցւոյ, եւ փու-

*թացաք գնալ յեկեղեցին ի լսել ի նմանէ՝ եթէ ունէր ինչ ասելոյ զբանս. Ով զարհուրանացս՝ գտանեմք զնա ի գուճսն բազկատարած ի դասէ յանդիման Տաճարին Աստուծոյ յողբս եւ յաղաղակս. «Տէր Աստուած, բարձ զորդին իմ ի կենաց, որ ծնայ եւ սնուցի. ամուսնացուցեալ տնաւորեցի. քանիցս ի պարտուց ազատեցի, զգոյս հաւատով յուսով եւ սիրով ի նա հաւատացի, որ ի ծերութեանս աւուր ինձ պաշտպանիցէր, եւ ի չքաւորութեանս ինձ բեկանիցէր հաց, այսօր զներհակն ամենից տեսանեմ, զփչրանս սեղանոյն անգամ յինէն խնայէ. դու Աստուած արդար դատաւոր, բարձ զդա ի միջոյ, եւ գրեա զանուն իմ ընդ անյիշատակս մեռելոց»: Զարհուրեալ սոսափեալ հազար եւ մին համոզանօք ի բաց տարեալ յեկեղեցւոյն, հուսկ կոչեալ եւ զորդին յորդորեցաք ի խնամատարութիւն հօրն. բիւր առասպելս հայհոյանաց առ հայրն մեզ լսեցոյց, եւ անդրէն դարձեալ թուք նախատանաց յերեսս հօրն մատոյց, ուստի եւ յայնմ օրէ ցամաքեալ՝ զարտասուս յաչաց մերոց, եւ քարացեալ զսիրտ մեր տուաք եւ տամք փառս Աստուծոյ, թէ ով գիտէ եւ մեր նման նմա եղեալ տառապէաք ի հոգի եւ ի մարմին. արարաք շրջաբերական ի ժողովուրդս, եւ բաւականին դրամ հաւաքեցաք նմա յապրուստ. բայց դուք ինձ եւ զզարմանալիս տեսէք, զի նոյն ապերախտ որդի, նոյնութեամբ երկու աչօք կուրացեալ, եւ յորդւոց իւրոց իսկ դրեա թէ կոչկահար եւ յուսահատ մեռաւ, ահա՝ արդար վրէժխնդրութիւն Աստուծոյ:*

*Վերջաւորելով զգիրս, մնամ անկեղծ հոգւով եւ սիրով, Ձեզ ցաւակից բարեկամ անորիչ.*

Ի Կալկաթա,
14/26 Մայիսի, 1876.

**ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԱՉԿԵԱՆ**
*Խաչակիր Աւագ Քահանայ Հայոց*

(ԹԻՒ 49)

*ՅՕԴՈՒԱԾ՝ Պարոն Մինաս Չերազ(1) ուսումնական երիտասարդին ի Մանզումէ թիւ 3164.*

## ԳՐԻՉ ԵՒ ՍՈՒՐ

12 ՅՈՒՆԻՍ 1876

Դեռ սուգի մէջ է հոգիս, զի դեռ ոչինչ կրցաւ մոռցունել ինձ այն ծաղկահասակ էակը՝ զոր մահը կորզեց Հայ աշխարհէն ։

Վեց ամիսէ յառաջ, Յակոբ Պալեանի կորուստը կ'ողբայի․ այժմ, Յակոբ Մկրեանի կորուստը կ'ողբամ ։

Ծանօթ էր ինձ այս երիտասարդը ։ Շահնազարեան վարժարանի մէջ աշակերտած էր ինձ․ բացած էի սիրտս նորա առջեւ, զի մի ճշմարիտ դաստիարակ իւր սիրտէն կը դասախօսէ քան իւր դասագիրքէն, եւ զգացած էի թէ Մկրեանի հոգին վեհ լարեր կը կրէր ։ Մի օր, — երկու տարիներ անցան այդ օրէն ի վեր, — մի ազգային թերթի մէջ գրեցի թէ «կորովի եւ հանճարեղ» գրիչ ունէր այս պատանի գրագէտը․ ոսոխներս «ծայրայեղ» գտան այդ բառերը, եւ մտածեցին թէ գովեստ կը կարդայի նմա ոչ զի արժանաւոր էր, այլ զի ներբողած էր զիս «Մասիսի»ի մէջ, «Գրական փորձերս» պաշտպանելով մի իմաստակ եպիսկոպոսի դէմ. սակայն, Մկրեանի մահէն յետոյ, դոքա իսկ ողբացին զայն մեծագոյն գովեստներով, արձակ եւ ոտանաւոր ։

Այսպէս է աշխարհ ։

---

(1) Հեղինակ Գրական Փորձեր և Ազգային Դաստիարակութեան ընտիր մատենից, յորմէ յուսայ Ազգն և զայլ իմաստնախոհ հեղինակութիւնս ։

Յակոբ Մկրեան, որդի մի յեղափոխական Երէցի որ 1860ի անմահ սերունդին կը վերաբերի, չքնաղ զգացումներով օժտուած էր։ Խորշում չ'ունէր իւր ճակատը, եւ ոչ ծալ իւր սիրտը։ Իւր ձայնը ճշմարտութիւն կը նշանակէր, իւր նայուածքը անկեղծութիւն կը թարգմանուէր։ Իւր կերպարանը ունէր այն խորհրդաւոր ցոլացումը որ վաղամեռիկ էակների յատուկ է, զի հոգին մարդկային դէմքին վրայ կը պարզէ իւր վերջալոյսը, որպէս արեւ որ բարձրագոյն կատարին կը պահէ իւր յետին ճաճանչները։ Թեթեւ էր իւր քայլը, իբր թէ չ'ուզէր յարիլ այն աշխարհին՝ զոր շատ կանուխ պիտի լքէր․ նա կը նմանէր անցաւոր թռչնիկին որ մի վայրկեան դադար կ'առնու ոստին վրայ, եւ ահա կը թռչի։

Այս հրեշտակը, իւր հրապարակային կեանքին մէջ, թշնամիներ ունեցաւ։ Աստուած թողութիւն տայ այն անխիղճ մարդերին որք աշխարհը գեհենի կը փոխեն արդարին համար . . . ։

Եւ սակայն կը սիրէր նա իւր ազգը։ Հայրենիքի վէրքերը իւր սրտին մէջ կ'արիւնէին։ Երբ հողը ծածկեց նորա գեղեցիկ հասակը, սիրակաթ Մայրը մի զաւակ թաղած էր եւ Հայաստան մի պաշտպան ։

Ա՛հ, այսպիսի տապանների առջեւ, ոչ այնքան ողբալի կը թուի մեռնելը, զի մահը մի փրկութիւն է, որքան այն հէգ ժողովուրդը որ մի փրկիչ կը կորցունէ։ Այսպիսի սուգեր առանձնական շրջանակէն դուրս կ'ելնեն, եւ հանրային կեանքին վրայ կը ծանրանան ։

Եւ երբ հնչէ մեզ համար աւետաբեր ժամը, պիտի փնտռեմք Պէշիքթաշլեանը որպէս զի մեր հոգիները ներդաշնակէ, պիտի փնտռեմք Դուրեանը որպէս զի մեր սրտերը թրթռացունէ, պիտի փնտռեմք Սրվաճեանը որպէս զի Վասակների դիմակը բզկտէ, պիտի փընտ-

ռեմք Պալեանը որպէս չի խրախոյս բառնայ մեզ եւ Մկրեանը որպէս զի Նախաշաւիղ հորդէ մեր առջեւ. ինչ պիտի գտնեմք, ո՛ Տէր ։

— Մկրեան կեանքի գարունին մէջ խամրած, Պալեան օտար հողի վրայ փռուած, Սրվանձեանի հեգնող շուրթը սառած, Դուրեան արձանացած իւր տապանին վրայ, եւ Պէշիքթաշլեան փշրուած իւր աստուածային քնարին տակ ։

Այո, պէտք է լալ կենդանին եւ ոչ մեռեալը, զի մահը մի «Երկնային ազատարար» է, որպէս կը վկայէ Լամառդին ։

Ի՞նչ կ'արժէ կեանքը եւ ինչ հրապոյր ունի աշխարհ մի վսեմ հոգիի համար ։

Աշխարհ մի վայր է ուր մարդ երջանկութիւն կերազէ եւ գերեզման կը գտնէ, եւ կեանքը մի արշաւ է հեւ ի հեւ ։ Կրօնաւորը հաւատ չունի, դատաւորը խիղճ չ'ունի, կինը սիրտ չ'ունի, եւ ոչ երիտասարդը աւիւն ։

Ամեն բան կը խաբէ զմեզ եւ ամեն բան կը տանջէ ։ Մեր մարմինը մի թակարդ է մեզ համար, եւ մեր սիրտը մի ընտանի թշնամի ։ Առաջինը կը ջանայ զգետնել զմեզ ամեն վայրկեան, երկրորդը մեր օրերը կը դառնացունէ իւր անսանձ ձկտումներովը եւ իր անեզր եւ անկարելի տենչերովը ։

Այն աչքն է գեղեցկագոյն որ աւելի տխուր կը նայի, եւ այն ձայնն է քաղցրագոյն որ աւելի տխուր կը հնչէ ։

Եւ երբ զգայուն արարածներէն իջնեմք անզգայներին, մի՞չ ապաքէն թախիծ պիտի նշմարեմք եւ նոցա վրայ ։ Բնութիւնը սուգ կ'առնու ամեն օր. երկին կը հեծէ իւր հովերովը, երկիր կը հեծէ իւր անտառներովը. առուակը կ'արտասուէ կողկողաձայն, եւ ովկիանը իւր ցաւերը կ'ողնայ ամայի ծովեզրին վրայ ։

*Այս ընդհանուր աղէտին առջեւ, արդար չէ կրկնել մի վշտակոծ հոգիի սա հառաչը. «Զմէ այս կեանք, զմէ աշխարհ, զմէ է սէր ։»*

*Եւ երբ, իբր մարդ տառապիլէ յետոյ, իբր Հայ ալ կը տառապիմ. երբ կը տեսնեմ թէ ազատութիւնը իւր ջահը կը վառէ յետին գիւղին համար, եւ մեք միայն կը դեգերիմք խաւարի մէջ. երբ կը տեսնեմ թէ յետին ժողովուրդը կը վսեմանայ, եւ մեք միայն կը մնամք ստրուկ. կը նուաղի հոգիս, եւ կը հեծեմ ցաւագին, «Երանի քեզ, ո՛ Մկրեան ։»*

**ՄԻՆԱՍ ՉԵՐԱԶ**

---

**(ԹԻՒ 50)**

**ՆԱՄԱԿ՝ Օհան էֆէնտիի Պաղտատլեան ([1]), Քարտուղարի Օսմանեան դեսպանատան ի Վիեննա.**

*Գերապատիւ եւ սիրելի բարեկամ,*

*Մեծ էիր դու միշտ բարեկամացդ համար՝ քու վեհ զգացումներովդ ։*

*Մեծ եւ մէկ հատիկ ես այսօր քահանայից մէջ. այլ մեծագոյն եւս ես քու հայրենանուէր այն սրտովդ՝ որ զքեզ իրաւամբ սիրելի եւ պաշտելի ընէ ամեն քու բարեկամացդ ։*

*Երկոցունցս ծանօթ բարեկամք ըսած են անշուշտ Քեզ՝ թէ որքան ցաւ զգացի վերջին անգամ Պօլիս*

---

([1]) Այս ազնիւ և ազգասէր երիտասարդ՝ ի միջոցի տպագրութեան գործոյս, եղև Քարտուղար Օսմ. Դեսպանատան ի Պերլին։

դալուս Քու սիրուն ընկերակցութիւնդ վայելել չըկարենալուս համար։ Եւ մինչդեռ ես ինքս՝ կծու յանդիմանութեամբք յանդիմանելով զիս՝ ներումդ խնդրել պատրաստուէի, սիրուն եւ ազնուազգաց գրութիւնդ հասաւ ինձ եւ շնորհակալութեան պատասխան գրելու հաճելի պարտը միայն թողուց ինձ։

Քանի շաբաթք անցան յորմէ յետէ ներկայ թերթը սկսած եմ եւ այսպէս կիսկատար թողած։ եւ ով կարող էր խորհիլ թէ այսքան տխուր վերջ մի տալ պիտի պարտաւորիմ սորա։ Այն տեսակ կսկիծք կան՝ որոնք մխիթարութեան ունակ չեն եւ ոչ ալ մոռացութեան ենթակայ։ Զուզեցի ուրեմն վաղագոյն գրել, նախ՝ առաջին ցաւալի տպաւորութեան ներքեւ՝ վշտերդ յաւելցնելու երկիւղիւ, եւ ապա քաջ գիտնալով թէ չըպիտի վերանորոգեմ զնոսա, յապաղելովս, քանզի հինցած չեն եւ չեն հիննար վիշտերը։

Եւ միթէ կարելի՞ է չըլալ այնպիսի զաւակ մի որն որ իւր ամենէն մատաղ ու ծաղիկ հասակէն իսկ՝ սկսած էր պատիւ լինել Ազգին ու Ընտանեացը։ Որչափ խնամք տարած էիր իւր բարւոք դաստիարակութեան եւ որքան յոյսեր ունէիր նորա առաքինութեանցը եւ բարի զգացմանցը վերայ, զորս միշտ իրեն ներշնչէիր. գիտեմ, սիրելի բարեկամ, թէ այն սկզբունքն իսկ՝ զորս իրեն ուսուցած էիք եւ որոնք գոհունակութիւն մեծ պատճառէին Քեզ, սոքա իսկ պիտի կրկնապատկեն ցաւդ։

Անհնար է մխիթարել զՔեզ։ Բոլոր քու իմաստութիւնդ ու խելքդ անկարող են արդարեւ մեղմացընել վշտերդ։ Քու միակ մխիթարութիւնդ Երկինն է, ուր համբարձաւ նա եւ ուր պիտի երթանք ամենեքին միանալ։ Նորա եւ քու մէջ շղարշ մի կայ միայն եւ այն պէտք է վաղ կամ անագան պատռել, զմեզ

տառաչնորդելու համար ի ճշմարիտն մեր Հայրենիս, ի տունն Հօր մերոյ։

Լամընէ ըսէ թէ հոն մտնելու համար անց մի կայ՝ յորմէ երկուք կամ աւելիք տընթեր չեն կարող անցնիլ եւ ուր վայրկեան մի դադրինք գիրար տեսնելէ . . . ահաւասիկ մահն տռաքինեաց։ Նոցա կեանքը այնքան մեծագին է ազգին համար՝ որ նոցա մահն ալ կորուստ մ'է հանրութեան եւ այն ընդհանուր ցաւը կարող է մխիթարութիւն իմն հայթայթել մասնաւորին։

Իսկ Քեզ, Քահանայ Աստուծոյ, Քեզ՝ հովիւ Ազգին, Քեզ համար ներեալ իսկ չեն չափազանց վշտաբեկութիւնք։ Քու անձդ, քու կեանքդ չը պատկանիր քեզ, այլ Ընտանեացդ, Եկեղեցւոյդ ու Ազգիդ։ Մեղմացուր ուրեմն ցաւերդ, կուլ տուր արտասուքդ եւ սփոփէ, խեղճ բարեկամ, որ այնքան պէտք ունիս սփոփման։ Սփոփէ սիրելի եւ վշտալի ընտանիքդ, պահպանէ անձդ, խնամէ առողջութիւնդ՝ քանզի նուիրուած ես Դու ընտանեացդ ու ազգիդ՝ որ քեզ հաւասար ողբայ կորուստն այն նորածիլ բողբոջիդ՝ որ Հօրն ու Հայրենեաց պարծանք լինել խոստանար։

Ներէ ինձ, բարեկամ վշտահար, այսքան ուշ գրելուս եւ մի պատճեր գիս այս յապաղման համար Մովսիսական օրինօք։

Մի մոռնար խնդրեմ ներկայացընել քու ազնիւ Տիկնոջ, իմ ցաւակցութիւնս ու յարգանքս եւ ընդունիլ անկեղծ բարեկամութեանս հաւաստին՝

Որով մնամ անձնուէր Քեզ

Վիէննա,

15 Յունիս, 1876.

ՕՀԱՆ

(ԹԻՒ 51)

## ՆԱՄԱԿ՝ Պարոն Մատթէոսի Տէր Կոստանդեան Օրբելեանց. (1)

ԳԵՐԱՊԱՏԻՒ ԵՒ ԲԱՐԵԿՐՕՆ ՀԱՅՐ

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴ ՀԱՅՈՑ Կ. ՊՕԼՍՈՅ

*Սգալից Հայր,*

* Իբրեւ եհաս երկու Նամակ գրեալ, մինն Նախկին Պատրիարքին Հայոց Կ. Պօլսոյ եւ մինն Օտեան Էֆէնտիի եւ հրատարակեալ «Արշալոյս Արարատեան» լրաթերթի միջոցաւ մի սարսափելի տխուր . . . եւ կսկծալի լուր, ի սրտէ սիրեցեալ եղբօր մերոյ եւ Որդի Ձեր Ցակովբայ զրաւիլն ի կենցաղոյս յայսմանէ, կարի յոյժ տըրտմեցայ, տխրեցայ եւ միանգամայն ինքս ինձի կորուսցայ, բայց աւաղ . . . ոչինչ չի կարողացայ առնել, այլ զինչ արասցուք, ո՜հ անիրաւ մահ, ծրղէս Թողուց զիս կարօտ սիրելի եղբօրէ մերմէ, միթէ վասն Նորա էր միայն պատրաստեալ մահ՝ եթէ ամենայն կենդանեաց։*

*Իսկ մեք ողբալով ձայնակցեսցուք ընդ երանելւոյն Յոբայ թէ՝ Կամք Տեառն օրհնեալ եղիցի զի դու տաս եւ դու առնես. եւ ի վերայ այսր ամենայնի աղաչեսցուք զԱրարիչն մեր զի զհոգի Նորին արժանիս արասցէ*

(1) Սոյն Պ. Մատթէոս Ազնիւ Երիտասարդն ի Գարապաղ նահանգէ Հայոց Ռուսիոյ, յամին 1875 եկեալ ի Հնդկաստանէ և բերեալ մեզ Թուղթ ի Գեր. Տ. Յովհ. Խաչկեան Աւագ Քահանայէ՝ ծանօթացաւ մեզ:

երկնից արքայութեան եւ ընդ սրբոց դասս դասեսցէ, եւ փոխանակ դառնակսկիծ տրտմութեան Ձերոյ՝ տացէ Տէր Ինքնին զուարթարար ուրախութիւն ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ Ամէն ։

Տրտմալից որդի Ձեր

**ՄԱՏԹԷՈՍ ՏԷՐ ԿՈՍՏԱՆԴԵԱՆ ՕՐԲԷԼԵԱՆՑ**

*Հայկական աշխարհէն*

10 Յուլիս, 1876.
Ի Քաղաքն Տէմիր խանն.
Տուրայ.

---

**(ԹԻՒ 52)**

***ԹՈՒՂԹ ԸՆԾԱՅԱԿԱՆ, եւ ԵՂԵՐԵՐԳ Գ. Խաչատուր Միսաքեանն բանաստեղծ վարժապետին.*** (1)

---

## ԱՌ

## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱԻԱԳ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆՑ

### ԹՈՒՂԹ ԸՆԾԱՅԱԿԱՆ

*Մինչ մանուկ քո՛նդ քոյդ թեւով*
*Ձքուն արդարոյ նընջելով՝*
*Հաստրակաց իսկամօր*
*Տարաւ 'ի ծոց բեղնաւոր՝*
*'Ի խաղաղիկն անդ 'ի քուն*
*Փոխել յէակ գերաբուն,*

(1) Զայս Ընծայական, ի 25 Յուլիսի 1876, ընդ Եղբերգութեանց իւր և աշակերտացն հանդիսաւոր իմն եղանակաւ մատուցանէր բազմահմուտ Պուէտն ի Վարժարանին, յորում աւուր հրաւիրեալ էի կատարել զնորհուրդ Ս. Պատարագի յեկեղեցւոյ Ս. Խաչի յԻւսկիւտար ։

Եւ յարգանդէ մօրն արհի
Ծնանել 'ի կերպ հրեշտակի,
Զը փորձեցայ 'ի չուն իւր
Գալ արտասուացդ առնել դիւր,
Գիտելով զհօր բաժանման
Ցորդւոյ 'ի վեր զցաւ քան զբան։
Զի վիշտ՝ որում միայնակ
ՀՈԳԻՈՑՆ է գոլ օժանդակ՝
Ժամանակին դիւթական
Ամոքելով ազդմամբ զայն,
Գոյ 'ի սկզբան՝ ճարտարակ
Բանից մարդկան անազդակ,
Եւ թախանձել զայն յողոք.
Է զհուր ածել 'ի բորբոք։
Այլ զի զըրտիդ կըծուակիծ
Հեղձուցեալ քո ըզ կըսկիծ՝
Բարեաւ եկիր 'ի տօնիս՝
Ջանգուցելոց մեր զհոգիս
Ուրախ առնել րամովլին
Պատարագաւ սուրբ գառին՝
Եւ զվերջայս Նոցա զմեզ
Մըխիթարել հոգեպէս,
Ցօրինակէ՝ քո խրախոյս
Առեալ Մուսայս մըտայոյզ,
Քան զբանս ինչ քեզ առաւել
Զմըխիթարչի գայ ձօնել։
Է որդանի ձօնդ իմ երգ,
Երկխուղածի մըտաց երկ,
Զոր առ իւրում քնարանի
Ցունկըն մանկանդ հըծծեցի,
Եւ զոր ինձ կրից քոց վըկայք

*Թելադրեցին կամենայք ։*
*Կուսանքն անմահք 'ի տաղիս*
*Քաղցր հայեցեալ ակամբ յիս ,*
*Վասն յարութեան որդեկին*
*Քո փաստս ինձ նորս ուսուցին ,*
*Զորս ոչ ուրեք ինձ ցայս վայր*
*Աստուածաբան ասաց այր ։*
*Եթէ 'ստ յուսոյս այդոքիկ*
*Յընթեռնուլ քո աւադիկ*
*Թուիցին եւ քեզ հնարաւոր ,*
*Զիցէ Մուսայս ակընկոր*
*Եւ խրախուսեալ քո նոքօք ,*
*Կակղեսցին ցաւք քո եւ հոգ ,*
*Զի զօրութիւն ըղձեցցիս՝*
*Ըզհետ մանկան քո ընդ իս*
*Գընալ ոտամբ ճոխաճեմ*
*Ի մահարձանս եդեալ դէմ ,*
*Ուր վիշտք եւ ցաւք եւ սուգ սեաւ*
*Խորասուզեալ ընդ սօսեաւ՝*
*Փոխին 'ի յոյս եւ 'ի թեւս ,*
*Վերամբառնալ զմեզ յարեւս ։*
*Այլ թէ կանխես դու քան զիս*
*Եւ թէ յամես 'ի յաստիս ,*
*Մի մոռասցիս աստ եւ անդ*
*Յեղանակել զերգ մանկանդ ,*
*Զոր ինձ հաւատք եւ 'նդաբոյս*
*Եռ յերիւրել զըւարթ յոյս ։*

Ի Քրիստուպօլիս. Խ. Պ. ՄԻՍԱՔԵԱՆ
Ի Հրոտից ամսեան ԺԷ.
ՌՑԻԶ.

* * *

# Ի ՔՆԱՐԱՆ
# ՅԱԿՈԲԱՅ ՊԱՏԱՆԻՈՅ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ
## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ՄԿՐԵԱՆՑ
## ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ

Քաղցր է ինձ քնելն,
Այլ առաւել՝ ես՝
Գոլ վիմացեալ,
Ցորքան յաճախեն
Չարիք եւ ամօթ.
Եւ երանութիւն
Մեծ է ինձ աստէն՝
Տեսանել ինչ ոչ,
Զգալ եւ ոչ ինչ:
Մի զարթուցաներ
Զիս ուրեմն, աղէ՛,
Եւ դաշըն ձայնիւ
Բարբառիցիր այդր:

ՄԻՔԷԼԱՆՃԷԼՕ. (1)

*Քու ինձ, որդեակ,*
*Խռովել զքուն քո*
*Ցանդորրաւէտդ ի խրշտեակ*
*Ցոր ի դալար*
*Տիոց ծաղկի*
*ՓուԹով խոնջեալ հանգուցար :*

---

*(1) Մի յականաւոր արանց անտի որ գերաԹռիչ հանճարով իւրեանց նախանձելի համօրէն Եւրոպիոյ կացուցին զԻտալիա, Միքէլանճէլօ նկարիչ և անդրիագործ և ճարտարապետ գերակայեալ և բանաստեղծ ոչ անարժան Մեծին ՏանԹէի, ի Մաւսոլէոն Լաւրենտիոսի Մետիկեան ընդ այլ հրաշակերտս իւր յաւելեալ էր և զանձնաւորուԹիւն գիշերոյ ի քուն : Ի տեսիլ չքնաղ ձեռակերտին հրաշացեալ քերԹողն ՍԹրոձձի՝ արձանագրեաց առեն ի խարիսխ անդրոյն տաղաչափեալ զիմաստս զայսոսիկ :*

*« Գիշերդ զոր տեսանես ի քուն ընկողմանեալ շնորհազարդ վայել-*
*« չուԹեամբ, ի հրեշտակէ ումեմնէ դրոշեցաւ ի վիմիդ. և քանզի ննջէ,*
*« ապա կեայ. որ Թերամտեսդ զարԹո զնա, և բարբառիցի քեզ : »*

*Միքէլանճէլօ՝ զոր ի հրեշտակ քերԹողն փոխակերպէ համանունաբար, այն զի Անճէլօ հրեշտակ լսի ըստ յունին և յիտալականն, Թախծեալ յոյժ էր յայնժամ ընդ աղէտս հայրենեացն զոր ճարակէին մարտք ըն-տանիք. ուստի գորովեալ ընդ պանծալի վկայուԹիւն ՍԹրոձձեայ՝ դրոշմէ տխրուԹեամբն ընդ արձանագրուԹեամբ նորա զբողոքն սրտառուչ, զորոյ զԹարգմանուԹիւն ի բնաբան կալաք առա քերԹուածոյս :*

Ես ի Պիմպլայց
Ի հրամանէ
Քընարանիդ ելեալ յայց,
Ի վաղընտել
Ինձ յունկըն քո
Զերգ որրանի գամ մընչել,
Որպէս մայրդ հեզ
Երբեմն առնէր,
Քաղցր ըզքուն քո առնել քեզ·
Քաղցր ի քուն լեր
Անխռով, մանկիկ,
Անձկոտ ուռեացս աստ ի ստուեր,
Ուր երկրաւոր
Չըմարթէ ոք
Զարթուցանել զքեզ այսօր.
Զի ապառնի
Զայնին երկնից
Ցարուցանել զքեզ պահի,
Եւ ցերեկուն
Վերջին աստ քոյդ
Խաղաղ լիցի մահաքուն ։
Աստ ռամօրէն
Ընդ Հայ Պլարիկս
Ըզքեւ հոգիք շուրջ պարեն,
Ըզսըրբանուէր
Պահել զվայրիս
Խաղաղութիւն աներեր ։
Աստ աշխարհի
Ոչ եւս առ քեզ
Հուպ հասցէ ձայն դըժպըհի,
Եւ կըռուաքոյծ

Զարկաց յաւէժ
Են քընարանքդ անմատոյց ։
Աստ մինչ ի սպառ
Դու յայնցանէ
Ցապահովն կացուցար ,
Զեւ անկեղծիկ
Քո հաւատոյ
Լեալ փորձութեանց խաղալիկ ։
Մանուկ էիր
Դու մըտավարժ
Ոգւոյ դիպեալ բարեկիր (1) ,
Եւ սկըզբնաբոյսդ
Ըզգօնութեամբ
Վաղ ծանուցեալ ըզպարտոյս ,
Ինքնանըւէր
Ցուցար անդէն
Ցօդուստ ազգիդ եւ ի սէր ,
Եւ կեանքդ անչար
Կարեաց նորին
Եղեւ ուսումն անդադար ։
Դու չինողաց
Նորին զքեզ ձեռ
Համարելով անկասկած ,
Նըմանութեան
Նոցունց ըզքեզ
Նախանձ ուտէր լըռելեայն ։
Դու անդողդող
Զիչ կալեալ զակն
Ի տարեգրաց հայելւոյ ,

(1) Իմաստ. Ը. 19։

Ի լուսանկար
Հոգւոյ նորա
Ի տխուր այնքան յառեցար.
Զի անդլատին
Զնոսա ի քեզ
Եւ զքեզ տեսեալ ի նոսին,
Հարար ի գեղջ,
Եւ Նարկիսեայ (1)
Պէս ծիւրեցար վաղ անմեղդ ։
Քանզի նովին
Դու նախանձու
Բուռն արարեալ քեզ ինքնին,
Դու քան ըղկար
Մարմնոյդ ի վեր
Մըտրակեցեր ըղձանձար,
Եւ տըքնաբար
Հեղեալ ի գիրս,
Վաղ ընդ ճըգամբք ընկճեցար ։
Մատաղատունկ
Տակաւ հիւծեալ
Կարկամեցան քո մատունք,
Եւ գրիչ քո ժիր
Անկաւ սահեալ
ի ձեռանէ քո յերկիր,

(1) Վասն Նարկիսեայ մանկան չքնաղագեղի պատգամ տուեալ էր ի ծննդեան նորա երկայնակեաց լինելոյ նմա, եթէ միայն անծանօթ ինքեան կայցէ պատկեր դիմաց իւրոց: Զգուշացաւ նմա մայրն ի հայելւոյ. այլ նորա ի դառնալն երբեմն յորսոյ մատուցեալ առ ծարաւոյ յաղբիւր ականակիտ՝ ակնարկեաց ի նմա զպատկեր իւր, և այլ յիւրմէն զայն վարկուցեալ՝ տարփացաւ ի նա, և առ անձուկ սիրոյն վաղամեռիկ եղև :

Ի. Գ. Մ.

Այն ինչ ի լոյս
Քոյ վաստակոց
Ածեալ զխայրիս մեծայոյս.
Յայնժամ եղծաւ
Գեղ դիտակիդ,
Եւ մանկութեան վաղապրաւ
Ետ ի քէն խոյս,
Իբրեւ զկարճոյ
Աւուր հակիրճ վերջալոյս։
Ընդ կանխահաս
Զուն քո յերկրէ
Սիրաբանից սրդաց դաս,
Եւ մանկըտին
Որ 'նդ քեզ ըզ գիրս
Արօրադիր առնէին,
Զհամաւիրըթիթ
Իւրեանց զամոլդ
Լացին ի ճեպ հրաժեշտիդ։
Իսկ ես, որ վաղ
Երանէի
Ըզ բախդ ծնողաց քոց, աւաղ,
Զորդեկորոյս
Ծնողաց յայնժամ
Ողբացի զյոյս զետնասոյզ,
Գըթեցին յիս
Վայր մի հաւատք,
Յայլ շրջեցայ ի կարծիս,
Եւ ասացի
Ցանձն իմ. Զիմրդ
Պանդոյր է զարմ կանացի,
Որ ցանդ զիւրեաւ

Դարանակալ
Գիտելով զմահ մարդադաւ,
Ընդ ցաւոց ծով
Ցանդ անցանէ
Զմահ ի կողս իւր բերելով,
Եւ կոյր տարփիւ
Յաճախ իսկ լեալ
Հէք Հռաքելի քոյրաթիւ (1),
Ցանդ դըժընդակ
Երկանց ընդ գնոյ
Խօլդ հայթայթէ իւր զաւակ,
Ի ջամբ ապա
Ամենածախ
Ժանեաց մահուն տալ ըզ նա։
Ցանդ վըշտակիր,
Այլ ցանդ ի բնէ
Տառապանաց ի խընդիր,
Է դորա հոգ
Ըզ Դանայեանց
Յաւէժ լընուլ արտասուօք
Ըզ կարաս ծակ,
Եւ դիակամբք
Որդւոցն ըզվիհն անյատակ։
Ա՛զգ յետսամիտ,
Որ հրապուրեալ
Նենգող սիրոյն ի ծըլախ՝
Ըզմահ ծնանի,
Կեանս վարկուցեալ
Ցարդ եւս տածել յարգանդի։

(1) Զի Հռաքել մեռաւ՝ այն ինչ Բենիամինի լուծեալ զերկունս նորա։
Խ. Գ. Մ.

Զի կերակուր
Մահու է կեանք,
Եւ մահ՝ կենաց՝ ոլորտուք։
Եթէ երկին
Գրթայ երբէք
Յուշամոռացն եւ հէք կին,
Փակեսցէ արդ
Զարդանդ նորա,
Մի եւս սերել տարապարտ . . .
Զայսոսիկ մէս
Խորհուրդս յայնժամ
Նեղսրտութեամբ յուզի եւ,
Այլ արդ յիս բան
Յիս եւ հաւատք
Վերականգնեալ՝ ձայն բառնան.
Օ՛ն, ոչ ի չէս
Տղայդ յաւելար,
Ոչ իսկ մեռեալ, այլ նընջես։
Քում էութեանդ
Մասն էր եւ է
Ի մահուանէ անմըկանդ.
Զտարրականաւ
Եւեթ կիսովդ
Ժամանակեայ քուն անկաւ,
Զի թօշնեալդ քո
Հին մանկութիւն
Նորոգեսցի իբր արծւոյ (1),
Ոչ ըստ փըծուն

(1) Նորոգեսցի որպէս արծւոյ մանկութիւն քո : Սղմ. ՃԲ.

Խ. Գ. Մ.

երկնից արքայութեան. եւ ընդ սրբոց դասս դասեսցէ, եւ փոխանակ դառնակսկիծ տրտմութեան Ձերոյ՝ տացէ Տէր Ինքնին զուարթարար ուրախութիւն ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ Ամէն ։

Տրտմալից որդի Ձեր

**ՄԱՏԹԷՈՍ ՏԷՐ ԿՈՍՏԱՆԴԵԱՆ ՕՐԲԷԼԵԱՆՑ**

Հայկական աշխարհէն

10 Յուլիս, 1876·
Ի Քաղաքն Տէմիր խան.
Շուրայ.

---

(ԹԻՒ 52)

*ԹՈՒՂԹ ԸՆԾԱՅԱԿԱՆ, եւ ԵՂԵՐԵՐԳ Գ. Խաչատուր Միսաքեան քանասեղծ վարժապետին.* (1)

---

### ԱՌ

## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱԻԱԳ ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆՑ

### ԹՈՒՂԹ ԸՆԾԱՅԱԿԱՆ

*Մինչ մանուկ քո՛նդ քոյդ թեւով*
*Ձքուն արդարոյ ննջելով՝*
*Հասարակաց խնկամօր*
*Տարաւ 'ի ծոց բեղնաւոր՝*
*'Ի խաղաղիկն անդ 'ի քուն*
*Փոխիլ յէակ գերաքուն,*

---

(1) Զայս Ընծայական, ի 25 Յուլիսի 1876, ընդ Եղերերգութեանց իւր և աշակերտացն հանդիսաւոր իմն եղանակաւ մատուցանէր բազմահմուտ Պուէտն ի Վարժարանին, յորում աւուր հրաւիրեալ էի կատարել զխորհուրդ Ս. Պատարագի յեկեղեցւոջ Ս. Խաչի յիւսկիւտար ։

Եւ յարգանդէ մօրն արդի
Ծնանել 'ի կերպ հրեշտակի,
Զը փորձեցայ 'ի չուն իւր
Գալ արտասուացդ առնել դիւր,
Գիտելով զհօր բաժանման
Ցորդւոյ 'ի վեր զցաւ քան զբան։
Զի վիշտ՝ որում միայնակ
ՀՈԳԻՈՅՆ է գոլ օժանդակ՝
Ժամանակին դիւթական
Ամոքելով ազդմամբ զայն,
Գոյ 'ի սկզբան՝ ճարտարակ
Բանից մարդկան անազդակ,
Եւ թախանձել զայն յողոք։
Է զհուր ածել 'ի բորբոք։
Այլ զի զսըրտիդ կըծուակիծ
Հեղձուցեալ քո ըղ կըսկիծ՝
Բարեաւ եկիր 'ի տօնիս՝
Հանգուցելոց մեր զհոգիս
Ուրախ առնել ըամովլին
Պատարագաւ սուրբ զաւրին՝
Եւ զվերջայս Նոցա զմեզ
Մըխիթարել հոգեպէս,
Ցօրինակէ քո խրախոյս
Առեալ Մուսայս մըտայոյզ,
Քան զբանս ինչ քեզ առաւել
Զմըխիթարչի գայ ձօնել։
Է որրանի ձօնդ իմ երգ,
Ծըփփղածի մըտաց երկ,
Զոր առ իւրում քնարանի
Ցունկըն մանկանդ հըծծեցի,
Եւ զոր ինձ կըրից քոց վըկայք

Թեւադրեցին կամենայք ։
Կուսանքն անմահք 'ի տաղիս
Քաղցր հայեցեալ ակամբ յիս ,
Վասն յարութեան որդեկին
Քո փաստս ինձ նորս ուսուցին ,
Զորս ոչ ուրեք ինձ ցայս վայր
Աստուածաբան ասաց այր ։
Եթէ 'ստ յուսոյս այդոքիկ
Ցընթեռնուլ քո աւադիկ
Թուիցին եւ քեզ հնարաւոր ,
Զիցէ Մուսայս ակընկոր
Եւ խրախուսեալ քո նոքօք ,
Կակղեսցին ցաւք քո եւ հոգ ,
Զի զօրութիւն ըզգեցցիս՝
Ըզհետ մանկան քո ընդ իս
Գընալ ոտամբ ճոխաճեմ
Ի մահարձանս եղեալ դէմ ,
Ուր վիշտք եւ ցաւք եւ սուգ սեաւ
Խորասուզեալ ընդ սօսեաւ՝
Փոխին 'ի յոյս եւ 'ի թեւս ,
Վերամբառնալ զմեզ յարեւս ։
Այլ թէ կանխես դու քան զիս
Եւ թէ յամես 'ի յաստիս ,
Մի մոռասցիս աստ եւ անդ
Ցեղանակել զերգ մանկանդ ,
Զոր ինձ հաւատք եւ 'նդաբոյս
Ետ յերիւրել զըւարթ յոյս ։

Ի Քրիստուպօլիս. Խ. Պ. ՄԻՍԱՔԵԱՆ
Ի Հրոտից ամսեան ժէ.
ՌՑԻԶ.

* * *

# Ի ՔՆԱՐԱՆ
# ՅԱԿՈԲԱՅ ՊԱՏԱՆԻՈՅ ԽՄԱՍՏԱՍԻՐԻ
## ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ՄԿՐԵԱՆՑ
## ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ

Քաղցր է ինձ ննջել,
Այլ առաւել՝ քար
Գոլ վիմասառեալ,
Ցորքան յանդգնեն
Չարիք եւ ամօթ.
Եւ երանութիւն
Մեծ է ինձ աստէն՝
Տեսանել ինչ ոչ,
Ըզգալ եւ ոչ ինչ:
Մի զարթուցաներ
Զիս ուրեմն, աղէ՛,
Եւ դաշըն ձայնիւ
Բարբառիցիր այդր:

ՄԻՔԷԼԱՆՃԷԼՕ (1)

*Քաւ ինձ, որդեակ,*
*Խռովել զքուն քո*
*Ցանդորրաւէտ ի խըշտեակ*
*Ցոր ի դալար*
*Տիոց ծաղկի*
*Փութով խոնջեալ հանգուցար:*

---

(1) *Մի յականաւոր արանց անտի որ գերաթռիչ հանճարով իւրեանց նախանձելի համօրէն Եւրոպիոյ կացուցին զԻտալիա, Միքէլանճէլօ նկարիչ և անդրիագործ և ճարտարապետ գերակայեալ և բանաստեղծ ոչ անարժան Մեծին Տանթէի, ի Մաւսոլէոն Լաւրենտիոսի Մետիկեան ընդ այլ հրաշակերտս իւր յաւելեալ էր և զանձնաւորութիւն գիշերոյ ի քուն: Ի տեսիլ չքնաղ ձեռակերտին հրաշացեալ քերթողն Սթրոձձի՝ արձանագրեաց առեն ի խարիսխ անդրոյն տաղաչափեալ զիմաստս զայսոսիկ:*

*«Գիշերդ զոր տեսանես ի քուն ընկողմանեալ շնորհազարդ վայել-«չութեամբ, ի հրեշտակէ ումեմնէ դրօշեցաւ ի վիմիդ. և քանզի ննջէ, «ապա կեայ. որ ներամտեսդ զարթո զնա, և բարբառեսցի քեզ:»*

*Միքէլանճէլօ՝ զոր ի հրեշտակ քերթողն փոխակերպէ հոմանունաբար, այն զի Անճէլօ հրեշտակ լսի ըստ յունին և յիտալականն, թախծեալ յոյժ էր յայնժամ ընդ աղէտս հայրենեացն զոր ճարակէին մարտք ըն-տանիք. ուստի զօրովեալ ընդ պանծալի վկայութիւն Սթրոձձեայ՝ դրօշմէ տխրութեամբն ընդ արձանագրութեամբ նորա զբողոքն սրտառուչ, զորոյ զթարգմանութիւն ի բնաբան կալաք առ քերթուածոյս:*

Ես ի Գիմպլայց
Ի հրամանէ
Քընարանիդ ելեալ յայց,
Ի փառընտել
Ինձ յունկըն քո
Զերդ որրանի գամ մընչել,
Որպէս մայրդ հեզ
Երբեմն առնէր,
Քաղցր ըղձուն քո առնել քեզ.
Քաղցր ի քուն լեր
Անխռով, մանկիկ,
Անձկոտ ուռեացս աստ ի ստուեր,
Ուր երկրաւոր
Չըմարթէ ոք
Զարթուցանել զքեզ այսօր.
Զի ապառնի
Ձայնին երկնից
Յարուցանել զքեզ պահի,
Եւ ցերեկուն
Վերջին աստ քոյդ
Խաղաղ լիցի մահաքուն։
Աստ բամօրէն
Ընդ Հայ Պլարիկս
Ըղձեւ հոգիք շուրջ պարեն,
Ըղըրբանուէր
Պահել զվայրիս
Խաղաղութիւն աներեր։
Աստ աշխարհի
Ոչ եւս առ քեզ
Հուպ հասցէ ձայն գըժպըհի,
Եւ կըռուաբոյծ

*Զարեաց յաւէժ*
*Են քընարանքդ անմատոյց.*
*Աստ մինչ ի սպառ*
*Դու յայնցանէ*
*Ցապահովի կացուցար,*
*Զեւ անկեղծիկ*
*Քո հաւատոյ*
*Լեալ փորձութեանց խաղալիկ.*
*Մանուկ էիր*
*Դու մըտավարժ*
*Ոգւոյ դիպեալ բարեկիր (1),*
*Եւ սկըզբնաբոյսդ*
*Ըզգօնութեամբ*
*Վաղ ծանուցեալ ըզպարտոյս,*
*Ինքնանըւէր*
*Ցուցար անդէն*
*Ցօդուստ ազգիդ եւ ի սէր,*
*Եւ կեանքդ անչար*
*Կարեաց նորին*
*Եղեւ ուսումն անդադար.*
*Դու չինողաց*
*Նորին զքեզ ճետ*
*Համարելով անկասկած,*
*Նըմանութեան*
*Նոցունց ըզքեզ*
*Նախանձ ուտէր լըռելեայն.*
*Դու անդողդող*
*Պիշ կալեալ զակն*
*Ի տարեգրաց հայելւոյ,*

(1) Իմաստ. Ը. 19:

Ի լուսանկար
Հոգւոյ նոցա
Ի տիպն այնքան յառեցար.
Զի անդրստին
Զնոսա ի քեզ
Եւ զքեզ տեսեալ ի նոսին,
Հարար ի դեղգ,
Եւ Նարկիսեայ [1]
Պէս ծիւրեցար վաղ անմեղդ։
Քանզի նովին
Դու նախանձու
Բուռն արարեալ քեզ ինքնին,
Դու քան ըզկար
Մարմնոյդ ի վեր
Մրտրակեցեր ըղձանձար,
Եւ տըքնաբար
Հեղեալ ի գիրս,
Վաղ ընդ ծըգամբքդ ընկճեցար։
Մատաղատունկ
Տակաւ հիւծեալ
Կարկամեցան քո մատունք,
Եւ գրիչ քո ժիր
Անկաւ սահեալ
Ի ձեռանէ քո յերկիր,

(1) Վասն Նարկիսեայ մանկան չքնաղագեղի պատգամ տուեալ էր ի ծննդեան նորա երկայնակեաց լինելոյ նմա, եԹէ միայն անծանօԹ ինքեան կայցէ պատկեր դիմաց իւրոց: Զգուշացաւ նմա մայրն ի հայելւոյ. այլ նորա ի դառնալն երբեմն յորսոյ մատուցեալ առ ծարաւոյ յաղբիւր ականակիտ՝ ակնարկեաց ի նմա զպատկեր իւր, և այլ յիւրմէն զայն վարկուցեալ՝ տարփացաւ ի նա, և առ անձուկ սիրոյն վաղամեռիկ եղև:

Խ. Գ. Մ.

Այն ինչ ի լոյս
Քոց վաստակոց
Ածեալ զխայրիս մեծայոյս.
Յայնժամ եղծաւ
Գեղ դիտակիդ,
Եւ մանկութեան վաղագրաւ
Ետ ի քէն խոյս,
Իբրեւ զկարճոյ
Աւուր հակիրճ վերջալոյս.
Ընդ կանխահաս
Ձուն քո յերկրէ
Սիրաբանից սըգաց դաս,
Եւ մանկըտին
Որ 'նդ քեզ ըզ գիրս
Արօրադիր առնէին,
Զհամախըլթիթ
Իւրեանց զամոլդ
Լացին ի ճեպ հրաժեշտիդ.
Իսկ ես, որ վաղ
Երանէի
Ըզ բախտ ծնողաց քոց, աւաղ,
Զորդեկորոյս
Ծնողաց յայնժամ
Ողբացի զյոյս գետնասոյզ,
Գըթեցին յիս
Վայր մի հաւատք,
Յայլ շրջեցայ ի կարծիս,
Եւ ասացի
Ցանձն իմ. Զիարդ
Պանդոյր է զարմ կանացի,
Որ ցանդ զիւրեաւ

Դարանակալ
Գիտելով զմահ մարդադաւ,
Ընդ ցաւոց ծով
Ցանդ անցանէ
Զմահ ի կողս իւր բերելով,
Եւ կոյր տարփիւ
Յաճախ իսկ լեալ
Հէք Հռաքելի քոյրաթիւ (1),
Ցանդ դըժընդակ
Երկանց ընդ գնոյ
Խօլդ հայթայթէ իւր զաւակ,
Ի ջամբ ապա
Ամենածախ
Ժանեաց մահուան տալ ըզ նա ։
Ցանդ վըշտակիր,
Այլ ցանդ ի բնէ
Տառապանաց ի խընդիր,
Է դորա հոգ
Ըզ Դանայեանց
Յաւէժ լընուլ արտասուօք
Ըզ կարաս ծակ,
Եւ գիակամբք
Որդւոցն ըզվիհն անյատակ.
Ա՛զգ յետսամիտ,
Որ հրապուրեալ
Նենգող սիրոյն ի ժըպիտ՝
Ըզմահ ծնանի,
Կեանս վարկուցեալ
Ցարդ եւս տածել յարգանդի.

(1) Զի Հռաքել մեռաւ՝ այն ինչ Բենիամինի լուծեալ զերկունս նորա:
Խ. Գ. Մ.

Զի կերակուր
Մահու է կեանք,
Եւ մահ՝ կենաց տըրխուր:
Եթէ երկին
Գըթայ երբէք
Ցուշամոռացն եւ հէք կին,
Փակեսցէ արդ
Զարգանդ նորա,
Մի եւս սերել տարապարտ . . .
Զայսոսիկ վէս
Խորհուրդս յայնժամ
Նեղսըրտութեամբ յուզի ես,
Այլ արդ յիս բան
Ցիս եւ հաւատք
Վերականգնեալ՝ ձայն բառնան.
Օ՛ն, ոչ ի չէս
Տղայդ յաւելար,
Ոչ իսկ մեռեալ, այլ նընջես:
Քում էութեանդ
Մասն էր եւ է
Ի մահուանէ անվըրկանդ.
Զտարրականաւ
Եւեթ կիսովդ
Ժամանակեայ քուն անկաւ,
Զի թօշնեալդ քո
Հին մանկութիւն
Նորոգեսցի իբր արծւոյ (1),
Ոչ ըստ փըծուն

(1) Նորոգեսցի որպէս արծւոյ մանկութիւն քո: Սղմ. ԾԲ.

Խ. Գ. Մ.

Առաստեղի
Փեշակարկատ Սամեցւոյն (1)
Ի վերբլատին
Գալ պաճարել
Ցենթալուսնեայց մօրատին ,
Այլ գերարփից
Վերընկալեալ
Լինել յաւերժ բնակակից ։
Բայց ո՜, բմբէ ,
ԶՍաղուկեցւոյն
Ցամօթ զհաւատն արասցէ ։
Ո՜ ըղմահուն
Կարծեցելոյ
Թօթափիցէ ի քէն զքուն ։
Ո՜ յանշըշունջ
Դիականէ
Զմարդ յարուսցէ հողեչունչ . . . ։
Որ յանէից
Մարբդ ըզքեզ հորդ .
Երբեմն արար էակից ,
Նա զքեզ ինքնին ,
Նա զքեզ յէէդ
Իացուսցէ վերըստին ։
Որ Ադամայ
Թըմբիր ածեալ՝
Կողին ըստեղծ մերթ զԵւայ ,
Ըզնոյն Թըմբիր

(1) Պիթագորի, որ զմարմնափոխութեանն զվարդապետութիւն յԵգիպտացւոց ընկալեալ քարոզեաց ի Յոյնս ։

Խ. Գ. Մ.

Ածելով արդ
Եւ զքեւ շիրմիդ ի դաբիր ,
Ի քէն, որդեակ ,
Ծնուցէ նա զքեզ
Մարդ սէրարփեաց Նըմանակ ։
Դու ես Փիւնիկ ([1])
Բանաստեղծին .
Հաւ յայդ անուն եղեալ չիք ։
Ընդ հողոյդ քով
Անցեալ զըտեալ
Որպէս զոսկի մարմնով քով ,
Անապական
Զգեցցիս մարմին
Նախնի մարմնոյդ աննըման ։
Եւ հոլաթեւք
Երկնազարմից
Ցաւելեալ քեզ նոր պարգեւ ,
Ի քնարանէս
Դու խսկաքանչ
Փիւնիկ թռուցեալ յարիցես ։
Աներկեւան
Հանգիր , Մանկիկ ,
Ընդ իս եւ ծնողքդ ըզհետ գան ։

Ղ. Խ. ՄԻՍԱՔԵԱՆ

Ի Տաղաւարի Այլակերպութեան
Ցամսեան Հոռից Բ. ՌՅԻԶ
ի Քրիստուպոլիս

([1]) Փիւնիկ՝ հաւ առասպելեալ, միակ ընդ արեգակամբ, որ ի վախճան հարիւր ամաց հրակիզեալ զանձն՝ վերածնանէր ի մոխրոց իւրոց:
Խ. Գ. Մ.

(ԹԻՒ 52)

ԵՂԵՐԵՐԳ՝ Գ. Վահրամ Յարութիւն Թորգոմեանի՝
աշակերտի Խ. Գ. Միսաքեանի.

---

# ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ

## ԶՄԱՀՈՒԱՆԷ ՅԱԿՈԲԱՅ ՊԱՏԱՆՒՈՅՆ

### Տ. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ՄԿՐԵԱՆՑ

### ԱՌ ՀԱՅՐ ՆՈՐԱ ՍԳԱԿԻՐ

*Մինչ մանուկ քոյին ի գարուն չքնաղ*
*Փըթթէր նորածիլ եւ դեղածիծաղ,*
*Եւ ըղձա հըմուտ մինչ տաղից իւրոց*
*Առնէր Գողթնէ մայրիկըն երգոց,*
*Գոյժ ահա բըլուրք առ մեզ Վոսփորեան*
*Ազդեցին մահու, եւ Ձեզ տրտմական*
*Ցօրինել նուագ՝ ինձ Մելպոմենէ*
*Դշխոյն ողբերգուաց հըրաւէր առնէ.*
*Զի զոր դու խնամօք եւ յայնչափ ի սէր*
*Յարտասուաց հովտիս յարբունս հասուցեր,*
*Ի բաց նա վազեալ ըղձօրդ ըղձըրկաւ*
*Ի ծոցն ա՛հ երէկ ի մահուն անկաւ։*
*Հանգոյն եւ ամբիծըն շուշան ծաղիկ*
*Ընդ այգն ի զեփիւռ ծածանեալ հեզիկ՝*
*Իբրեւ խիստ խորշակ շընչէ ի դարաստ,*
*Զայն ի դալարուոյ արկանէ տապաստ։*

Սակայն որ փոխին յաստեացըս կենաց
Կորիցեն արդեօք ի խորըս չիրմաց.
Ո՞չ ըզՂազարու Ներսեսալն զմարմին ,
Եւ զվաղամեռիկ աղջիկն իշխանին
Վերբերեաց ի կեանս Խաչեալն Աստուած։
Որ յայն հաւատայ, որպէս Ինքն ասաց,
Մեռանի թէպէտ , այլ կեցցէ իսպառ,
Դու զքոյին որդեակ մեռեալ ասես, Հայր,
Մինչ զերծանելի զայս թողեալ կենցաղ՝
Նա յանեղծն ի կեանս լինի վերկենցաղ ,
Կեալ երանաւէտ Քերոբէից ի պար՝
Ի յինքն ըզնոցայն բերեալ ըզտիպար։
Անդանօր զնովաւ ի քաղցըր նուագ
Շուրջ արդ բոլորեն արդարոց երամք ,
Եւ որ մահացու էր երբեմն որդեակ
Անմահ Ձեզ յերկինս է այժըմ զաւակ ։
Ապա ըզքոյին մի եւս յարտասուս
Ըզդէմս ակօսէր, Հայր որդեկորոյս.
Զի դու Քահանայ Տեառն ես Յիսուսի,
Պարտ է Քեզ տանիլ ըզխաչդ ի յուսի ։

Ո՞րպէս ի սեղանըն Գողգոթային,
Արարիչըն մեր թող զենուլ զՈրդին՝
Ոյր բոսորաքօղս անապակ Արիւն՝
Քաւեաց ըզ յանցանս նախաստեղծ մարդոյն։
Եւ դու արտասուեօս ընդ քո Յակոբիկ՝
Զոր Աստուած ի քէն խնդրեաց աւասիկ։

Ի զուր են լալօնք, զի որ ծընանի
Ընդ հուպ եւ Նըմա է փոխիլ աստի.
Հմալա, մի, Հայրիկ, ի յանձնէդ ի բաց

*Իսպառ թօթափեալ ըզձորձըն վըշտաց,*
*Ըզնորայն չքնաղ ծաւալեսջիր արդ,*
*Բոլորս ի ծաղկանց եւ փունջս երփնազարդ։*
*Եւ Տէր պարագայս անտըխուր ամաց*
*Ցուեսցէ ի կեանս Ձեր եւ Ձեր մանկանց։*

*Աշակերտ Ս. Խաչ վարժարանի Քրիսուպօլսոյ,*
*եւ Համբակ Խ. Գ. Միսաքեանի.*

**ՎԱՀՐԱՄ Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆ**

Ի 24 Յուլիսի, 1876 ամի.

---

(ԹԻՒ 54)

*ԵՂԵՐԵՐԳ՝ Բալուցի Գ. Մելքոն Կիւրճեանի աշակերտի Գ. Միսաքեանի.*

---

## ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ
## ԶՄԱՀՈՒԱՆԷ ՈՐԴՒՈՅՆ
### ԱՐԺԱՆԱՊԱՏԻՒ ՀՕՐ ՄԿՐԵԱՆԻ
### ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴԻ Կ. ՊՕԼՍՈՅ

*Ի սուրբ ի սէր վառեալ Քո, Հայր, իբր ի զէն՝*
*Գաս ընդ յարկաւս այս մըտանես գեղաշէն,*
*Ոչ որպէս զոռ մարտիկ ի տուն յաղթելոյն.*
*Այլ որպէս Հայր բարեգորով եւ ղուարթուն.*
*Որ դարձ առեալ Նըժդեհական ի յուղոյ՝*
*Գայ հայրենին իւր ժամանէ քաղցր ի ծոց՝*
*Ի մոռացօնս արկեալ համայն զոր կըրեաց*
*Վիշտ, դառնութիւն, հոգ եւ թախիծ անձկայրեաց։*
*Այլ դու ըղձոյդ Հայր, ընդ այս տանս ընդ յարկաւ*

Արկեր արդեօք ի մօռացօն զսըրտիդ ցաւ
Ի մանրերամ մանկանցդ ի զուարթ ի տեսիլ,
Թէ ի ծոցիդ թագուցանես վըշտակիր ։
Աւաղ, ժըպիտ փոխադարձես մեզ թէպէտ,
Լեալ բոլորիցըս բերկրանաց մերոց դէտ,
Այլ չէ մեզ այդ չէ ի սըրտէ խընծղալեց,
Զի ցաւագնեալ անձին բերկրանք է թախիծ ։
Եւ զի՞նչ պատճառք, Հայրիկ, վըշտացդ աղէկէզ,
Գիտուն է ինձ, ո՜հ այն, եւ դառն իսկ է մեզ,
Վաղ հընչեցին չարեաց գուժկանքն այնոքիկ
Ի Բիւզանդիոյ մեծէն մինչեւ ցըՄասիք.
Եւ յորդահոս աղի լալեացդ արտասուք
Խառնեալ յալիս ի Պրոպոնտեայ աղտաղտուկ
Գուժկանաւորք գընացին ձայնիւդ ողբերգակ
Ի Հայրենիսդ յեղերական ի նըւագ.
Ո՜հ, զի՞ այսչափ դառն է օրհաս կենախուզ,
Ընդ որ տարերք՝ իսկ լուծանին յարտասուս,
Ո՞չ որ ըզկեանըս մահացուաց պարգեւէն
Նոյն եւ նոցին խըզէ զկենաց ժապաւէն ։
Ո՞չ ապաքէն յունականին են կեղծիք
Լիբիտինեայք իսկ եւ Պարկայք ամեհիք,
Եւ կարկատուն առասպելին իսկ հաւատ
Կիցք մահառիթ նոցին եւ սայց իսկ մըկրատ ։
Այո՛ որ տէրն է կենդանեաց բոլորից
Նոյն եւ մահուն իսկ իշխեցող համայնից,
Եւ չիք ինչ տունկ որ արձակէ ինչ սօսափ
Առանց նորին իսկ հրամանի եւ ոչ ծափ,
Ո՛չ ի ծովու կոծին ալիք լեռնականք
Թէ ոչ թողու զնոսին այնպէս սանձարձակ,
Եւ ոչ մահունք գործին ուրեք ի տեղւոջ,
Թէ ըզհոգիս նա ոչ առնէ եկակոչ ։

Ուստի՝ զիա՞րդ ի մի յաղբեր ականէ
Միանգամ դառն եւ քաղցրահամ ջուր հոսէ ,
Կամ յայգեստան սաղարթագեղ որթենի
Զիա՞րդ բերէ ողկոյզըս դառն եւ աղի ։
Զի կեանք եւ մահ թուին մեզ յայժ ներհականք
Մին ցանկալի եւ միոյն ելք ողբականք .
Թէպէտ իսկ ոչ կեանք քաղցուալից է բընաւ,
Ոչ դըժընդակ նոյն եւ նորին իսկ զըրաւ ։
Եւ հուրն այն՝ զոր կոչեմք մեք կեանս ցանկալի,
Թէ շիջանի ասա, անդանօր լուցանի,
Զի ոչ գիշեր թէ պարզէ զքօղ տըխրորակ,
Եւ դառնայ արփին անդրէն լուսածագ ։
Ուստի եւ զինչ ապա առնել իցէ անկ,
Ցերկնից այսպէս եղեն անդարձ հրամանք,
Լալ անդադար հոգւոց հանել մըշտամռունչ,
Թէ պաղանել նըմին երկիր անտըրտունջ ։
Որ չէրն 'ւ ածաւ ի գոյութիւն յանէից
Դարձցի ուրեմն անդրէն ի մայր իւր անբիծ,
Մարմինն ի հող, հոգին յաստեղս վերնաձեմ
Թռուցեալ թեթեւ իբր աղաւնի զուարթադէմ ։
Արդ՝ ո՛չ ածեր, Հայր, յուշ յաւուրն ըղձական՝
Ցոր զառաջին բարձեալ ի գիրկդ հայրական՝
Համբոյրս ետուր ի ճակատուն խանդակաթ,
Զի գայցէ օրն, ուր ընկալցի սա աւարտ ։
Այլ թէ ո՛ր այն իցէ այն օր եւ վայրկեան,
— Ոչ ումեք ոչ տըւաւ գիտել զսա մարդկան .
Զի որպէս հողմ որ մըռընչէ բըքայոյզ՝
Արմատաքի խըլեալ յերկրէ ծառ եւ բոյս,
Այսպէս շըրնչէ նոյն եւ մահուն իսկ խորշակ
Եւ անկանին ծերին եւ մանկիկ սիրունակ ։
Եւ օրն ահա օրն այն եղեւ Ծաղկազարդ,

*Որ սիրելւոյդ լարեալ կենացըն Թակարթ՝*
*Խըզեաց խապառ զնարօս Նորին երփնագեղ*
*Եւ խամրեցոյց որպէս ծաղիկ կարմրագեղ ։*
*Այլ օրհնաբան մինչ մանկունք Նոր Սիօնին*
*Ոստ ձիթենւոյ կանանչազարդ ի ձեռին՝*
*Ըզսեղանովըն կազմէին շուրջ պարակ*
*Եղանակեալ ըզՅիսուսին յաղթանակ ,*
*Նա կենցաղոյս աստի լուծեալ ի կապից՝*
*Աղաւնակերպ Թըռեաւ յերկինս հըրճուալից ,*
*Իմանալի ոստն ի ձեռին ձիթենւոյ*
*Եւ ի միւսումն առեալ ըզքնար իւր սիրոյ ,*
*Զոր ջերաջերմ մինչչեւ ոգիքն ի ծոցոյն*
*Էին Թափեալ, եւ չեւ խըցեալ զաչս ի քուն ,*
*Հարեալ անդրէն դողդոջ մատամբ սըրտառուչ*
*Հօրկանդ ի լուր, եւ լըռեցոյց անտըրտունջ ։*
*Տուք ցօղս աչաց, տուք, ինձ արտօսր անկեղծիկ*
*Ի յիշատակ Նորին ցօղել գեղեցիկ ,*
*Զըսպասըս զայս մատուցանել ողբերական*
*Գըճնել ձօնիւքս զըստուեր Նորին վեհական ։*

**ՄԵԼՔՈՆ ԿԻՒՐՃԵԱՆ**
*Բալուցի ի վարժարան*
*Սրբոց Խաչի.*

1876 Յուլիս 25.
ի Քրիսուպօլիս.

( Թիւ 55 )

*ՅՕԴՈՒԱԾ Արեւելեան Մամլոյ Հանդիսի, խմբագրեալ ի Մատթէոս Էֆէնտիէ Մամուրեան ի Զմիւռնիա.*

---

## ԱՌ ՀԱՅՐՆ ՎՇՏԱԿԻՐ

## Տ. Յ. ՔԱՀԱՆԱՅ ՄԿՐԵԱՆ

Ձեր վաղամեռիկ ազնիւ որդւոյն պատուէրին համաձայն՝ առաքեր էիք ինձ ապրիլի 15 ին իր երկը՝ ՆԱԽԱՇԱՒԻՂ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻՑ, զոր մշտաբեկ սրտիւ ընկալայ գրեթէ այն միջոցին որ Հանդիսիս արեւն ալ խաւարէր էր....

Թէպէտ անձամբ անծանօթ իրարու՝ այնքան անկեղծ և անարատ էր մեր համակրական սէրն՝ որքան որ այս համակրութիւնն սրտի ու մտքի զուտ յարաբերութեանց արդիւնք էր։ Արդէն իւր կենդանութեան ժամանակ գրեր էր ինձ այդ աշխատասիրութեան վրայ. և՝ թէպէտ ծաղկահասակ՝ քաջ ըմբռներ էր նա այն միջոցներն որ ազգին վերաշինութեան կ'նպաստեն։ Ներկային մէջ չէր ապրեր նա այլ ապագային մէջ, հայ ժողովուրդ չկար անոր համար, այլ հայ մանկտի, որով պիտի վերանորոգուէր ազգութիւնն և կարծես թէ այդ մանկտւոյն յառաջդիմութեան համար տածած սէրն ու խանդն իր հալումաշ կենաց օրերն աւելի եւս փութացուցին։ Իր ընտանեկան և հայրենական սէրն իր ոյժը կ'կրկնապատկէր, այլ կրկնապատկելով կ'մաշէր։ Արդէն մարմինը զատուեր էր հոգիէն, երբ միայն

իր ընտիր երկասիրութեան համար կ'ապրէր, և այդ ՆԱԽԱՇԱՒԻՂն իր նոր կենաց լուսափիւռ շաւիղը պիտի լինէր որով պիտի վերածնի տարուէ տարի, դարէ դար հայ մանկտւոյն զգայուն և չնորհապարտ հոգւոյն մէջ . . . ։ Եւ կա՞յ երանութիւն, անմահութիւն աւելի մեծ և ցանկալի քան այն որու աղբիւրը սէրն է անմեղ մանկանց, սէր առ առաքինի և յառաջադիմասէր Ցակոբիկդ, որ ինքն ևս հոգւով անմեղ գառնուկ մի էր այլ մաքրով նորափետուր արծիւ մ'որ կ'նկրտէր սաւառնիլ և. մեր վշտաց դեղ գտնել ։

Բայց իր կորստեան վրայ ո՞վ պիտի տայ դեղ մեր վշտաց, եթէ ոչ դարձեալ նոյն ինքն իր հայրենաշունչ յիշատակով և այն գործովն որ գեղեցիկ գանձ մ'է մեր ազգային դպրոցաց համար։

ՆԱԽԱՇԱՒԻՂ է անունն, բայց բազմադիմի հըմտութեան արդիւնք։ Գիտութիւն և արուեստ դեռ մանուկ են մեր մէջ և այս նիւթերուն վրայ դրելու փորձ փորձողը միայն գիտէ թէ ինչչափ ճգունք պէտք են ջանողք հայերէն բացատրելու համար։ Ց. Մկրեան յաջողեր է մանկանց կրթութեան համար յստակ, պարզ ոճով ծանր նիւթեր բացայայտել և ընտիր գործ մ' ի լոյս հանել։

Տէր Հայր, մի' այլ վշտանար, որդիդ աշխատեր, քրտներ և ապրեր է։ ՆԱԽԱՇԱՒԻՂը բեղմնաւոր կեանք մը կ'արժէ, մանաւանդ մեր այս թշուառ կենցաղն զոր շատ պատանիներ, մինչև հասուն մարդիկ ընդունայն կ'վատնեն, ի կենդանւոյն մեռած են . . . ։ Արև. Մամուլ Յուլիս

(ԹԻՒ 56)

ՆԱՄԱԿ՝ Տ. Գարեգին Վարդապետի Սրուանձտեանց առ ծերունի Հայրն Հայոց դպրութեան՝ Տէր Գաբրիէլ Պատկանեան, վասն մահուան փեսայի նորա Պարոն Լուսեղենի կենչեցեան ազգասէր երիտասարդի. յորում իրաւամբ լծորդէ զցաւս Ծերունւոյն ընդ իմոց վշտաց՝ փոխադարձ համակրութեամբ պատկանեալ գոլով միմեանց.

---

## ԱՌ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՏԷՐ
## ԾԵՐՈՒՆԻ ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ

Հայր,

Ողջ անձդ խոցով մի էր նոր եւ կարեվէր խոց մի եւս կրեց սիրտդ, գալարեցան երիկամունքդ ։

Հեծութիւնդ լսելի եղաւ ինձ. հառաչեցիր մեծին Պետրոսի կերտած բուրգէն, արձագանքդ հասաւ մեծին Կոստանդիանոսի կառուցեալ Եօթնաբլուրը ։ Նաւան առաւ Ձեր աչաց արտասուաց կաթիլքը, եւ Միջերկրականն բերաւ զայն Վոսփորոսի ափերը. յանկարծ պղտորեցան Մարմարայի ջինջ ջուրերը. ես ճանաչեցի քո ճնշուած կուրծքէն եւ ճմլուած ականողիքէն բղխած աղի կայլակները ։

Ուստի կը գիզուին դէզադէզ ցաւեր քո առաքինի անձին վրայ ։ Նման ելուզակաց են արկածներ, որ ընկեր ընկերի սուլելով կը հրաւիրեն գումարել ճոխ աւարի մը վրայ, կապտել, կողոպտել, հարուածել, խոցոտել իրենց ձեռքն ինկած ընչեղ ուղեւոր մը ։

Այո, Արկածներն առաքինեաց վրայ կը դիզանան կոյտ կոյտ ։ Իսկ դուք անկողոպտելի գանձեր ունիք,

եւ հաւատոյ ու համբերութեան զրահներ, որք կռա-նաւ, մրճով, սրով, սակրով, գնդակով անդադար հարեալ, այլ երբէք անդծելի կը մնան, անքննելի կը պահեն զոգիդ, ախոյեան ամենայն փորձութեանց ։

Յաւուրց մանկութեան քո ընտիր քաղաքացիկ կրթեալ դու յամենայն պատերազմունս, մարտիկ քաջակիրթ յամենայն ճակատամարտի. ալիքի նման եկեր բաղխեր եւ անցեր են ալեւոր գագաթէդ, ոսկորներէդ, արիւնէդ, հոգիէդ՝ աշխարհի թշնամանքները, զորս կուտայ նա զերկինք սիրողաց, ճշմարտութիւն սիրողաց, խղճի զինուորելոց, Աստուծոյ որդւոց, ի ձեռն Նաբուգոդոնոսորաց՝ որոց դէմ չէք պաշտեր, ի ձեռն իշխանութեանց եւ պետութեանց խաւարին՝ որուն հպատակ չէք գրուեր, ի ձեռն բաղդին՝ զոր խաղ եւ խաղք կընէք։

Համբերեցէք ուրեմն ։ Յոյս ձեր լի է անմահութեամբ։ Իբրեւ սալ՝ որ զամենայն երկաթ իւր վրայ կրելով կռանոց կակղացնէ, եւ ինքն հաստատուն եւ անվկանդ կը մնայ, իբրեւ ադամանդ՝ որ անփշրելի է, այնպէս եւ այնքան զօրաւոր դարձած է քո անձն տակածից խանութեամբ։ Այլ սակայն տղայի պէս կուլաս դու արդ. գորովալիր ծնողի մը փափուկ սիրտդ կը փղձկի։ Այո, քանզի մարդասէր մարդ ես, քանզի որդեսէր հայր ես, քանզի ժողովրդասէր քահանայ եղեր ես, քանզի հօտասէր հովիւ ես, քանզի երգասէր բանաստեղծ ես, խիղճ ունիս, աղիք ունիս, Աւետարան ունիս, գութ ունիս, քնար ունիս ։

Աղբերք՝ որ ի ձորս եւ ծործորս մշտահոս կը ծորեն, սակայն օր մի կայ, ժամ մի կայ նոցա, երբ կը ցամաքին հատնին։ Ուղեւորն՝ որում ծանօթ է այն ակն, կուգայ կը նստի հոն, կը պատմէ իր ուղեկցին թէ ինքն անկէ ջուր ըմպած է երբեմն, թէ քանի՜ ջինջ եւ պաղ-

պղտուն էր նորա վտակն. սա եւս մահկանացուաց այս վախճան ունի եղեր։ Աշնան աղբիւրներ կը ցամաքին․ Այլ վերստին կը տիրէ ձմեռն, վերստին կը ճնշէ ձիւնը իր թաց եւ թանձր բեռամբ երկիրը, յերկունս կը բռ-նուի, եւ մարտին նորէն կը բղխէ ջուրն ի ցամաքելոյն։

Այսպէս, կը դադարին քո արցունք յելս միոյ տարւոյ, եւ ի դարձ միւսոյն՝ վերստին ձմերան՝ զոր ամէ յամ կրես ի քեզ, կրկին լաս, դարձեալ արտասուես։

Հոգերով պրկեալ հոգիդ հոգւոց կը հանես։ Հայր, որ այնքան նուրբ եւ սուրբ զգացմամբ, Աստուածայ-նով եւ մարդկայնով մխիթար եւ կարեկից կը լինէիր Հօր մը, Հօր մը, որ իր որդին նոր թաղեր էր, Որդի մը՝ որ ինչպէս ծնողաց՝ նոյնպէս եւ ազգին մեծամեծ յոյ-սեր իր վրայ ունէր, իր կենաց հետ կը տանէր, կեանք մը՝ որ շնորհօք եւ կատարելութեամբ բեռնաւորեալ էր իբրեւ ծառ մը՝ որոյ ճղերը ծաղկալից են պտղա-բեր ծաղկօք, եւ ինկաւ նա մահու տապարաւ։ Հայրը կուլար, մայրը կուլար, ամբողջ Մկրեանք դեռ կուլան. ազգը կուլար, մենք կուլայինք, դու ալ լացիր, եւ լա-լովդ մեր լացն սփոփեցիր. ես հաղորդեցի Ձեր Հայ-րութեան՝ Մկրեան Հօր սիրեցեալ որդւոյն, իմ հոգե-զոյգ անզոյգ ընկերին, Յակոբիկին մահը. ես մատուցի Մկրեան Հօր՝ Հայրութեանդ գրած մխիթարական քարտէզը. քարտէզդ՝ զոր երբ ընթեռնուին, մոռցնել տուաւ ի նոյն պահուն Հօրն իր Որդեակը, եւ եղբօրս՝ եղբայրս, մեր անմոռանալին եւ միշտ լալին Յակոբիկը։ Դարձանք զքեզ խոկալ, որ այնքան խոր եւ յոյզ հոգ-ւով զգացեալ էիր. ի քեզ հիանալ՝ որ այնքան փափուկ եւ քնքոյշ սիրտ կրես։ Եթէ մեր արցունքներ՝ գետ էին, քոյդ ծովացեալ էր։ Դարձանք մխիթարուիլ ի քեզ՝ որ այնքան համարձակ զերկինս ազատորաց հա-

*մար կը բանայիր, զԱստուած հայրն ի մխիթարութիւն վշտացելոց ի բարձանց ի խոնարհ կածէիր։ Դարձանք մխիթարել ըզքեզ որ քան զմեզ առաւել մխիթարութեան կարօտ մորմոքանօք հեծէիր ։*

*Արդ դու սիրելի մը կորուսեր, հատաւ հատոր մը՝ որ սրտիդ եւ անձինդ հատորին կցորդեալ՝ արիւնդ անունդ եւ շնորհդ կը յաջորդէին։ Ո՞վ զքեզ պիտի մխիթարէ ։*

*Կը տքնիմ, կը ճգնիմ մխիթարել զքեզ, այլ աւաղ, ոչ ոք չափովդ զօրով ունիմ, ոչ այնքան կորով։ Ձեմ զօրեր. ոչ, ես՝ դու չեմ ։*

*Կէնջ՝ Պատկանին պատուաստեալ, երկու գեղեցիկ շառաւիղ, երկու ընտիր արմաւենի. երկու անուշահոտ պըտուղ ընծայեցին։ Լուսեղէնն՝ այս էր քո փեսայի անունն. Իմաստութիւնն, Սոփիա է քո դստեր անուն, իրեն հարսն առաւ. Ինչ վսեմ անուանք, եւ ինչ հրաշալի զուգադիպութիւն ըստ անուանց եւ արգեամբ հանդիսացեալք։ Այո, ի զուգաւորութենէ Լուսեղինին ընդ Իմաստութեան՝ տաճար Հայոց լուսաւորութեան եւ իմաստութեան հիմնեցաւ ի Ստաւրապօլ. ի խնամութենէ երկոցունցն՝ խնամս վայելեցին ուստերք եւ դստերք Ստաւրապօլու ազգայնոց, որոց ձայն երախտագիտութեան ժամանեց մինչ աստէն։ Դագաղ մը կար դրուած հայկական սուրբ տաճարին մէջ, խուռներամ հայկազունք, տեարք եւ տիկնայք, աղջկունք եւ մանկունք, ուսուցիչք եւ ուսանողք, բնակիչք եւ պանդուխտք՝ անոր շուրջը բոլորած, կ'օրհնեն հոգին՝ որ յերկինս թռաւ, կ'օրհնեն դագաղը՝ յորում նշխարք Լուսեղինին ամփոփին, կուլան զիրենք, որ այնպիսի բարերարէ մը, բարեգործէ մը, ազգասէրէ մը արդարեւ Լուսեղինէ մը զրկուեցան ։*

*Իսկ դու կուլաս, տեսնալով Իմաստութիւնն այրի, իւր երկու որբերու դաստակներէն բռնած՝ դաշտաղին կը հետեւին՝ որ գլուսեղէնն կը տանի. հողին կը նային՝ որ գլուսեղէնն կը փակէ. յերկինս կը հային՝ ուր Լուսեղէնն ի լոյս կը հանգչի. ի քաղաքակից ազգայինս եւ ի մերձաւոր ազգակիցս կը յառին՝ որ գլուսեղինին յիշատակ Ջահիւք եւ բանիւք, խնկօք եւ մոմօք կ՚օրհնաբանեն. ուրախ են եւ տխուր, տխուր են եւ ուրախ. Առ քեզ կը դառնան, եւ դու կաղօթես եւ կարտասուես, կը գգուես եւ կը մորմոքիս ։*

*Մխիթարուէ, Հայր, դու որ Հայկազանց դամբարանաց անմահութեան արձանագիրն ես, երգովք եւ հոգւովդ անմահութեան քարոզն ես, մի ընկճիր մահուան աղէտներէն։ Դու պիտի սփոփես զՍոփիան եւ անոր որբերը։ Դու պիտի հովանաւորես զաւակիդ Իմաստութեանը։ Դու պէտք է ապրիս զաւակացդ համար՝ թոռանցդ համար։ Պէտք է ապրիս կրելու համար, գրելու համար. պէտք է ապրիս փառաւորուելու համար, այո, այդ քո մէն մի երաշխէպն եւ ամէն բազմապատիկ փառքեր պիտի փոխարինեն քեզ։ Այսչն է մարդոյն իսկական փառք. այսպէս ասաց Որդին մարդոյ։ Խօսք մը, բառ մը, ձայն մը չունիմ որ կարող լինի զքեզ մխիթարել. Նայինի այրւոյն Այցելուն այց առնէ քեզ. «ՄԻ ԼԱՐ» ։*

Ի 26 Յունիսի 1876. Կ. Պոլիս. ՍՐ. Գ. Վ. [1]

*Ի թիւ 1846 Մասիս լրագրոյ*

---

(1) Հոգեշնորհ Տ. Գարեգին Սրուանձտեանց է մի ի գրագէտ Վարդապետաց Ազգիս, աշակերտ Տ. Տ. Խրիմեան Սրբազանի, եւ Հեղինակ Հնոց և Նորոց, Գրոց և Բրոց, Մանանայ, Շաղանէ, և այլ հայրենասէր ոգւով աշխատասիրութեանց, որովք փառս յաւելու ի նմանիս իւր եկեղեցւոյս Հայաստանեայց:

*Ի վերայ այսր կսկծանաց Ծերունի Քերթողին գրեցի եւ ես զհետեւեալդ.*

---

*Սրտակից իմ եւ Հոգեկից եւ ցաւակից Հայր պատուական,*

. . . . . . . . . . . . . . . . . . .

*Յաւելան յիս ցաւք եւ վիշտք, մանաւանդ թէ նորոգեցան կսկիծք անհնարինք, իբրեւ ընթերցայ ի նամակի Տեառն Գ. Վ. Սրուանձտեանցի զնոր հարուածոյ է խոր խոցեալ սրտիդ, տարաժամ մահուամբ պատուական Փեսայ-Որդեկիդ. փղձկեցայ յարտասուս՝ յորժամ առաջի աչացս բերի զցաւագին վիճակ սուրբ Հօրդ, որ մինչդեռ բազում մասամբք տարաբաղդութեանց պաշարեալ,· լալեաց արժանի բազում ինչ ունէիր արտասուել, եւ հայեցեալ յանագորոյնս հալիլ եւ մաշիլ, եւ որ՝ զանծանօթն եւ զանտեսն աչացդ զոք (1), ողբալ եւ սգալ ճակատագրեալ էիր, զարդիս բազմածանօթ սիրելեաւ եւս մորմոքիլ եւ լալ պարտաւորեցար։*

*Ո՜հ, քանի՜ վիշտք, Աստուած իմ, քանի՜ դառնութիւնք կենաց . . . . . . խնայեա՛ Տէր, գթա՛ Տէր, եւ բա՛ւ եւ չա՛փ համարեա զտանջելդ եւ զխրատելդ՝ թէեւ իցեն դոքա նշանակք անհուն սիրոյ Քո առ Ծերունին վրշտաբեկ . . . ։ Հանգո՛ Տէր, զհոգի հանգուցելոյն ըստ Անուանն ի Լուսեղէն խորանի Արքայութեանդ երկնից, եւ սփոփեալ մխիթարեա՛ զԱյրին պարկեշտասուն, եւ զերկոսին որդեակսն անտիական։*

---

(1) Ակնարկեալ յորդեակն իմ Յակոբիկ , յորոյ վերայ արդարեւ շատ արտասուեաց ծերունին ողբալի իբրեւ զիւր աղիս։

*Ա՛ռ ի վերայ ծնգացդ, Հայր Պատուական, զդոսա՝ զՍրբազդ Քոյ, եւ համբուրեալ եւ փայփայեալ զնոսին օրհնեա Նահապետաբար եւ Քահանայաբար, զի աճեսցին եւ զօրասցին լի շնորհօք եւ իմաստութեամբ, եւ եղիցին մխիթարութիւն մեծ, աղէկէզ Մօրն իւրեանց. Զայն եւ ես մաղթեմ անարժանաբար վասն ամենեցուն դոցա, զի եղիցին լոյս ի լուսոյ ծնեալ, լուսով անմահութեան լուսաւորեալք ։*

*Այժմիկ, քող սեւաթոյր արկի շուրջ զպատկերաւ շնորհալի դիմացդ՝ որ ի սենեկի Սրտիս Հատորոյն ի վերեւ գրասեղանի Նորուն, զի տրտմախառն գոգցես հայէր յիս՝ եւ ոչ քաղցրահամբոյր եւ մխիթարութիւն ներշնչող ականողեօք որպէս յերեկն եւ յեռանդն. եւ ես գձկեալ առաջի Քո՝ լացի եւ ողբացի, յիշեալ զՑիշատակս իմ եւ Քո, զՑոյս եւ զիղձ՝ իմ եւ Քո, զցաւ եւ զվաստակ՝ իմ եւ Քո, զԱստուած զԱրարիչն՝ իմ եւ Քո, զոր օրհնեմք անդադար անլռելի ձայնիւ։*

*Ի Նա միայն յանձն արարեալ զամենայն տուն Քո եւ զորդիս եւ զընտանիս եւ զԹոռունս, եւ զամենայն բաղձանս բարի եւ գորովալիր սրտիդ։*

*Մնամ համբուրիւ Սիրոյ՝ վշտալի որդի Քոյ*

**ՅՈՎՀ. ՔՀՆՅ. ՄԿՐԵԱՆ**

**Ի 25 Ցունիսի 1876, ի Կ. Պոլիս.**
**Ի Պատրիարքարանի Հայոց**
**Գում—գաբու :**

(ԹԻՒ 57)

*ԵՂԵՐԱԿԱՆՔ Տ. Վահան Վարդապետի Տէր Մինասեան Պարտիզակցւոյ, իբրեւ կնիք Մահարձանին.*

# ԵՂԵՐՔ

## Ի ՏԱՐԵԼԻՑ ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ

## ԱԶԳԱԿԱՆԻ ԻՄՈՅ ԵՒ ՄՏԵՐՄԻ ՍԻՐԵԼՒՈՅ

## ՅԱԿՈԲԱՅ Տ. Յ. ՄԿՐԵԱՆ

### Ա.

*Հոն էի, որ մարդկութեան քնարանն է. հոն, ուր խորին խաղաղութիւն եւ լռութիւն եւ եթ կը տիրէ. հոն, ուր կենդանի աշխարհն իր շփոթն ու խռովը չ'ունի, զի հոն կը լռեն միտք եւ կիրք. ես հոն՝ նիստ ի դարեւանդ մի, սիրտս ի սէր զեղուն՝ կը խորհէի եւ միանգամայն կը վճռէի, թէ մարդն ունի իւր ապառնին, իւր կեանքին սահմանուած ապառնի վախճանը, բայց բաբէ, եւ կը մրմնջէի, թէ ահա այն ունայնութիւն է։*

### Բ.

*Ունայնութիւն, եթէ մարդուն ապառնին, ինչ է ուրեմն հէգ մարդը, ինչ կայ ուրեմն իր առջեւ, ինչո՞ւ ուրեմն մարդկային սրտին զգայուն թելեր ի յուշ կը*

թրթռան եւ ի սէր կը յանգին։ Միթէ նա լոկ զմահ մի թախիծի եւ կսկիծի, միթէ զգածումն՝ արդարեւ խաբուսիկ է, ինչպէս կայ յոյսը, եւ ոչ լոյսը, լոյս այս քնարանիս մէջ։

## Գ.

Հերուն ճիշդ այսօր՝ մի տխուր յուղարկաւոր էի, աշխարհի ծաղկազարդն էր. բայց աւաղ, մարդկային ծաղիկ մի կը խամրէր, ի հող կը հանգչէր։ Արցունքն այն ատեն այդ ծաղիկը կ'ոռոգէր յուսով մը՝ թէ սրտի ցօղովը դա կը բացուի, կամ տխուր սրտեր կը բացուին, կ'ամոքին ի սփոփ։ Բայց ահա ոչ այդպէս, ուրեմն սին է յոյս, եւ ի նանրութեան կեանք մարդոյ։

## Դ.

Նանրութիւն, ահ, Աստուած իմ, միթէ այս ստութիւն է. — թերեւս, վասնզի ահա այժմ սրտեր լռին են, զի ամայացած են, զի չիք նա, որ լրումն էր սրտի։ Սիրելւոյն խօսքն ու լսօղքն են մեր սրտին զեղոյթն ու մտքին աւիւն։ Կ'երթայ որդի մարդոյ, ահա այնուհետեւ պարապութիւն սրտի, հետեւաբար յընդունայնութեան է կեանք մարդոյ։

## Ե.

Ով եմ ես, եւ զինչ կը խորհիմ. — մարդոյ ներկայն ու ապագայն, ներկային մէջ յոյս, իսկ ապագային մէջ տարակոյս։ Ցոյսն ի խոհ եւ ի գործ զիս կը մղէ, բայց

տարտակոյան անդէն զիս կը լքէ։ Շուար իմն գոգ զիս կը պաշարէ, կը կաշկանդէիմ կը շղթայիմ, եւ ահա ձայն մի զիս կ'սթափէ. «Բաւէ, որդի մարդոյ։»

## Ջ.

Քայլել. բայց դէպ ուր, հա. բայց մինչեւ հոս քանի քանի՜ հեղ գլորիլ եւ յիմարիլ ունիմ. եթէ այսպէս՝ ուրեմն ապրիլն է տառապիլ, իսկ քնելն է արբշիլ, եթէ այդ քունին մէջ երազել կայ. ապա թէ ոչ՝ քնելն ապշիլ է, կամ աւելի ճիշդը մեռնիլ է։

## Է.

Քալեմ, բայց մի՛ ինձ առաջնորդ. — բանը, ամուլ, ապիկար դա, աշխարհի քարուտ ու ժեռուտ ճանապարհէն քալել ու լքել. քրտնիլ ու յոգնիլ, մերթ գլորիլ եւ մերթ կանգնիլ, եւ հուսկ հասնիլ կամ ի գագաթ բարձրութեան — մարդկային կատարելութեան, կամ ի վիհ խորութեան — մարդկային նուաստութեան; եւ անդէն գոչել. «Ամենայն ինչ կատարեալ է։» Ահա այս է մեր կեանքն ու վախճան, կամ փառքն ու անարգանք։

## Ը.

Ով դու Յոյս, դու առաջնորդ մարդոյ, դու հոգւոյս լոյսը, դու մտքիս խանդ, սրտիս սիրակաթ եռանդ, քո առաջի կը խոնարհիմ ես եւ կը խնկեմ, դու այս խունկ թռուն թեւոցդ վրայ առած կը սլանաս ի վեր, ի վեր

անդր, հոն կը ծխես, հոն ուր սէրն իմ կաթողին, կը լռանայ:

## Թ.

Իսկ դու ով Սէր, դու յերկինս ըղձակաթ կը լուղիս մեր ամպերէն վեր, հոն դու աստղերու հետ կը հրճուիս. ա՛հ, հոն են մեր սրտին աստղերը: Ես իսկ այժմիկ զգածուած կ'ըղձամ եւ կը յուսամ հոն թռիլ եւ լու-ղիլ, ուր զովանայ տապ սրտիս, ուր հոգեզմայլ ներք ծծէի, ապրէի, պարարէի եւ լիանայի յաւիտեան :

## Ժ.

Ափսոս, ահա գարունն է եկեր հասեր, ահա տապա-րակն ու աղամխին սիրազեղ կը վուվուեն եւ կը հնչեն, կանաչ դալարիք կը ծլին, ծաղիկներ կը փթթին, դաշ-տային ակոսներու մէջ յոյսը կը բողբոջի, բայց ինչու, մինչդեռ մարդկային աշունը կայ. չ'կայ գարունը, որ-պէս զի ծլի ծաղկի մարդ-ծաղիկը, որոյ հունտը ար-դաւանդ հողս իր մէջ ամփոփած է:

## ԺԱ.

Այո, ահա այս ամայութեան մէջ թռչնիկ ցնծագին կ'ողջունէ ծաղիկ կոկոնին դեռափթիթ թերթիկը, զմայլագին կը դիտէ եւ կը ծծէ նորա թոյրն ու բոյր։ Իսկ մարդն ամէն ատեն ի նանիր պիշ ի շիրիմ կը յու-սայ, որ սրտին ծաղիկը բացուի, եւ անդէն իր սրտիկը բացուի. ի զուր կ'սպասէ այդ երջանկաւէտ օրին, ի

նանիր տրտում արցունքով կ'ուռոգէ սեւ հողը՝ ի զուր սիրտն ի տրոփ, հոգին լի ի յոյս կ'ըղձայ . . . բայց ա՛հ, հուսկ յուսահատ կը հեծէ, հեկեկանքն իսկ ոչ ոք կը լսէ, ոչ երկինք եւ ոչ բնութիւն ։

## ԺԲ.

Ա՛հ, « Եկեսցէ արքայութիւն քո, » ո՛վ Տէր, ժամանակը կը բովանդակուի մարդկային սրտին մէջ. բայց արքայութիւնդ՝ պիտի գայ արդեօք այն ժամն, յորում, Տէր, վայելել պիտի արժանաւորիմք այն մեծ շնորհքը, որով միայն Սէրն ու Յոյս՝ որք ի մեզ անհուն են, պիտի լրանան, փափաքն ի մեզ հանդարտի. իսկ յոյսը ճշգրտի եւ հաստատուի ։

## ԺԳ.

Լսած եմ յՈւլնի (1) Հայ մամիկէ մի, թէ այգուն շող շաղը՝ լուսնեկին է աչքին արտօսր, երբ դրախտին մէջ առաջին անգամ ցայգանուագ սոխակին ձէնիկն է մարել ։ Հաւատամ, բայց երբ մեր սրտին ձէնիկը կը մարի, ծո՛վ կը ցօղէ մարգարիտ արտասուք, եւ ծուր կը շաղուի ։

## ԺԴ.

Կը հարցունեմ, ծուր արտասուել . ո՛հ, խորհիմ միանգամ թէ ուստի՞ արտասուել, ուստի՞ կը բղխի եւ կը հոսի այս աղի արտօսրը, որ մեր սիրտն ու հոգին կը պաղըշտկէ եւ կը հանդարտէ։ Անշուշտ սիրահոսան մի աղ-

(1) Գիւղ մերձ ի Զէյթին, ի Կիլիկիա։

թիւրի ակն կայ սրտի մէջ, որ քանի անգամ դեռւայ ի յուշ աչքերուս, կը կաթկթի եւ մինչեւ իսկ շատ հեղ կը հեղ-հեղի եւ կ'ողողէ ամբողջ մեր հոգին ու մարմինը։

## ԺԵ.

Բայց մինչ իմ աչքս կը դառնի, մի խշխշուք սիրտս կը մրմռէ, մի հնհնուք միտքս կը շփոթէ, ահա մի պատկեր հոգւոյս առջեւ կը ներկայանայ, կը վեհա-նայ եւ կը բարձրանայ։ Ես հոգեզմայլ փարիլ կը փա-փաքիմ։ Հաւատոյ Նախատակին, Աստուծոյ միակ ճշգրիտ տիպարին պատկերն է այն։ Ուր այս բառքս կը նշմարեմ ի դրուագ, «Հաւատալ եւ Անմահանալ։»

## ԺԶ.

Հաւատամք, առ Յ. — Աստուծոյ։ Անմահանալ. Յր-պէս. — Աստուծով։ Ահա այս իսկ է խորհուրդ մեծ եւ աքանչելի, գաղտնի եւ միանգամայն յայտնի։ Գաղտնիք յանուն յուսոյ, յայտնիք յանուն լուսոյ, Բանին լուսոյ։ Կ'ոգեւորիմ արդարեւ, երբ յուսով եւ հաւատով ի վեր կը նայիմ եւ կը դաւանիմ այսպէս, թէ «Աստուած է միայն կեանք եւ Անմահութիւն։»

## ԺԷ.

Միայն չարութիւնն ու ամբարշտութիւնն, ո՛վ Տէր, երբ կը ծանրանայ եւ կը ճնշէ ու կը ճզմէ արդար գլուխ-ներ, թող շանթուին արդարութեանդ միակ ակնարկէն, որպէսզի առաքինութիւնը յաղթանակէ, Աստուածու-թեանդ յաղթանակէ։

## ԺԸ.

Բայց կը խոստովանիմ թէ տառապելութիւնն արդէն արեւու պէս կը փայլի միշտ, մութն ու խաւար կը խուսէ քու առջեւէն։ Մարդկութիւնն յաւիտենական վկայ է, վկայ յանուն յիշատակի տառապիններուն։ Գերեզմանն իսկ թէեւ տխուր եւ անշուք, բայց մի միշտաբարող արձան է տառապիններուն փառաց, կոթո՛ղ յաղթութեան։

## ԺԹ.

Ուստի եւ ես կ'երդնում ի սեւ հողդ, ՅԱԿՈԲԻԿ, թէ անմահութիւն մի ունիս դու եւ մեծ յաղթութիւն, զոր այժմ կը վայելես դու յանուն հաւատոյ եւ յանուն բարւոյն։ Երբ այն դժխեմ առաւօտուն, մինչ արուսեկին կը յաջորդէր արեւ, եւ Արեւդ կը մարէր, երբ տխուր սենեկիդ մէջ կենաց եւ մահու մեծ խորհուրդը կը կատարուէր, այն պահ մի ահաւոր եւ խորին լռութեան մէջ երբ դու ճենճերեցար եւ ընծայեցար Երկնի, ես մահճիդ քովնտի աղօթող եւ հսկող պաշտօնեայ Քրիստոսեան, ես ձայնեցի անդէն.

«ԱՆՄԱՀԱՑԱ՛Ի»

Եւ ահա հեծք եւ լացք, ողբ եւ կոծ . . . . ։

## Ի.

Այսօր երբ աշխարհի Ծաղկազարդն է, ես ահա կրկին աղօթող եւ հսկող՝ յարգադիր շիրմիդ ի վերեւ մէնիկ եւ լռիկ ծաղիկ կը բերեմ ու կը ցանեմ ի նուէր

*յիշատակի Սիրոյդ. Դուն ա՛ռ զայդ ծաղիկ եւ ընդ-յառաջ փութա Փրկչին վերին Երուսաղէմի մէջ, եւ այս բարբառդ թող ոլորտանայ հոն Երկնից մէջ, եւ հոս խակ՝ երկրիս մէջ թող լսուի միշտ եւ յեղյեղուի թէ՝ «ՈՐ ՀԱՒԱՏԱՑ ԿԵՑՑԷ։»*

*Այդ հաւատով իջէ՛ւ եւ ամենեցուն ննջէ՛լ ի Տէր.*

1877 Մարտ 20. **ՎԱՀԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ** (1)

---

(1) *Որդի ի Քրիստոս հանգուցեալ Տէր Մինաս քահանայի Նապիկեան ի Պարտիզակ, և եղբայր Փեսայի-Սուլթանիկ աստիճանաւէր զատեր խմոյ: Սոյն երիտասարդ և զգօն Վարդապետ՝ եռանդուն ջանիւք իւրովք և հմտութեամբ լիցի պարծանք իւրոց հայրենեաց, և փառք եկեղեցւոյ՝ շնորհիւ Տեառն :*



# 27 Մարտ 1876

# ՆԱԽՆԻ ՅԻՇԱՏԱԿՔ

ԵՒ

# ՄԱՀԱՐՁԱՆՔ

ԱՅԼ ԱՐԴ՝ յետ այսօրինակ տխուր զգածմամբ եւ մորմոքեալ սրտիւ կանգնելոյ զՄԱՀԱՐՁԱՆ Ամենասիրելի Որդւոյս, նուիրական պարտաւորութիւն համարիմ կանգնել եւ դրոշմել աստ առ նովաւ եւ զՄահարձանս Նախահարց Նորա՝ եւ Գերդաստանիս, հանդերձ համառօտագոյն ծանօթութեամբք զնոցանէ, որպէս Նախնի Յիշատակարան, զի առանց Նախնեաց չիք սերունդ, եւ ոչ առանց Հարց՝ Որդիք, եւ որդիք պարտին երախտագիտութեամբ պատուել միշտ՝ զյիշատակս Հարց իւրեանց եւ Նախահարց։

1. ԴԱՒԻԹ ծնանի զՍողոմոն.

2. ՍՈՂՈՄՈՆ ծնանի զՄկրտիչ.

3. ՄԿՐՏԻՉ ծնանի զՅովհաննէս՝ որ թաղեալ կայ ի Պարտիզակ, եւ ունի Տապանագիր օրինակ զայս.

## ՏԱՊԱՆԱԳԻՐ ՀԱՒՈՅՆ ԻՄՈՅ



Ի ՄԱՀԱՍՏՈՒԵՐ ԾՈՅ ԴԱՄԲԱՆԻՍ
ՀԱՆԳՉԻՆ ԱՒԱՆԴՔ ՈՍԿԵՐԱՑ,
ՈՐ ՀԱՒԱՏՈՎ ԵԿԱՑ ՅԱՍՏԻՍ
ՍԻՐՈՎ ՅՈՒՍՈՅՆ ԵԹԵՐԱՑ։
ԶՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԵԱԼ ԶԱՆՈՒՆ
Ի ՄԿՐՏԻՉ ԻՒՐ ՀՕՐԷ
ԵՐԿՈՒՑ ԿՑԵԱԼ ՅԵՕԹԱՆԱՍՈՒՆ
ԶԱՄԱՑ ԻՒՐՈՅ ԹԻՒ ՅԱՅՏՆԷ։
ՅԱՆԵՂԾԱԿԱՆ ՍԻՐՈՅՆ ԳՈՐՈՎ
Ի ՅԻՇԱՏԱԿ ՀԱՅՐԱԿԱՆ
ՅՈՐԴԻՈՅ ԻՒՐՈՅ ԿԱՆԳՆԻ ՃՔՈՎ
ՍՈՅՆ ՎԻՄԱՏԱՃ ՄԱՀԱՐՁԱՆ։

**Թուին ՌՄՀԷ. (1828)**

*Հաւն իմ Աղա Յովհաննէս՝ յորոյ անուն վերակոչեալ եմ ես, ժառանգեալ զբարեպաշտութիւն Հօրն իւրոյ Մահտեսի Մկրտչի, առաքինաբար տանի զդժբաղդութիւնսն հասեալս ի վերայ տան իւրոյ. զի գոլով հայր չորից դստերաց եւ երկուց ուստերաց, չ՚կարէ կառավարել զտուն իւր ըստ արժանւոյն, եւ պարտաւորի երթալ նախ յԱտաբազար եւ ապա ի Կ. Պօլիս, աշխատիլ արհեստիւ հօրն՝ (դանակաշինութեան) մինչեւ ի զարգանալ որդւոյ իւրոյ Կարապետի Հօրն իմոյ, ընդ որ մխիթարեալ առ յապայն՝ կնքէ զկեանս իւր բարի վարուք եւ ջերմեռանդ հաւատով։*

Ցանուն Հօր սորա բարեյիշատակ Մահտեսի Մկրտչի, կոչի ազգատոհմ մեր ՄԿՐԵԱՆ, կամ ըստ այլազգեաց Մըկըր օղլու ։

Հայր Մահտեսի Մկրտչի Սողոմոն, զորմէ չունիմք ծանօթութիւն հաւաստի, որպէս եւ զհօրէ սորա զԴաւթէ, որ կարծի լինել մին յեօթն տանուտէրանց հիմնարկողաց Պաղչէճիկ (Պարտիզակ) գիւղի՝ որ է հանդէպ քաղաքին Նիկոմիդիոյ, գաղթեալ՝ որպէս ես հաւանեալ եւ ստուգեալ եմ ի Պաղչէճիկ գիւղէ Սեբաստիա (Սըվազ) քաղաքի, յաւուրս Սուլթան Մուրատ Դ. արքայի Օսմանեանց, որ յամին 1633, յարշաւել իւրում ի վերայ Պաղտատի, անցեալ ընդ Նիկոմիդիա (Իզմիտ), եւ տեսեալ դիտակաւ ի հանդիպակաց լերին ի բարձրաբերձ ծառաստանին զխրճիթս ի ծառոց շինեալ, խնդրեալ որոնէ եւ իմանայ զնոր հաստատութենէ գիւղին ։

Ընդ նախնեաց մերոց այս՝ Հայոց գաղթելոց ի Սեբաստիոյ, գտանին եւ նոյնքան տունք Տաճկաց՝ փախուցեալք եւ նոքին յահէ եւ ի բռնութենէ Ճէլալեանց, այլ սոքա յետ 20—30 ամաց ելեալ գնան ի Պաղչէճիկէ ի Գումլար գիւղն Տաճկաց՝ հնարիմաց Ջանիւք իշխանի ժամանակին ։

Իսկ Մահտեսի Մկրտիչ Նախահայր մեր՝ այր բարեպաշտ եւ երկիւղած յԱստուծոյ, ունեալ զընթերցանութիւն եւ զգիր եւ զարհեստ դանակաշինութեան, ուսուցանէ բազմաց աննախանձաբար, որոյ զաշակերտս ծերացեալս տեսեալ է իմ եւ խօսեցեալ ընդ նոսա. առնէ բազում բարեգործութիւնս, եւ լինի օժանդակ կարօտելոց եւ ձեռնտու աղքատաց, որք իբրեւ առ հայր համարձակագոյնս յաճախեն առ նա յամենայն նեղութիւնս իւրեանց՝ «Հաճի Մկըր պապուն երթանք» ասելով ։

*Սա կանգնէ զեօթն աղբիւրս յայլ եւ այլ կողմանս գիւղին, ուր պակասութիւն տեսանէ ջրոյ, ի դիւրութիւն ժողովրդոց եւ արջառոց եւ գրաստուց գիւղին։ Գնայ երկիցս ի Ս. Երուսաղէմ, նոյնպէս երկիցս ի Ս. Էջմիածին, որոյ ի վերջնումն՝ յութսնամեայ հասակին, թողեալ որդւոյ իւրոյ այսմ Աղայ Յովհաննու զստացուածս իւր, բայց առեալ զպատրաստի դրամն, հրաժարի յաշխարհէ՝ եւ գնացեալ դադարէ ի բնագաւառն Հայոց ի Վասպուրական, ի վանս Կտուց Ս.Նապատ կոչեցեալ, եւ չինէ անդ եւս իւրով արդեամբ զջրշեղջ մի (մարնլըճ) մեծ՝ առ ի հաւաքումն անձրեւային ջրոց, զի մինչ ցայն վայր ի հեռուստ բերէին զջուր ի պէտս միաբանութեան, զի եւ ջուր ծովակին Վանայ դառն է յոյժ եւ լեղի։*

*Աւարտեալ մեծահաւատ Աստուածասէր Ծերունւոյս զչինուածն, եւ ինքն յետ երկուց ամաց կնքէ զառաքինի կեանս իւր ի հիւղակի միայնակեցութեանն սրբութեամբ, Սաղմոս ի ձեռին՝ իբրեւ թէ ննջեալ ի քուն, եւ թաղի պատուով ի դիրս հանգստեան վանացն։ Հոգեսէր միաբանութիւնն կատարէ ամ ըստ ամէ յիշատակութիւն Երախտաւոր Ծերունւոյս աղօթիւք Հոգեհանգստեան։*

*Յիշատակ Արդարոց օրհնութեամբ եղիցի։*



## ՏԱՊԱՆԱԳԻՐ ՀԱՆԻՈՅՆ ԻՄՈՅ



**ԱՆՈՒԱՄԲ ՍՈՒՂԹԱՆ ԱՐԴԵԱՄԲ ՏԻԿԻՆ
ԴՈՒՍՏՐ ԱԶՆԻԻ ՎԱՐԴԵՐԵՍԻՆ
ԱՌԱՔԻՆԻ ՎԱՐՈՒՔ ԿԱՑԵԱԼ
ԻԲՐԵՒ ԶՎԱՐԴ ԸՆՏԻՐ ԲՈՒՍԵԱԼ
Ի ԺԱՆՏԱԽՏԷՆ ՀԱՐԵԱԼ ԺԱՆԵԱՅ
ՔԱՌԱՍՈՒՆ ԵՒ ՀԻՆԳ ՀԱՍԵԱԼ ԱՄԱՑ
ԿՆՔԷ ԶԿԵԱՆՍ ՓՈԽԻ ՅԱՍՏԵԱՅ
ՅԱՆՄԽԻԹԱՐ ՍՈՒԳ ԸՆՏԱՆԵԱՑ.
ԹՎԻՆ ՌՄԾԲ. (1803)**

*Այս ազնիւ տիկին առաքինի եւ բարեպաշտ արդարեն, մեռանի յառաջ քան զհաւն իմ Աղայ Յովհաննէս մահտեսի Մկրեան, որով եւ քայքայի ընտանեկան համգրստութիւն նորա, զի վեցեքին պաւակունքն անչափահաս գոլով, պարտաւորի ամուսնանալ վերստին ընդ այլ կնոջ՝ բերեալ յՕվաճըխ գիւղէ, որ կործանէ զտուն նորա եւ մեռանի անզաւակ. ապա ածէ զայլ կին ի Մերտէկէօզ գիւղէ, որոյ եւ ես հասեալ տեսի, եւ սա եւս մնայ անզաւակ։ Իսկ Վարդերեսն յիշեալ ի մահարձանիս՝ եղեալ է այր ազնիւ եւ խոհական իշխան. հայր Տէր Գրիգոր Քահանայի, եւ մահտեսի Միքայէլի, եւ Հանւոյ իմոյ այս բարեբարոյ Սուլթան Տիկնոջ։ Սա՝ յորժամ դեռ եւս յութնամեայ հասակին լինի որդեակն իւր Կարապետ՝ գուշակէ թէ լինելոց է նա իշխան գիւղին եւ բարեկարգիչ ժողովրդեան. եւ զընդհակառակն գուշակէ եւ վասն միւս որդւոյն Մկրտչի, եւ լինի այնպէս։ Ապա յամին 1803 ի ժանտախտէն ճարակելոյ ի ժամանակին հարուածեալ՝ կնքէ զկեանս իւր առաքինութեամբ։*

ՏԱՊԱՆԱԳԻՐ ՄԻԱԿ ՔԵՌՆ ԻՄՈՅ



ԶԱՃԻՒՆ ՈՍԿԵՐԱՑ

# ՍՈՒԼԹԱՆ ՏԻԿՆՈՋ

ԴՍՏԵՐ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱՅԻ ՄԿՐԵԱՆ

ԾԱՄԿԷ ՎԷՄՍ ԱՅՍ.

Ի ՍՈՒԳ ԾՆՈՂԱՑՆ ՈՐԴՒՈՑ ԵՒ ՏՈՀՄԻՆ

ՆՆՋԵԱՑ Ի ՏԷՐ

*ՅԱՄԻՆ* 1851 *ՕԳՈՍՏՈՍ*·20. *ԿԵՑԵԱԼ ԱՄՍ* 32.

ԶԱՌԱՔԻՆԻ ՎԱՐՈՒՑ ՊՍԱԿ
ԶՎԱՐԴՍ ԸՆԴ ՇՈՒՇԱՆՍ ՍՊԻՏԱԿ
ՀԻՒՍԵԱԼ ՇՔԵՂ ԵԴ Ի ՃԱԿԱՏ
ՅԱՄԸՍ ՍԱԿԱՒՍ ԲԱԶՄԱՇԽԱՏ։
ՀԱՆՃԱՐ Ի ՄԻՏՍ ԵՒ ՇՆՈՐՀ ՀՈԳԻՆ
ՊՃՆԵԱԼ Ի ՊԵՐՃ ՓԱՌՍ ԿՐԿԻՆ,
Ո՛Հ ԹԷ ԱՌ ԻՒՐՍ ԴԵՌ ԿԱՅՐ ՄՆԱՅՐ . . .
ՎԱ՛Ղ ԶՆԱ ԵՐԿԻՆՔ ԿՈՉԵՑԻՆ։

ՇԻՋԵԱԼ ՅԱՅՆԺԱՄ ԿԵՆԱՑՆ ԼՈՅՍ
ԵՏԵՍ ԶԵՐԿՆԻՑՆ ԱՐՇԱԼՈՅՍ։

*Անդրանիկն ի զաւակս ծնողաց իմոց Քոյր իմ Սուլթան այդու անուամբ յորջորջեալ ի յիշատակ հանգուցեալ մօր՝ Հօրն իմոյ, որպէս դիմաց եւ կերպարանացն տեսլեամբ, նոյնպէս մտացն հանճարով եւ մայրանման առաքինութեամբ եւ խոհականութեամբ անհամեմատ*

էր. եւ վասն զի միակ դուստր էր՝ ի տուն իւրեանց պահեն զայն ծնողք իմ եւ յետ ամուսնութեանն ընդ Յարութիւնի Պօղոսեան ։

Եթող զերիս դստերս եւ զերկուս ուստերս, զորս խնամեցին ծնողք իմ եւ առ յապայն։ Բազում ցաւոց եւ վշտաց եղեւ պատճառ վաղահաս մահ Քեռս՝ ծնողաց իմոց, մանաւանդ Մօրս՝ որ յամենայն ժամանակս իւր եկաց տրտմութեամբ եւ ամենօրեայ արտասուօք . . . ։

Ողբալի է կորուստ մտացի եւ խելահաս Քեռ, հաւասար կորստեան Մօր սիրելոյ՝ սակայն վա՛ղ զնա Երկինք կոչեցին ։



### ՏԱՊԱՆԱԳԻՐ ԵՂԲՕՐ ԻՄՈՅ



Ի ՅԱՒԵՐԺ ՅԻՇԱՏԱԿ

## ԱԶՆԻՒ ՅԱԿՈԲԻԿ ԱՂԱՅԻ Կ. ՄԿՐԵԱՆ

ԳԱՂՁԷՃԻԿՑԻՈՅ

ԵԴԱՒ ԱՅՍ ՄԱՀԱՐՁԱՆ

ԶՈՐ ԹԱՆԱՆ ԱՐՏԱՍՈՒՔ ԾՆՈՂԱՑՆ

ԵՒ ՏՈՀՄԻՆ:

ԵԼ ՅԱՍՏԵԱՑՍ ՅԱՄԻՆ 1852 ՅՈՒԼԻՍ 29

ԿԵՑԵԱԼ ԱՄՍ 30:

ԶՈՒՍՄԱՆՑ ՀԱՆԴԷՍ ԸՆԴ ՎԱՐՍ ԲԱՐԻ
ԿԱՊԵԱԼ ՄԻ ՓՈՒՆՋ ՄԻՆՉ ԻՒՐ ՍԻՐՏ
ՍԻՐՈՎ ՓՐԿՉԻՆ ՅԱՒԷՏ ԱՐԻ
Ի ԽԱՉՆ ՀԱՅԷՐ ԽՆԴԱՄԻՏ.
ՀԱՒԱՏ ԵՒ ՍԷՐ ԵՒ ՔԱՂՑՐԻԿ ՅՈՅՍ
ՏԿԱՐ ԿՐԾԻՑՆ ԶՕՐԱՒԻԳ
ԶՄԱՀ ՈՂՋՈՒՆԵԱՑ ՍԱ ՀԵՇՏ Ի ԼՈՅՍ
ՔԱՆ ԶՈՐ ԵՐԲԷՔ ՔԱՂՑՐ ԻՆՉ ՉԻՔ:

ԵՒ ՄԻՆՉ ԱՐԵԱՆՆ ՇԻՋԱՒ ՋԵՐ
ԶՀՈԳԻՆ ՓՐԿՉԻՆ ԵՏ ՆՈՒԷՐ: (1)

*Յակոբիկ Աղա եղբայրն իմ ցանկալի՝ ծնեալ յամի Տեառն 1822, կրտսեր քան զԹոյր մեր եւ աւագ քան զեղբարս իւր Սարգիս, Յովհաննէս եւ Յարութիւն, ուսեալ էր զլեզու եւ զդպրութիւն Ազգիս՝ ի վարժատան վանացն Արմաշու ի մեծանուն վարժապետէ պատուելի Մուրատայ Աբրահամեան Բերիացւոյ. ապա ի Կ.*

---

(1) ԶՏապանագիրս Քեռ. և Եղբօր իմոյ գրեաց Գ. Յակոբ Ոսկան վարժապետն. իսկ Տապանագիրք Հաւուն իմոյ և Հանւոյ է շարադրութիւն Արծրունի Տէր Գէորգ Աւագ Քահանայի Խասգիւղի Կ. Պօլսոյ:

Պօլիս զընթերցանութիւն եւ զգիր Տաճիկ բարբառոյ, եւս եւ Իտալական լեզուի։ Ուշիմ, խոհեմ եւ ծանրաբարոյ ընթացիւք իւրովք, լինի օժանդակ բազմադիմի գործառնութեանց Հօր իմոյ, եւ ստանձնէ զՏեսչութիւն վաճառատան մերոյ ի Կ. Պօլիս յՈւն Քաբան իբր ամս 12։ Ի բազում զբաղմունս իւր սիրէր զընթերցանութիւն յոյժ. եւ բաժանորդ լեալ Լրագրաց ժամանակին՝ Արշալուսին Ջիւանիոյ եւ Բազմավիպին Վենետկոյ՝ առնոյր նաեւ զամենայն նորատիպ մատեանս, որով օրինակ բարի հանդիսացաւ եղբարց իւրոց։ Սիրելի էր ամենեցուն իւրով հեզ եւ քաղցր բնաւորութեամբն մանաւանդ իբրեւ մարդ բարոյական կենցաղավարութեամբն, այլ չեղեւ երջանիկ յամուսնութեանն, զի եւ չեթող զաւակս յաջորդս ինքեան։

Սիրէր զԱզգ իւր եւ զԵկեղեցի ողջամիտ հաւատով, եւ Քրիստոնեայ էր ջերմեռանդ։ Սիրէր եւ զեղբարս իւր անհամեմատ սիրով, եւ առաւելապէս հաճոյակատար լինէր ինձ՝ վասն ընթերցասիրութեանս։ Ի բնէ տկար գոլով հիւանդացաւ ախտիւ բորբոքման աղեաց եւ աւելի քան զմի ամ, տառապեցաւ ի մահիճս ցաւոցն, եւ յայնժամ ակներեւ տեսաւ ուղղութիւն հաւատոյ նորա, եւ հանդէս Աստուածպաշտութեան. զի համբերութեամբ աղօթէր, եւ միշտ տայր ընթեռնուլ ինձ զԱւետարան փրկութեան մերոյ։ Ի վերջին աւուրս իւր քանիցս մերձեցաւ ի Խորհուրդ Մարմնոյ եւ Արեան Տեառն, եւ զբազում բանս խրատականս խօսեցեալ ծնողաց իւրոց եւ եղբարց՝ կնքեաց զկեանս իւր այսու բանիւ. «Տէր, հան ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ.» ի 29 Յուլիսի 1852, յառաւօտու երեքշաբթի, ի ժամ 2 $^{1}/_{2}$։

Ծնողք իմ մորմոքեցան յոյժ ի վերայ մահուան սիրելի որդւոյ իւրեանց, ոչ նուազ եւ եղբարքս նորա ողբացաք զզգալի կորուստ գերդաստանի մերում,

ՏԱՊԱՆԱԳԻՐ ՀՕՐ ԻՄՈՅ



*Ի ՀԱՒԱՍՏԻՍ*

ՋԵՐՄՆ ՍԻՐՈՅ ԵՒ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ԵՒ

ՅԱՆՋԻՆՋ ՅԻՇԱՏԱԿ

ԲԱԶՄԱՊԱՏԻԿ ԳՈՐԾՈՑՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ

ՄԵԾԱՊԱՏԻՒ

ԿԱՐԱՊԵՏ ԷՖԷՆՏԻԻ ՄԿՐԵԱՆ

ԱԶԳԱՍԷՐ ԻՇԽԱՆԱՊԵՏԻ

ՊԱՂՉԷՃԻԿ

ԳԻՒՂԻ·

ՄԱՐՄԻՆ ԵՒ ՆՇԽԱՐՔ ՆՈՐՈՒՆ ՈՍԿԵՐԱՑ

ՊԱՏԻՈՎ ԱՄՓՈՓԻՆ

ՅԱՅՍ ՍՐԱՀ ՍՐԲՈՒԹԵԱՆՑ

ՈՐ

ԽԼԵԱԼ ՊԱՏՃԱՌ Ի ՀԻՄԱՆՑ ԿԱՌՈՒՑՄԱՆ

ԵԿԵՂԵՑԻՈՅՍ ԵՒ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

ԵՒ ՍԿԻԶԲՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՕԳՏԱԻԷՏ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ

ԵՒ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆՑ

ՊԵՐՃ Ի ԲԱՆՍ, ՎԵՀ Ի ԴԷՄՍ

ՉՔՆԱՂ Ի ԳՈՐԾՍ

## ՀԱՅՐ ԱՂՔԱՏԻՆ, ՄԵՐՁ ՏՆԱՆԿԻՆ

## ԲԱԶՈՒԿ ԱԶԳԻՆ.

ՓԱՌԱՒՈՐԻ՛, ՊԱՏՈՒԻ՛

ԱՐԺԱՆԱՒՈՐԻ՛

ԱՆՈՒԱՄԲ ԵՒ ՇՔՈՎ ԵՒ ԸՆԿԱԼՄԱՄԲ՝

ԿԱՅՍԵՐԱԿԱՆՆ ՄԷՃԻՏԻԷ ՊԱՏՈՒԱՆՇԱՆԻ

ՆՆՋԵԱՑ Ի ՔՐԻՍՏՈՍ ՅԻՍՈՒՍ

Ի ՎԱԹՍՆԵՐՈՐԴԻ ԵՐՐՈՐԴԻ ԱՄԻ ԿԵՆԱՑ ԻՒՐՈՑ

Յ12 ՄԱՅԻՍԻ 1858 ՌՅԷ։



ՅՈՒԽՏ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՍԻՐՈՅ

ՈՐԴԻՔՆ ՀԱՅՐԱՍԷՐՔ ԵՒ ՍԻՐԱԶՈՒՆՔ

ԿԱՆԳՆԵՑԻՆ

ԶԱՅՍ

ՄԱՀԱՐՁԱՆ

Զբաղմադիմի հանդամանաց կենաց մեծահամբաւ Հօր իմոյ՝ արժան էր արդարեւ երկարապատումս լինել եւ աւանդել զազգօգուտ գործառնութիւնս նորա մերոց ապագայից, սակայն առ ժամս համառօտագոյնս դրօշմել պարտաւորեալ, զճոխագոյնն թողում այլում պատեհի եւ կամ իմոց յետագայից։

Կարապետ Աղա Մկրեան, որդի Յովհաննու, ծնանի յամի Տեառն 1795. եւ ուսեալ զայբուբենն եւ զսակաւ ինչ դիր ի մօրեղբօրէ իւրմէ Տէր Գրիգոր Քահանայէ մահտեսի Վարդերեսեան, յերկոտասան ամի հասակին, տանի զնա հայր իւր ի Կ. Պօլիս՝ զի ի պանդոկի ուրեք քաղաքին մինչեւ ցկէս օր ուսցի զգիր եւ զրախամ, (Թուաբանութեան չորս դուռ) եւ զկնի պարապեսցի յառեւտրական գործս իւր. որ էր վաճառումն տախտակաց ի պէտս տակառաց։

Ի բնէ ուշիմ եւ խելացի գոլով, ուսանի՝ որչափ կարելին էր ի ժամանակին զգիր եւ զթուանշան, եւ օգնէ գործոց հօրն, ի փոքրութեան հասակին զկատարելութեան ցուցեալ զհանճար։ Ընդ աճիլ տիոցն, ընդարձակել ջանայ եւ զգործառնութիւնսն, եւ տեսեալ զի բազում կարօտութիւն է Պայտի ձիոց ի մայրաքաղաքին, եւ բերեալ լինի այն ի Րումէլիէ (ի Սօֆիայէ, ի Փալանկայէ), հնարս խորհի մուծանել զարհեստ պայտաշինութեան ի հայրենիս իւր. եւ տեսակցեալ ընդ Հայազգի Կարնեցիս ոմանս, որք աշխատէին այնու արհեստիւ 'ի Գարաման թաղն Կ. Պօլսոյ, իսկոյն զհետ պնդի, եւ կազմեալ ի Կարնեցւոց անտի գործաւորս, եւ առեալ վերկաթ 'ի Պօլսոյ, տանի եւ հաստատէ զգործարան, եւ օր ըստ օրէ կատարելագործեալ, տայ ուսուցանել եւ երիտասարդաց Պարտիզակի, եւ ինքն նստեալ ի Պօլիս սկսի վաճառել. եւ զի կերտուածք

իւրոյ գործարանին ըստ իւրում հանճարոյ առաւել յարմարաւոր եւ բարեձեւ եղեալ էին, ստանայ համբաւ, եւ գտանէ յաջողութիւն, եւ ըստ այնմ բազմացուցանէ զգործաւորսն ։

Եւ այսպէս զոր օրինակ հաւն իւր բարեպաշտօն Մահտեսի Մկրտիչ՝ մուծանէ 'ի գիւղն զարհեստ դանակաշինութեան, նոյնպէս եւ սա զարհեստս այս պայտաշինութեան, որ եւ ծաւալի յոյժ 'ի գեղջն՝ բազում արդիւնս արտադրեալ 'ի յոլով ամս ։ Ամուսնանայ ապա հաճութեամբ հօր իւրոյ ընդ համեստափայլ Համասփիւռ օրիորդի Բարունեան Յոհաննու, 'ի 20 ամեայ հասակին, եւ լինի 'ի պատանեկութեանն երիտասարդ՝ եւ ի չարս կատարելոց արանց ։

Խոհական ընթացք նորին՝ զգացուցանեն ժողովրդեան, թէ պէտս ունին այնպիսւոյ առն բանագիտի կարգել Իշխան եւ տեսուչ գիւղին, վասնորոյ խնդրեն ընդունիլ զպաշտօնն. բայց նա յետ բազմիցս հրաժարելոյ, յանձն առնու ստիպմամբ Գեր. Առաջնորդին Նիկոմիդիոյ եւ Պրուսայի մեծանուն Պօղոս Արքեպիսկոպոսի Գարագօզեան եւ ի 25 ամեայ հասակին լինի բարձակից ծերագունից եւ Իշխան ։

Յանձնեալ յետ այնորիկ զգործս իւր ի Պօլիս պաշտօնակալաց իւրոց վարձելոց, ինքն առնու զղեկ իշխանութեան ժողովրդեան ի ձեռին՝ ամենայն աչալուրջ գործունէութեամբ, եւ որովհետեւ քաղաքական տեսչութիւն Պարտիզակի եւ այլ մերձակայ գիւղօրէից ոմանց՝ պատկանէր վարչութեան Արքունի Դրամանոցին (Զարպխանէին), յաղագս տալոյ սոցա զպիտոյացեալ ածուխ նորին բազմաքանակ. փութով ծանօթանայ Ազգային բարերարին Քրիստոսազօր Յարութիւն Ամիրայի Պէզճեան, եւ լինի սիրելի նմա յոյժ, եւ պատուոյ

եւ յարգանաց նորին արժանաւոր ։

Ձեռնարկէ յամին 1830 — եւ 1832 ի շինութիւն Նիկողեցւոյ գիւղին, որ խարխալեալ գոլով, հարկ էր զնորագոյնն կանգնել, եւ յաւարտ հասուցեալ զայն՝ ձեռնարկէ եւ ի շինութիւն հոյակապ դպրոցի, հետզհետէ յատկացուցեալ նմին զեկամուտս արդիւնաւորս. տայ բերել վարժապետս ի Պոլսոյ Քերականութեան եւ Երաժշտութեան, առաջին արարեալ զՊարտիզակ ի վիճակին Նիկոմիդիոյ որ ունիցի դասատու Քերականութեան՝ յետ վանացն Արմաշու։ Հաստատէ յօգուտ հասարակաց զբարեկարգութիւնս շինարարս, եւ առ ի զառաջս առնուլ փոխադրական հիւանդութեանց՝ նորոգ տայ շինել զկոյուղիս ի բովանդակ թաղս գիւղին, զի չ՛կայր այնպիսի ինչ, մինչ ցայն օր։

Տայ շինել եւ զմիժամեայ ճանապարհն գիւղին մինչեւ ցծովեզրն քարայատակ, որով լինի դիւրութիւն սայլորդաց եւ գրաստուց անվտանգ հանել ի գիւղն զայլեւայլ բերս շրջակայից ։

Հռչակ այսօրինակ մեծագործութեանց նորա տարածի յամենուրեք, եւ ընդ նմին բարեհռչակ լինի եւ Պարտիզակ. եւ ընդարձակի առեւտուրն եւ վաճառաշահութիւնն եւ յաճախեն երթեւեկք, զի եւ օդ եւ՛ ջուր տեղւոյն զովագին է եւ առողջարար։ Առնէ անհամար մասնաւոր բարութիւնս բնակչաց գիւղին եւ այլ գիւղօրէից, ազգայնոց եւ օտարաց, ազատեալ զոմանս ի բանտէ, զոմանս ի պատժոց, զոմանս ի պարտուց, զոմանս ի հարստահարութենէ եւ եւ, որովք եւ ինքն ստանայ ընդ բազում օրհնաբանողաց եւ նախանձորդս հակառակորդս, եւ թշնամիս անողոքս ի բռնաւորաց անտի, եւ երկիցս հրաւիրի կապանօք ի Կ. Պոլիս եւ արկանի ի բանտ, ազդեցութեամբ Վօյվօտա անուանեալ կառա-

վարչաց գիւղին, մի՝ վասն զի չէր թոյլատրեալ առնուլ նոցա ի ժողովրդենէն երկիցս անգամ տասանորդ մետաքսի, եւ երկրորդ՝ զի կամեցեալ էր յաւելուլ զգին ածխոյ ի շահ ժողովրդեան հակառակ կամաց Վոյվոտային։ Յառաջնումն՝ տակաւին ի կենդանութեան գոլով Աստուածատէր Պէզճեան Ամիրային՝ ազատի փութով, իսկ յերկրորդումն մնայ 40 օր, եւ ապա ազատի խնամօք Սրբազան Պատրիարքին Տ. Ստեփաննոսի Զաքարեան իրաւամբ Աղանի վերակոչելոյ, եւ ջանիւք Ամիրայից ազգասիրաց՝ բարեկամաց իւրոց։

Բայց որ յերրորդումն նուագի էր հանդիպումն փորձանաց՝ ծանր քան զառաջինսն էր, զի քանամեայ պատանի ոմն Պարտիզակցի Յովհաննէս Փիրէնեան անուանեալ, իբր թէ խոստացեալ ընդունիլ յէօրիւճիւ գիւղն Տաճկաց զդենն նոցա եւ ապա դրժեալ իցէ եւ խուսափեալ, բռնագոյնս ստիպեն զգիւղն համօրէն եւ խոշտանգանօք նեղեն. մինչեւ ստիպի պատանին ի պահեստէ տան քահանային ինքնին ելանել արտաքս եւ մատնել զանձն եւ դաւանիլ զՔրիստոս համարձակ։

Տարեալ լինի ի Նիկոմիդիա, եւ զնոյն բարւոք վկայութիւնն տուեալ, արկանի ի բանտ տանջանաց, բազմիցս հարցանի թէ ո՞վ խրատեաց զքեզ դառնալ ի խոստմանէդ, եւ պատասխան տայ համարձակ՝ թէ ոչ ոք, բայց եթէ Քրիստոս՝ որ յիս բնակեալ է։ Բայց թշնամիք պատանւոյն՝ բազմութիւնն երից գիւղօրէից Տաճկաց՝ մերձ Պարտիզակի երիւք ժամօք, ամբաստանեն զՀայր իմ թէ նա միայն է թելադիր եւ խրատիչ. վասնորոյ բարձրագոյն հրամանաւ բերեն եւ զՀայր իմ ընդ պատանւոյն ի Կ. Պոլիս, բայց երաշխաւորութեամբ Սրբազան Պատրիարքի Տ. Ստեփաննոսի՝ ոչ դնի յարգելանս Հայրն իմ։ Քանիցս անգամ երես առ երես բերեալ

զՀայրն իմ ի մեծագոյն ատեանս, հարցանեն պատանւոյն թէ՝ սա խրատեաց զքեզ, նա համարձակ մերժէ՝ թէ ոչ ճանաչեմ զայրդ թէ ո իցէ։ Հարցանեն՝ զիարդ ստես, չէ՞ սա Զորպաճի (իշխան) գիւղիդ, եւ զիարդ չ'ճանաչես. պատասխանէ՝ թէ չունիմ շարունակ կացեալ ի գիւղն, եւ եթէ քանիցս ի տարւոջ երթայի, ոչ կարէի տեսանել զիշխան գիւղին եւ խօսիլ ընդ նմա համարձակ առանց պատեհութեան. եւ զի՞ է իմ հայր որ ճանաչէ զիշխանն. ինձ զի՞ փոյթ. — եւ ճշմարիտ էր բան Քրիստոսասէր պատանւոյն։ Ոմանք յԱտենակալաց առաջարկեն զի ընդ պատանւոյն սպանցի եւ Հայրն իմ, իբրեւ թելադրիչ. բայց ապա, յետ ոչ սակաւ դժուարութեանց հազիւ ճողոպրի Հայրն իմ շնորհիւ Ս. Պատրիարքին եւ Արքունի Վառօդապետաց եւ Ճարտարապետաց բարերար Ազգապետաց՝ ընդ որս ունէր ծանօթութիւն, եւ մասնաւոր եւ ազդու միջնորդութեամբ Մաքսուտ Ամիրայի Սարիմեան՝ որ ի դիմաց Ս. Պատրիարքի եւ Ազգին, դիմէր ստէպ առ Խարինճիյէ Միւշիրի մեծանուն Ռէշիտ փաշա։

Յետ ազգի ազգի տանջանաց՝ տեսեալ զհաստատութիւն պատանւոյն Յովհաննու, առաքեն ի Պարտիզակ ի հայրենին իւր, եւ անդ կախեալ զծառոյ թթենեաց սպանանեն իբրեւ զխոյ ողջակէզ, յամի Տեառն 1838, Ապրիլ 30 ([1])։ Իբրեւ Նահատակ ճշմարիտ հաւատոյ Քրիստոսի ամփոփի մարմինն պատուով յաջակողմն Ս.

([1]) Զկնի մերոյս այս Վկայի յաջորդէ Քաջն Յովակիմ երիտասարդ Պոլսեցի, որ յամին 1843 չարաչար գլխատմամբ Նահատակեցաւ, և եղև կնիք և վախճան Պաշտօնական Նահատակութեանց Քրիստոնէից ի Թուրքիա . . . ։

Սերալի գերեզմանն պորս է յնեկեղեցւոյ Ս. Յակոբայ վանացն Ազգիս, ի Նէտի-Գուլէ.։

Նիկոմիդեցւոյն Գարտիզակի (1), եղեալ ի պաշտօնի զթաթ-ալ ձեռին, զոր Թօհանայք ի գիշերին յայնմիկ գաղտնապէս կորզեալ եւ տարեալ էին, եւ զոր տպա Ջեամատողն ի հանդէս եւ ի վերայ Քրիստոսի, Կարապետ Ամիրայ Գաղեան Արքունի Ճարտարապետ, իւրով արդեամբ արծաթագործ տայր առնել ի ձեռն Հօր իմոյ, տուեալ զձկոյթն յինքն՝ որ այժմ մնայ յեկեղեցին Պէշիքթաշի, եւ զոր ես ինքնա տարեալ յանձնեալ էի վասն. Ամիրային.

Այնուհետեւ Հայրն իմ ի բանավորութենէ դատաստանաց՝ բայց երկուցեալ երթալ վերստին ի Գարտիզակ, բնակի ընտանեօք իւրովք առ ժամանակ մի ի Պէշիքթաշ թաղն Կ. Պոլսոյ:

Յետ այսոցիկ մահահանդոյն փորձութեանց՝ կրէ եւ զանազան նեղութիւնս ի ժամանակս ժամանակս վասն պաշտպանութեան Ազգայնոց, բայց սիրով տարեալ ամենեցուն համբերէր եւ տոկայր, ի միտ առեալ զօրինակս նախնեաց, զի որք բարերարք Ազգին են հանդիպեցեալ զնոյն նեղութիւնս եւ տառապանս են կրեալ:

Խրատուք սիրելի բարեկամի իւրոյ Տ. Պօղոս Վարդապետի Թագթագեան (յետոյ Արքեպիսկոպոսի Զմիւռնիոյ եւ Ս. Պատրիարքի Կ. Պոլսոյ.) ընթերցասէր լինէր յոյժ. խորհրդով նորին առնու զԱստուածաշունչ գիրս Հին եւ Նոր Կտակարանաց եւ զերկս հատորսն Ջամչեան Պատմութեան Հայոց, եւ այնքան ախորժ-հանութեամբ ընթեռնու, զի յընթացս 25 ամաց տասնիցս վերծանեալ էր զստուար հատորս Ազգային Պատ-

(1) Յամին 1846 մարմարոնեայ քարամբք կանգնեցաւ շքեղ դամբարան ի վերայ գերեզմանի Վկայիս, արդեամբք Աստուածասէր Առաքել Պէյի Տատեան, որդւոյ բարեյիշատակ Յովհաննէս Պէյի Արքունի Վառօդապետի, յորժամ այց ելեալ էր Հօր իմոյ ի գիւղն, ի 24 Մարտի 1846:

մութեանն ամբողջապէս, եւ ստացեալ զհմտութիւն մեծ բովանդակ հանգամանաց պատմութեանն՝ յաճախ պատմէր ծերակուտից եւ առաջակայից գիւղին ի խրատ եւ ի զգուշութիւն, յաւելեալ եւ օրինակս ի Սուրբ գրոց։ Սոյնպէս ընթեռնոյր ապա եւ զՊատմութիւն Օսմանեանց. եւ գիտէր ի բերան զամենայն անցս ահեղասաստ Տէրութեանն յականէ յանուանէ։

Հմուտ էր եւ Եկեղեցական եւ այլ արտաքին պատմութեանց, եւ զհետ լինէր եւս օրինակաւ բարեկամին իւրոյ եւ մտերմին՝ Ուսումնասէր եւ ճշմարիտ Ազգասէր Պօղոս Աղայի Օտեան, որոյ իմաստութեամբն լուսաւորէր զգաղափարս իւր, խորհելով, խորհրդածելով եւ երբեմն իսկ հակաճառելով ի վերայ այլ եւ այլ խնդրոց, որոց քանիցս ականատես եւ ականջալուր եղեալ է իմ, զի գրեթէ զկէս տարւոյն ի Պոլիս անցուցանէր վասն առեւտրական գործառնութեանց իւրոց, առաւելապէս ի տան սրտակցորդ մտերմի իւրոյ այսորիկ։

Ջան ի գործ եդեալ էր կրթել զզաւակունս իւր յուսմունս կարեւորս, ոչ ինչ նուազ հոգացեալ եւ վասն մանկանց գիւղին. եւ որպէս յղեալ էր զեղբայր իմ զՅակոբ եւ զայլս ընդ նմա յՈւսումնարանն Վանացն Արմաշու, նոյնպէս եւ զերկրորդ եղբայր իմ զՍարգիս նախ յԱրմաշ՝ ապա ի Կ. Պոլիս ի ճեմարանն Իւսկիւտարու առաքէր յառաջին բացման անդ. եւ ապա զիս զտրուպս եւ զփոքր եղբայր իմ Յարութիւն նախ ի դպրոց գեղջն՝ եւ յետոյ ի Կ. Պոլիս տանէր, եւ ջանայր տալ ուսումն։

Պատկառելի էր որպէս գործովքն եւ Իշխանական ընթացիւք իւրովք, նոյնպէս եւ Պարթեւական կերպարանօք դիմացն՝ յաչս ամենեցուն. եւ ստացեալ զազդեցիկ ներգործութիւն առաջի պաշտօնակալաց Տէրու-

թեան իւրով հաւատարիմ ծառայութեամբք յայնչափ ամս, յուսկ ուրեմն արժանացաւ չորրորդ աստիճանի Մէճիտիէ պատուանշանին Էֆէնտի տիտղոսիւ, յաւուրս մեծի Վէզիրին Րէշիտ Փաշայի, շնորհիւ պերճափառ Գօղոս Պէյի Տատեան։

Շատ էին պէտք նորա Ազգին, այլ Աստուած կոչեաց զնա յանկարծ, զի ի 10 Մայիսի 1858 յերեկոյի Շաբաթու՝ յետ ճաշելոյ ընդ որդւոցս իւրոց եւ ամենայն ընտանեաց ուրախ եւ զուարթ, նստեալ խօսէր ընդ երեւելեաց ոմանց գիւղին՝ որոց սովորութիւն էր ցայգ եւ ցերեկ գալ ի տեսութիւն եւ առնուլ զխրատ եւ զհրահանգ. եւ ինձ ընթեռնուլ (1) զԼրագիրս եօթնեկին այնմիկ, յորմէ զկնի, հրամանաւ իւրով գնացի ննջել. եւ ահա զկնի կէս ժամու եկեալ բաղխեցին զդուռն սենեկիս, եւ ո՛հ, գնացեալ տեսի զՀայր իմ կաթուածահար, որ թէպէտ եւ շնչէր՝ բայց խօսիլ կարէր ոչ (2)։ Հասին բժիշկք որք գտանէին ի գիւղն՝ եւ դարման տալ փութացին ըստ չափու գիտութեան իւրեանց, սակայն չեղեւ հնար. զի յետ 48 ժամուց աւանդեաց զհոգին ի 12 Մայիսի երկուշաբթի երեկոյ ի ժամ 3։ (3)

(1) Այս հանապազօրեայ սովորութիւն էր յամենայն երեկոյի տալ ինձ ընթեռնուլ զայլ և այլ մատեանս պատմութեանց՝ և զԼրագիրս, և հարցաքննել և բացատրութիւնս ընթերցուածոցն խնդրել, որով յաւել յիս զանչափ բաղձանս վերծանութեան, եւ այս՝ յերկոտասանամեայ հասակէս սկսեալ։

(2) Եղբայր իմ Սարգիս Աղա, լինէր ի Կ. Պօլիս յայնժամ, և բնազդմամբ իմն յաւուր Կիւրակէի եկեալ ժամանէր, մինչդեռ շնչէր տակաւին Հայրն իմ, որ և աղաղակաւ ողբոց եղբօրս բացեալ զաչսն հայեցաւ ողորմագին և հառաչեաց միայն։

(3) Զի ի ժամանակին չ՚կայր շփհրական Թել, և շոգենաւ միանգամ եւթ յեօթնեկին երթևեկէր, առաքեցաք ցամաքաւ ի Կ. Պօլիս զեղբայր

Գուժեցաւ անակնկալ մահն տրտմութեամբ ի գաւառն եւ ի շրջակայսն, եւ եկն ի Նիկոմիդիոյ Գեր. Առաջնորդն Տ. Ստեփաննոս Վարդապետ Մաղաքեան (ապա Արքեպիսկոպոս եւ Տեղապահ Պատրիարքութեան Կ. Պօլսոյ) ընդ այլ իշխանս տեղւոյն, եկին նոյնպէս եւ ի շրջակայից Քահանայք եւ Ժողովուրդք։

Իսկ Ժողովուրդ գիւղին թախծեալ ի սուգ եղաց ի լալիւն մեծ. եւ փակեցին ամենեքեան զկրպակս իւրեանց, եւ մեծաւ հանդիսիւ ամբարձեալ ի տանէ զՄարմինն բերին յԵկեղեցին. ուր միահաղոյն խնդրեն յԱռաջնորդէն ամփոփել զայն ի գաւթի Եկեղեցւոյն, յերաշխիս բարերարութեանց նորա առ Ազգն եւ Եկեղեցին։ Հաճի ընդ այս հոգեշնորհ Առաջնորդն, եւ գոհէ զերախտագիտութիւնս նոցա, եւ թաղեն արտասուօք եւ օրհնութեամբ ի 13 Մայիսի օր երեքշաբթի։

Իսկ եւ մեք որդիքս նորա, որ համակեալ էաք ի ցաւ եւ ի վիշտ անհնարին վասն զրկելոյս մեր յայնպիսի իմաստնախոհ, հեռատես, բարեսիրտ, ներողամիտ, Աստուածասէր, Ազգասէր եւ Որդեսէր Հօրէ, սփոփեալ եւ մխիթարեալ յայս օրինակ զգածմանէ մերոց բարեսէր Հայրենակցաց, ի նմին խակ աւուր ընծայեցաք զգումար մի՝ որով շինեցան ապա կրպակք արդիւնաբերք յօգուտ վարժարանին։

Որ ինչ դրոշմեցաւ աստ. ծանօթութիւն զկենցաղէ

մեր Ցարունթիւն բերել զբժիշկ ճարտար. որ հասեալ շոյտ քան զսուրհանդակս՝ յաջողի գտանել զՏօքթօր Յ. Տիչմանեան, շնորհիւ Ցաւերժայիշատակ Փօղոս Աղայի Օտեան, և Ազնուազարմ որդւոցն. և վարձեալ առանձին շոգենաւ եբեր ի գիւղն. բայց մեք ի նմին ժամու յԵկեղեցւոջ կայաք, շուրջ զդագաղաւ Հօրս ողբագին . . . :

Ողբացաք ապա և զմահ հայրապատիւ Օտեան Նախարարին՝ յամի Տեառն 1862 Հոկտեմբեր 25: Որոց յիշատակն օրհնեսցի յաւիտեան ։

քարեմասնութեանց Հօրս, մի ոք կարծեսցէ թէ որդիական պարտաւորութեամբ զՀայրականն լնում զպարտիս պատուոյ եւ գովասանաց. համառօտութիւնքս այսօքիկ ընդարձակօրէն հաստատեն գրաւոր բանք Կաթողիկոսաց, Պատրիարքաց, Արքեպիսկոպոսաց, Ամիրայից եւ բազում մասնաւորաց, նաեւ հրատարակութիւնք լրագրաց, զորս պահեալ եւ ամփոփեալ՝ ի մտի ունիմ տալ ի տպագրութիւն, ընդ պատմութեան Պարտիզակի, եթէ տացէ Տէր ինձ ժամանակ եւ կարողութիւն ։



ՏԱՊԱՆԱԳԻՐ ՄՕՐՆ ԻՄՈՅ



# ԴԱՄԲԱՐԱՆ

## ՏԻԿԻՆ ՀԱՄԱՍՓԻՒՌ ԻՇԽԱՆՈՒՀԻՈՅՆ

### ԿԱՐԱՊԵՏ ԷՖԷՆՏԻԻ ՄԻՐԵԱՆ

---

ՄԱ՛ՅՐ, ՎԱ՛ՐԴ, ՀԱՄԱՍՓԻՒՌ
ԱՆՈՒԱՄԲԴ ԵՒ ԳՈՐԾԵՐՈՎ ԲԻՒՐ,
ԾԱՂԿԵՑԱ՛Ր ՄԱՔՈՒՐ ՀԱՒԱՏՈՎ
ՅԻՍՈՒՍԻ ՍԻՐՈՎ ։

ՄԱՅՐ ԸԶՔԵ՛Զ ԿՈՉԵՑԻՆ
Ո՛Չ ՄԻԱՅՆ ՈՐԴԻՔԴ ԾՈՑԱԾԻՆ
ԱՅԼ ԵՒ ԱՆԹԻՒ ԽԵՂՃ ՈՒ ՈՐԲԵՐ
ՈՐ ՔԵԶՄՈՎ ՇԱՀՈՒԷՐ ։

ՄԱ՛ՅՐ, ԸԶՔԵԶ ԿՈՂԲԱ՜Ն
ՈՐԴԻՔԴ ՈՒ ԹՈՌՈՒՆՔԴ ՀԱՄԱՅՆ.
ԵՒ ԽՆԱՄԵԱԼՔ ԼԱՆ ԱՆԴԱԴԱՐ
Ո՞ՒՐ ԴՈ՛Ւ, Ո՞ՒՐ ԵՍ ՄԱՅՐ ։

ՋԱՅՆ ԵԿԱՒ ԵՐԿԻՆՔԷՆ ՍԻՐԱԼՈՒՐ,
ԵՐԱՆԻ՜ ՄԵՌԵԼՈՑԴ, ԴԱ՛ ԻՄ ՄԱՅՐ Է՛ ԵՒ ՔՈՅՐ.

---

*ՀԱՆԳԵԱՒ Ի ՔՐԻՍՏՈՍ Ի 56 ԱՄԻ ԿԵՆԱՑՆ*

ՅԱՒՈՒՐ ԵՐԿՐՈՐԴԻ 1862 ՏԱՐՒՈՅՆ

Ի ՊԱՂՋԷՃԻԿ

Մայր իմ սիրելի՝ դուստր բարեպաշտ ծնողաց, տիպար առաքինութեան, յոյժ երկիւղած յԱստուծոյ, աղօթասէր, եւ աղքատասէր, այցելու հիւանդաց, մխիթարիչ սգաւորաց, զգեցուցանող մերկոց ըստ Աւետարանական պատուիրանաց, կենակցեալ ընդ Հօր իմոյ եւ հաղորդակից լեալ վշտալի եւ երջանիկ աւուրց նորա, խնամէր զտուն իւր եւ զորդիս ամենայն հոգածութեամբ՝ որ յատուկ է գորովալից մարց, եւ ժրագլուխ Տանտիկնայց, պահէր զորբս ի տան անդ իւրում, եւ իբրեւ զորդեակս խնամեալ ամուսնացուցանէր. առատապէս բաշխէր ի լիութենէ ճոխացեալ շտեմարանաց իւրոց զամենայն որ ինչ հարկաւոր էր աղքատաց ։

Եթող յիշատակս եւ յեկեղեցւոջ գիւղին զծանրագին ծածկոց Սկհւոյ, զՇուրջառ եւ զՔուրվառ, եւ զայլս ինչ՝ զոր չիմանայր ձախն թէ աջ իւր առնէր զինչ։

Անքուն հսկէր ի վերայ զաւակաց իւրոց, զի մի ի մոլութիւնս վարակեսցին, վասն որոյ խստանայր ի վերայ ամենայն տան իւրոյ, զի մի առանց աղօթից ննջեսցեն, եւ մի ծոյլ ի գնալ ի տուն Տեառն (1) ։ Խոցեցաւ սիրտն գթալի, մահուամբ որդւոց իւրոց, եւ անմխիթար մնաց,

(1) Հայր իմ և Մայր իմ տեսին զՊսակս ամուսնութեան որդւոց իւրեանց, կատարեալ իւրեանց կամօք և հաճութեամբ ըստ Արեւելեայց սովորութեան ի կանուխ հասակի, վասն որոյ խրախանային և հրճուէին յորժամ ի սեղանի շուրջ բոլորեալ տեսանէին զզաւակունս, զհարսունս, և զԹոռունս, զորս աչալուրջ հսկողութեամբ կառավարէր ժրագլուխ Մայր իմ:

Թուական ծննդեան իմոյ 1831 Ապրիլ 4, (որ սխալմամբ արձանագրեալ է ի մատենի Մկրտութեան Մայիս 3) և Մկրտեալ ի տօնի մտանելոյ Ս. Լուսաւորչի ի Վիրապն ի ձեռն Տէր Գրիգոր Քահանայի մահտեսի Վարդերեսեան: Իսկ Թուական ամուսնութեանս է 1849 Յունվար 30.

եւ ապա մահուամբ Հօրս ամենայնիւ ազատեալ, խանդարեցաւ առողջութիւն Նորա։

Յամի 1860 առաքեցաք զնա ի Ս. Երուսաղէմ, ընդ հաւատարմի մերոյ Մահտեսի Ստեփան աղայի Թանկերեան Պրուսացւոյ, ընդ որ առեալ նաեւ զքոյր իւր եւ զԹոռնեակն Մարիանէ, գնաց եւ դարձաւ առողջութեամբ, զի յոյժ փափաքող էր Քրիստոսաշրջիկ վայրացն։

Ի վերջ կոյս 1861 ամին բոլորովին տկարացեալ անկաւ յանկողին, եւ անտրտունջ տարեալ զվիշտս հիւանդութեանն գոհանայր զԱստուծոյ, եւ յաճախ մերձենայր ի Սուրբ Խորհուրդս մի հաւատով. եւ այսպէս՝ ի բանիլ 1862 տարւոյն յերկրորդ աւուր Յունվարի՝ աւանդեաց զորբասնեալ հոգին հեզութեամբ եւ անդորրութեամբ ի ձեռս Քրիստոսի, ի վերայ բազկաց իմոց՝ մինչդեռ աղօթէր խոստովանահայր Քահանայն զաղօթս հոգեվարաց։

Լացին ընդ մեզ եւ բազմութիւն խնամեաց ի Նմանէ, զի բարձաւ ի միջոյ Մայրն գթառատ, որպէս եւ Հագելոյս Աղաւնի Սրբազանն անուանեալ եւ դրոշմեալ էր Նմա անուն ՄԱՅՐ ՀԱՍԱՐԱԿԱՑ, եւ պատուով եւ հանդիսիւ թաղեցաւ ի հասարակաց գերեզմանատան Պարտիզակի ի դամբարանի որդւոց իւրոց։

Վախճանմամբ առաքինի Մօրս, գոգցես վերջացան, սպառեցան այնուհետեւ մխիթարութիւնք մեր, եւ խէթիւ հայեցաւ ի մեզ Արեգակն բարեբաստութեան . . . ։

---

պսակեալ ընդ Թագուհի օրիորդի Կարապետի Մարգարեանց՝ որ եղև ընդ իս համակիր ի խինդ և ի վիշտ :

— Եւ փոքր եղբայր իմ Յարութիւն (Արթաքի) Աղա ևս ամուսնացաւ յամին 1857 Փետրվար 20. ընդ Սրբուհի Օրիորդի Ստեփան Աղայի Արմաղանեան բնիկ Ռուսխացւոյ :

ՏԱՊԱՆԱԳԻՐ ՀԱՐՄԻՆ ԻՄՈՅ[1]



# ՀԱՆԳԻՍՏ

## ՏԻՐՈՒՀԻ ՏԻԿՆՈՋ ՍԱՐԳԻՍ ԱՂԱՅԻ Կ. ՄԿՐԵԱՆ

Ի 14 ՅՈՒԼԻՍԻ 1865

ԿԵՑԵԱԼ ԱՄՍ

36

Ո՛Հ, ՏԻԿԻՆ, ՁԵԶ ԳՈՎԵՍՏ ՉԷ ՀԱՐԿ ՏԱԼ
ԲԱՅՑ ՄԻԱՅՆ՝ ՁԱՐԺԱՆԻՍ ՔՈ ՈՂԲԱԼ.
ՈՂԲԱԼ ԿԵԱՆՔԴ ՑՈՒՄԱԼԻՑ, ԿԱՏԱՐԵԱԼ,
ԵՒ ՉՈՐՍ ՓՈՔՐ ՄԱՆԿԻԿՆԵՐԴ ԿԱՐՄՐԱՓԱՅԼ։
ՈՐՈՑ ՀԵՏ ԱԶԳԱՏՈՀՄԴ Կ'ԸՆԾԱՅԵՆ
ՔՈՅ ՇԻՐՄԻԴ ԾԱՂԻԿՆԵՐ ԵՒ Կ'ԸՍԵՆ.

ՄԱ՛ՅՐ ՍԻՐՈՅ, ՄԻ՛ ՀՈԳԱՐ, ՈՒՆԻՄՔ ՄԵՔ՝
ՀԱՅՐ ՈՐԲՈՑ Ի ՅԵՐԿԻՆՍ, ՈՐ ԵՐԲԷՔ
ՄԵԶ ԱՆՏԵՍ ՉԻ ԹՈՂՈՒԼ, ԵԹԷ ՄԵՔ
ԶԱՅՆ ՍՐՏՈՎ ԵՒ ՀՈԳԻՈՎ ՄԻՇՏ ՍԻՐԵՄՔ։

ԻՍԿ ԴՈՒ ՄԱ՛ՅՐ, ԳՆԱ՛ ԴՈՒ ԱՌ ՅԻՍՈՒՍ՝
Ա՛Ռ ՊՍԱԿԴ, ՆԱ՛ ՄԵՐ ՀԱՅՐ, ՆԱ՛ ՄԵՐ ՅՈՅՍ։

*Այս պարկեշտատուն կողակից եղբօր իմոյ Սարգիս էֆէնտիի Մկրեան, դուստր էր մահտեսի Պետրոս Աղայի Ծրկայեան ի Գարտիզակ, եւ բարեբարոյ եւ ազնիւ վարուքն սիրելի լեալ էր գերդաստանի մերում.*

(1) *Տապանագիրք Ծնողաց իմոց և սորայս, իմ փանաքի շարադրութիւնք են բղխեալ ի զգայուն սրտէ:*

այլ ափսոս, զի վաղագրաւ լեալ ի կենաց՝ տրտմեցոյց զմեզ զամենեսին։ Ես չգտայ ներկայ յաւուրս մահուան նորա, զի ճանապարհորդ էի ի Հայաստան Ռուսիոյ եւ գտանէի ի մէջ ճանապարհի Տփխիսոյ եւ Երեւանայ գնալ ի Ս. Էջմիածին. եւ ի կառս անդ մինչդեռ տապացեալ ի ջերմութենէ արեւու մրափ քնոյ ծանրացուցանէր զաչս իմ, տեսի յերազի զեղբայր իմ երիզապնդեալ վարշամակապատօք, եւ հարցի՝ թէ ընդէ՞ր այնպէս պատպանեալ իցէ. նա՝ ձեռամբքացի յայտնեաց զտրտմութիւն իւր եւ զսուգ. եւ ես զարթեայ ի վայրկենին, եւ պատմեցի ընկերացս։ Եւ այս լինէր ի 18 Յուլիսի 1865։ Չիցէ՞ այս զարմանալի . . . ։

Եթող զչորս փոքրկունս՝ զաւակս շնորհագեղս, զՎարսենիկ, զՄաթինիկ, զԱրտաշէս եւ զՄիրվարդ, յիշատակ մեզ եւ մխիթարութիւն, զորս պահեսցէ Տէր շնորհիւ իւրով եւ ողորմութեամբ։

Իսկ եղբայրն իմ կրկին ամուսնացաւ ապա ընդ Վարսենիկ օրիորդի Յ. Զաքարեանց։





# ՈՎ ՏԷՐ ՅԻՍՈՒՍ

ՑՕՂԴ ՈՐ Ի ՔՈՅԴ ԿՈՂԷ ՑՈՂԵԱԼ
ԲԺՇԿԵՍՑԷ ԶՀԱՆԳՈՒՑԵԱԼՍՆ
ԻՋՑԷ Ի ՀՈՂ ՄԱՀՈՒ ՆՈՑԻՆ
ԵՒ ԲՈՒՍՈՒՍՑԷ ՅՕՐՆ ՎԵՐՋԻՆ.
ԿԵՆԴԱՆԱՐԱՐ ԶԱՅՆԻՒՐԴ ՔՈ
ԿՈՉԵԱ՛ ԶՆՈՍԱ Ի ԿԵԱՆՍ ՔՈ
ԵՒ ԴԱՍԵՑՈ ԸՆԴ ԱՐԴԱՐՈՑՆ
ԵՐԳԵԼ ՔԵԶ ՓԱՌՍ ԸՆԴ ԶՈՒԱՐԹՆՈՑՆ։

ՔԱՀԱՆԱՅՔ ԵՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՔ
ՀԱՅՑԵՄՔ Ի ՔԷՆ ՏԷՐ ԲԱՐԵԳՈՒԹ,
ԸՆԴ ՆՆՋԵՑԵԱԼՍ ՀԱՒԱՏՈՎ
ԸՆԿԱԼ ԶՄԵԶ ՆՈՎԻՆ ՅՈՅՍՈՎ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ ՔԱՂԱՔ ՎԵՐԻՆ
ՅՈՐՈՒՄ ԱՐԴԱՐՔՆ ԺՈՂՈՎԻՆ.
ՓԱՌՍ ՎԵՐԵՐԳԵԼ ՄԻՇՏ ԸՆԴ ՆՈՑԻՆ
ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆԴ ԵՐՐԵԱԿ ԱՆՁԻՆ։

# ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՄԿՐԵԱՆ ՏՈՀՄԻ

1. ԴԱՒԻԹ *ծնանի զՍողոմոն.*
2. ՍՈՂՈՄՈՆ *ծնանի զՄկրտիչ.*
3. ՄԿՐՏԻՉ *ծնանի զՅովհաննէս.*
4. ՅՈՎՀԱՆՆԷՍ *ծնանի զԿարապետ.*
5. ԿԱՐԱՊԵՏ *ծնանի՝*

| | | | |
|---|---|---|---|
| զՍՈՒԼԹԱՆ | *յամին* | 1819. † 1851 | *Օգոստոս* 20. |
| զՅԱԿՈԲ | » | 1822. † 1852 | *Յուլիս* 29. |
| զՍԱՐԳԻՍ | » | 1826 | *Փետրվար* 13. |
| զՅՈՎՀԱՆՆԷՍ | » | 1831 | *Ապրիլ* 4. |
| զՅԱՐՈՒԹԻՒՆ | » | 1834. | » 23. |

6. ՍԱՐԳԻՍ *ծնանի՝*

| | | | |
|---|---|---|---|
| զՎԱՐԴԵՆԻԿ | *յամին* | 1857 | *Օգոստոս* 8. |
| զՍԱԹԻՆԻԿ | » | 1858 | *Դեկտեմբեր* 20. |
| զԱՐՏԱՇԷՍ | » | 1862 | *Յունիս* 24. |
| զՍԻՐՎԱՐԴ | » | 1866 | *Ապրիլ* 16. |
| զՏԻՐՈՒՀԻ | » | 1868 | *Մարտ* 7. |
| զՀՐԱՆՈՅՇ | » | 1870 | *Յունվար* 4. |

## 7. ՅՈՎՀԱՆՆԷՍ *ծնանի՝*

| | | | |
|---|---|---|---|
| զՄԱՐԻԱՆԷ | *յամին* | 1850 | *Դեկտեմբեր* 12. |
| զՍՈՒԼԹԱՆԻԿ | » | 1853 | *Յունվար* 9. |
| զՄԱՔՐՈՒՀԻ | » | 1855 | *Փետրվար* 3. |
| զՅԱԿՈԲԻԿ | » | 1857 | *Մայիս* 27. + 1876 *Մարտ* 27. |
| զԿԱՐԱՊԵՏ | » | 1860 | *Մարտ* 28. + |
| զՀԱՄԱՍՓԻՒՌ | » | 1862 | *Յուլիս* 26. + |



# ՎԵՐՋԱԲԱՆ

ՆԻ ԱՐԴ՝ ի վերոյ այսքանեաց վշտակրութեանց եւ աշխատութեանց, արժան է ամբառնալ զմիտս եւ զզգայարանս յերկինս ի վեր, եւ տարածեալ զանձն առաջի Աթոռոյ Ամենակալին Աստուծոյ Արարչին Երկնի եւ Երկրի, գետնամած երկրպագութեամբ վերընծայել զհաւաստիս ամենախոնարհ հպատակութեան՝ անքննին խորոց խորհրդոց օրհնաբանեալ կամաց Նորա, որ ի վեր է քան զամենայն միտս եւ զխորհուրդս մարդկան. եւ գոհութիւնս վերառաքել փառաւորութեամբ, որ միայն է Տէր կենաց եւ մահու, յաղագս ամենայն պարգեւաց իւրոց եւ ողորմութեանց եւ տնօրինութեանց։

Զի ոչ ի շնորհելն հարցանէ ինչ զմեզ, եւ ոչ ի պահանջելն, եւ հաւատամք՝ զի արդար է Նա յամենայն գործս իւր եւ հաւատարիմ, եւ ոչ արկանէ զմեզ ի փորձութիւն առաւել քան զկար մեր, այլ առնէ ընդ փորձութեանն եւ զելս, զի կարասցուք համբերել. (Ա. Կորնթ, Ժ. 13։) Եւ զի՝ ո՞վ է մարդ որ պատասխանի տայցէ Աստուծոյ. միթէ կարիցէ ասել ստեղծուածն ցՍտեղծիչն թէ ընդէ՞ր այդպէս արարեր. (Հռոմ. Թ. 20։)

Օրհնեալ, օրհնեալ, եւ դարձեալ օրհնեալ եղիցին Ամենասուրբ կամք Արարչին Աստուծոյ, որ ի ձեռն Յարութեան ամենօրհնեալ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ եղեւ պտուղ եւ անդրանիկ ամենայն

ննջեցելոց՝ ելոյծ զբռնութիւն մահու, եւ ետ յոյս հաս-տատութեան վերստին նորոգման եւ կենդանութեան ամենայն մարդկան։

Ուրեմն սթափեալ ի տրտմութենէ մեռելոյ՝ եւ կազ-դուրեալ զանձինս հաւատով հոգւով, զի չէ մեռեալ Մանուկն իմ, այլ ննջէ. եւ եթէ ննջէ՝ ապա ապրի, զի Աստուած զննջեցեալսն ի ձեռն Յիսուսի ածցէ ընդ-նմա յԱրքայութիւնն Երկնից. (Ա. Թես. Դ. 13) որպէս եւ Բանն Աստուծոյ իսկ վկայէ, թէ՝ «Ամենայն որ հա-ւատայ, ընդունի զկեանս յաւիտենականս, եւ ի դատաս-տան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի կեանս»։

Ո՛հ, այո միայն, այս միայն են մեզ մխիթարութեան Քրիստոնէի, վասն ցաւագին կենաց աշխարհիս։ Համ-բառնալ առնել զաչս յերկինս ի ստորնայնոց անտի եւ անդ տեսանել Փրկչին Յիսուսի Քրիստոսի Տեառն՝ եւ հա-ւատալ, թէ Նա նորոգեսցէ զմարմին խոնարհութեան մերոյ, կերպարանակից առնել մարմնոյ փառաց իւրոց։

Այո, հաւատամ աներկբայ, զի այսօրինակ հաւատով եւ յուսով կափուցին զաչս իւրեանց յերկրէ անտի Հարք մեր եւ Նախահարք եւ ընդ նոսին Արղենակ իմ ցանկալի, եւ բացին յԱրքայութեանն Աստուծոյ՝ ի տես փառացն Քրիստոսի, զոր պատրաստեալ է Տէր սիրե-լեաց իւրոց ամենայն Հաւատացելոց։

Ապաքէն զինչ են կեանք երկրաւորացս. — Ստուերք մահու. զի «Մարդոյ՝ որպէս խոտոյ են աւուրք իւր, որպէս ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկի, շնչէ ի նմա հողմ, եւ ոչ է, եւ ոչ եւս երեւի տեղի նորա»։ Եւ զիարդ-իցէ՝ վասն առօրեայ եւ վաղանցուկ այսր կենաց կա-պիլ ի սէր աշխարհի. զիարդ փոխանակել զանանց կեանսն ընդ անցաւորիս, եւ զմշտնջենաւորն ընդ-ստուերականիս։ Զինչ են տառապանք մարդոյ վասն

անստոյգ այս կենաց. ընդէր հակառակութիւն, ընդէր նենգութիւն, ընդէր ատելութիւն, մախանք, չարակնութիւն, սրտմտութիւն եւ վէճ անոտի . . . ։ Ի զուր, ի զուր են ամենեքեան եւ չարժեն բնաւ ինչ, եւ չունին փոխարինութիւն այնր խաղաղութեան հոգւոյ եւ մտաց, որպէս որոց Քրիստոսեան Աւետարանին պատուիրանացն հետեւողաց է վարձատրութիւն։

Ուրեմն, «Եթէ այսու կենօքս միայն յուսացեալ եմք, ողորմելի եմք քան զամենայն մարդիկ»։ քանզի «Ունայնութիւն ունայնութեանց է ամենայն՝ որ ի ներքոյ արեգական է»։ Միայն հաստատուն, միայն անփոփոխ Աստուած է. լրումն կատարելութեան Նա միայն է, յՈր եթէ ապաւինեսցուք իբրեւ զխարիսխ յուսոյ, եւ ջանասցուք անվհատ՝ հասանել ըստ չափու կատարելութեան Նորին (Մատթ. Ե. 48.) Եղիցուք արդարեւ որդիք Աստուծոյ, ժառանգակիցք Քրիստոսի եւ յաւիտենական փառացն, ուր ոչ տրտմութիւն, ոչ ցաւ եւ ոչ հեծութիւն, այլ երանաւէտ երջանկութիւն եւ սրբութիւն թագաւորէ։

Արդ՝ զայս գիտացեալ եւ ճանաչեալ եւ հաւատացեալ, պարտաւոր համարիմ սրբել զաչս եւ չափաւորեալ զարտասուս իմ, գտանել առ զաւակունս իմ եւ ընտանիս, առ մերձաւորս իմ եւ ազգակիցս, առ հոգեւոր որդիս իմ եւ ժողովուրդ՝ սիրեցեալս իմ ի Քրիստոս, եւ առ ամենայն հանդիպողս Յիշատակարանիս, եւ աւանդել զիմ վերջին բանս, օժանդակութեամբ Բանին Աստուծոյ, եւ աղաչել ունկնդիր լինել խրատուց զփորձ առողխս փորձանաց եւ աշխարանաց աշխարհիս։

ՈՐԴԵԱԿՔ ԻՄ, եւ Եղբարք, հոգեւոր եւ մարմնաւոր հարազատք իմ սիրելիք, Նախ քան զամենայն՝ երկերուք յԱստուծոյ, եւ սիրեցէք զնա ի բոլոր սրտէ եւ ի բովանդակ մտաց, եւ զնա միայն պաշտեցէք. զի Նա է Հայր մեր խնամակալ ամենեցուն։

Սիրեցէ՛ք զմիմեանս, զեղբարս, զընտանիս, եւ զհամօրէն ազգայինս իբրեւ զանձինս ձեր։

Սիրեցէ՛ք զՀայրենի Եկեղեցին յոր վերածնեալն էք ի Քրիստոս՝ յեղբայրութիւն սուրբ եւ անխարդախ. սիրեցէ՛ք եւ պաշտեցէք, ասեմ, զԱռաքելական Եկեղեցի մեր Հայաստանեայց, որով ծանեաք զԱմենասուրբ Երրորդութիւն մի Աստուածութեանն, եւ որով պահեցաք զգոյութիւն բազմադարեան Ազգի մերոյ եւ Աստուածախօս լեզուի անվկանդ՝ ի յորդահոսան հեղեղաց բռնաւորութեանց աշխարհի։

Մի՛ փոխանակել սիրոյ Մօրս այս լուսոյ, զամենայն զմեծութիւն եւ զփառս առօրեայս, եւ զվայելչութիւնս դիւրեղծանելիս, եւ զամենայն պատրանս կենցաղոյս այսորիկ, այլ նմանեալ Նախահարց մերոց Երանելեաց, յանձն առնուլ վասն սիրոյ Սորա զամենայն զնեղութիւնս, զտառապանս, զվիշտս եւ զհալածանս, եւ զզոհաբերութիւնս, զի կարասցուք աւանդել եւ մեք մերոց ապագայից՝ ի մշտնջենաւորել զԱզգութիւն Հայկայ, որոյ անուամբն պարծիմք։

Ուսուցէ՛ք մանկանց ձերոց զԱստուածպաշտութիւն, եւ զպատուիրանսն Աւետարանի Տեառն Յիսուսի. ուսուցէք նոցա նախ՝ զԱստուածաշունչ գիրս Հին եւ Նոր Կտակարանաց, եւ ապա զուսումն արտաքին գիտութեանց կարի կարեւորաց մարդկութեան։ Ուսուցէ՛ք նոցա եւ զօգտակար արհեստսն՝ որովք բովանդակ Եւրոպիա ծաղկեալ է շինութեամբ եւ հաստատութեամբ,

*շահաբեր եղեալ անձանց եւ աշխարհի իւրեանց՝ զի աղքատութիւն կործանէ զհաւատ, զԱզգութիւն եւ զտուն։ Տպաւորեցէք ի միտս նոցա՝ թէ գիտութեամբ եւ արուեստիւք զարգանայ Ազգ մի ողջոյն, եւ վերականգնի վերստին փառօք ։*

*Ուսուցէք զՀայրենասիրութիւն եւ զԱզգասիրութիւն օրինակաւ մերոց եւ օտարաց նահատակութեանց. եւ ընդ նմին ուսուցէք սիրել զՄարդկութիւն համօրէն, յիշեցուցեալ զբանն Տեառն յաճախ, «Որպէս կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջիք եւ դուք նոցա»։ ...*

*Մի հատուցանել չար՝ փոխանակ չարի ումեք. մի զոք զրկել, մի զոք անարգել եւ ծաղրել, մի զոք բամբասել եւ հայհոյել, մի ծածկել զճշմարտութիւն եւ խեղաթիւրել, մի խօսիլ երբէք բան սուտ, այլ եղիցի ամենայն այոն՝ այո, եւ ամենայն ոչն՝ ոչ։*

*Սիրեցէք զխաղաղութիւն, ատեցէք զհակառակութիւն, եւ եթէ հնար ինչ իցէ՝ ընդ ամենայն մարդկան զխաղաղութիւն ունիջիք. ներելով միմեանց եւ շնորհելով իրերաց՝ եթէ ուրուք զումեքէ տրտունջ ինչ իցէ։ Ի բաց թօթափել զամենայն բարկութիւն, սրտմտութիւն, չարութիւն, հայհոյութիւն, եւ զցանկութիւն չարեաց, պղծութիւն, եւ զագահութիւն, վասն որոց գայ բարկութիւնն Աստուծոյ ի վերայ որդւոցն անհաւանութեան։*

*Զգեցարուք այսուհետեւ իբրեւ ընտրեալք Աստուծոյ, սուրբ եւ սիրեցեալք զգութ, զողորմութիւն, զքաղցրութիւն, զխոնարհութիւն, զհեզութիւն եւ զերկայնմտութիւն։ Լերուք իրաւախոհ ընդ ընկերի ձերում, եւ փախերուք յոխակալ դատախազութենէ եւ ի վրիժառութենէ ։*

Պահեցէք զԸնտանեկան պարզութիւն եւ զհամեստութիւնն Ազգային, հաւատարիմ լիցին արք՝ կանանց, եւ կանայք՝ արանց, փոխադարձ հնազանդութեամբ պատուիրանին Սիրոյ. զի Ազգն կազմի ի բարեկարգ Ընտանեաց, եւ ոչ ի սեղխեաց եւ ի զրկելոց ի բարոյականութենէ ։

Յամենայն առեւտրական գործառնութիւնս ձեր, մեծ եւ փոքր, մի մտցէ անիրաւութիւն եւ խաբէութիւն. դիտասջիք զի շահն երեւեալ ձեզ ի ժամուն՝ եղիցի բազում վնասուց պատճառ առ յապայն։ Մի խնդրէք հարստանալ անիրաւութեամբ, այլ արդարութեամբ եւ խղճիւ վաստակեցէք։ «Մի յուսայք յանիրաւութիւն. յափշտակութեան մի ցանկայք եւ մեծութիւն թէ առուով գայցէ, մի յօժարեսցեն սիրտք ձեր։»

Մի հայիք յայնպիսիս՝ որք ստութեամբ, խարդախութեամբ եւ հարստահարութեամբ, եւ կեղեքանօք փարթամացեալ են. զի իբրեւ զփոշի ցրուեսցին նոքա ամենեքեան յերեսաց հողմոյ Արդարութեանն Աստուծոյ, որպէս գիրք ասեն. «Տեսի զամբարիշտն վերացեալ եւ բարձրացեալ որպէս զմայրս Լիբանանու, անցի՝ եւ ահա ոչ էր, խնդրեցի՝ եւ ոչ գտաւ տեղի նորա ։»

Յամենայն ի գործս ձեր, յիշեցէ՛ք զԱստուած, զի Նա տեսանէ զամենայն՝ եւ գիտակ է խորհրդոց մերոց. Նախ քան զգործել ի միտ առէք թէ հաճելի իցէ առաջի Աստուծոյ, թէ վնասակար իցէ ումեք, եւ ապա ձեռնամուխ լինել ։

Առանց աղօթից եւ խնդրուածոց մի առնել ինչ, ի նստիլ ի տան, ի գնալ ի ճանապարհ, ի ննջել եւ ի յառնել, աղօթիւք խնդրեցէք յԱստուծոյ զողորմութիւն նորա եւ զշնորհս, զի կարօղ լինիջիք զերծանիլ ի փորձութեանց աշխարհի, եւ գտանել զհանապազոր-

դեայն հաց։ Մի՛ ձանձրութեամբ եւ հեղգութեամբ աղօթէք, այլ սրտի մտօք, եւ հաստատուն հաւատով, զի աղօթքն խօսք է ընդ Աստուծոյ, վասն որոյ ջերմեռանդութեամբ եւ փափաքանօք պարտի լինել։ Յիշեցէք յաղօթս ձեր զՆախնիս եւ զՍիրելիս հանգուցեալս ի Քրիստոս, եւ պահեցէք զյիշատակս նոցա։

« Խնդրեցէք եւ տացի ձեզ, բաղխեցէք եւ բացցի ձեզ. խնդրեցէք նախ զԱրքայութիւնն Աստուծոյ եւ զարդարութիւն նորա, եւ այդ ամենայն յաւելցի ձեզ։» Հաւատացէք զի Յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զոր ինչ եւ խնդրեսցուք տացի մեզ. զի ինքն իսկ ասաց. «Մինչեւ ցայժմ ոչ ինչ խնդրեցիք յանուն իմ, խնդրեցէք եւ առնուցուք, զի զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յանուն իմ՝ տացէ ձեզ։»

Ուրեմն բեւեռեալ միշտ ի հոգիս մեր զսոսկալի օր մահուն, եւ զերկիւղ գեհենին, եւ զսէր Արքայութեանն Աստուծոյ. զղջասցուք ի վերայ մեղաց մերոց, եւ պահեսցուք զպատուիրանսն Տեառն, եւ գործեսցուք զբարիս յ՚անցաւոր աշխարհիս՝ վասն անձին, վասն ընկերին եւ վասն մերոց Հայրենեաց, աղօթելով միաբանութեամբ ոչ միայն բարբառովք, այլ սրտից եւ ոգւոց տղաղակաւ, ձայնակցեալ Մաղթանաց բանիս։



# ՄԱՂԹԱՆՔ ՈՂԲԵՐԳԱԿԱՆՔ

## ՎԱՍՆ ՀԱՄԱՅՆ ԱԶԳԻ

## ԵՒ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ՀԱՅՈՑ



«Տէր իմ եւ Աստուած իմ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ, ես ամենապախալ եւ բազում չարեօք եւ անօրէնութեամբ լցեալ ծառայս քո, անդէն յերկիր խոնարհեալ՝ կորագլուխ անձամբ եւ մեծակական ողբով ի խորոց սրտէ հառաչեմ առ Ամենագթած Աստուածդ իմ, եւ աղաչեմ։ Վասն ողորմելի եւ անտերունչ Ազգիս մերոյ աղաղակեմ առ քեզ, ով ողորմելեաց Ողորմած, անտիրացելոց Տէր, անօգնականից Օգնական, անյուսից Յոյս եւ Ապաւէն, նեղելոց եւ վշտացելոց Հանգիստ եւ Մխիթարութիւն։

«Գոչեմ առ Քեզ մեծաւ թախանձանօք. բաց Տէր զաչս քո, եւ տես զողորմելի վիճակ մեր. տես զփոքրիկ հօտս քո, թէ որպէս ցրուեալ եւ տարադրեալ ընդ ամենայն երկիր, եւ մատնեալ ի ձեռս օտար տէրանց եւ թշնամեաց եւ զրկեալ ի սեպհական բնակութեանց եւ ի Հայրենեաց մերոց։

«Ո՜հ, զի եմք որպէս զնաւ ղեկաբեկ տատանեալք յալիս ծովու առանց ղեկավարի, եւ որպէս ոչխարք մոլորեալք ի յանապատի առանց հովուի, եւ ոչ ունիմք զՄովսէս՝ որ առաջնորդեսցէ, եւ ոչ զՅեսու՝ որ ընդ-

դէմ թշնամեաց կացցէ, եւ ոչ ունիմք զՄարգարէ եւ զԱռաջնորդ, եւ ոչ զօգնութիւն իմն յուսեմք :

«Մերկացեալք յիշխանութեանց եւ յընչից, եւ անկեալք ընդ իշխանութեամբ այլոց՝ ծառայեմք թշուառութեամբ եւ աղքատութեամբ : Ժողովուրդք մեր գրաւեալք ի ներքոյ ծանր լծոյ եւ հարկի բռնաւորաց, հազիւ հայթայթանօք գտանեմք զպարուստ կենաց մերոց. զի զսերմանեալսն եւ զվաստակս մեր այլք ուտեն եւ վայելեն :

«Եկեղեցիք վայելչազարդք եւ Վանորայք պայծառաշէնք՝ որք յանուն Քո եւ ի յիշատակ Սրբոց Քոց կառուցան, եւ Հոգւոյդ Սրբոյ օծմամբն կնքեցան, եւ ամենայաղթ Խաչիդ նշանաւն պսակեցան, յորս մատչէր պատարագ Գառնդ Աստուծոյ ի փրկութիւն աշխարհի, յորս կատարէին սրբագործ եւ հոգեկեցոյց խորհուրդք Քո, յորոց ելանէին եւ վերառաքէին առ առ Քեզ ձայնք օրհնութեանց եւ փառաբանութեանց, բուրմունք հոգեւորականք, նուէրք հաճոյականք եւ աղօթք հաշտարարք. ահա՛ ըստ մեծի մասին ամայացեալք եւ աւականեալք՝ գողոց եւ գազանաց օթարան են. եղեալք :

«Խնայեա՛, Տէր, խնայեա ի սրբութիւնն՝ որ պղծեցին հեթանոսք, դարձո՛ զմեզ Տէր եւ դարձցուք առ Քեզ, նորոգեա՛ զաւուրս մեր որպէս յառաջագոյնն: Հայեաց, Տէր, յուխտ Քո, եւ արա՛ շինութիւն կործանեալ Եկեղեցւոյս, ուղղեա՛ զսեղան Սրբութեան, ժողովեա՛ զցանեալս եւ զցրուեալս: Դու, Տէր, կենդանի ես եւ մշտնջենաւոր, եւ մեք այսպէս ընդ վայր հարեալ թարթափիմք. աթոռ Քո հաստատեալ է ազգէ յազգ, եւ զմեզ այսպէս ի ձեռաց թողեր: Յիշեա՛ զմեզ Տէր, եւ մի՛ մոռանար, արա՛ զմեզ, զի Քո իսկ եմք արարածք.

ժառանգեա՛ զմեզ Դու՝ եւ մի՛ այլոց լիցուք ժառանգութիւն, ժողովեա՛ զմեզ ի Քո տեղին, եւ մի՛ ցրուեսցուք ընդ օտար տեղիս։

« Ցիրուսի ձգեաց Թշնամին զձեռն ի ցանկալիսն քո։ Մտին հեթանոսք ի ժառանգութիւնս քո, եւ պղծեցին զտաճար սուրբ քո։ Սրահք եւ Սրբութիւնք նոցա դարձան յապականութիւն։ Սուգ առին ճանապարհք նոցա։ Հատան երթեւեկք տօնից տարեկանաց նոցա։ Լռեցին ի նոցանէ ձայնք օրհնութեանց եւ փառաբանութեանց։ Գազանք եւ յափշտակողք մուտ եւ ել առնեն ի նոսա։

« Սքանչելարար դամբարանք եւ բժշկարար նշխարք սրբոց քոց որք ի նոսա. կոխան եղեն ոտից անարգաց եւ պղծոց։ Քահանայք եւ պաշտօնեայք նոցա հալածեալք։ Ուստի եղաք մեք մնացորդքս նախատինք դրացեաց եւ այպն կատականաց Թշնամեաց մերոց։

« Արդ այս ամենայն եկին եւ գան ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Քանզի մեք մեղաք, անօրինեցաք եւ ապստամբեցաք ի քէն. վասն այսորիկ եւ դու՛ Թոյլ ետուր այս ամենայն չարեաց գալ ի վերայ մեր եւ տիրել մեզ, եւ մատնել զմեզ ի ձեռս Թշնամեաց՝ տէրանց ապստամբողաց. որպէս ահա եմք տառապեալք ի վերայ ամենայն երկրի այսօր վասն մեղաց մերոց։

Ուրեմն Աստուծոյդ մերում արդարութիւն. եւ ամօթ երեսաց մերոց։

« Արդ՝ այժմ առ ձեզ դիմեսցուք՝ ձեզ Աստուած մեր. եւ ձում պատմեսցուք զցաւս մեր՝ եթէ ոչ քեզ բարկացեալդ, որ որպէս արդարութեամբ խրատեցեր եւ հարեր զմեզ, կարող ես ողորմութեամբդ անդրէն վերստին բժշկել եւ մխիթարել։

« Վասնորոյ ահա անկանիմ առաջի անոխակալիդ Աստուծոյ, եւ ըստ անսուտին գոչեմք, մեղաք յերկինս

եւ առաջի քոյ, մեղաք ստեղծողիդ մերոյ, մեղաք բարերարիդ մերոյ եւ Աստուծոյ։

«Աղաչեմ զքեզ Տէր Աստուած, դարձիր ի բարկութենէ քումմէ եւ անցո ի մէնջ զցասումն քո. մի յիշեր զմեղս մեր զառաջինս. փութապեսցէ առ մեզ ողորմութիւն քո, զի աղքատացաք յոյժ։ Զարթիր, Տէր, զարթի՛ր, արի եւ մի մերժեր զմեզ իսպառ։ Մի մոռանար զաղքատութիւն եւ զնեղութիւնս մեր։ Արի Տէր՝ օգնեա մեզ եւ փրկեա զմեզ վասն անուան քոյ, որ կոչեցեալ է ի վերայ մեր։ Մի մատներ զմեզ իսպառ, մի ցրեր զուխտս քո եւ մի ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ։ Զի դու միայն ես Տէր եւ Թագաւոր, դու միայն ես ՓՐԿԻՉ մեր եւ օգնական, դու միայն ես ապաւէն մեր եւ յոյս։ Զի բաց ի քէն զայլ ոք ոչ գիտեմք. եւ զանուն քո կարդամք հանապազ։ Տես զտառապանս Ազգիս մերոյ. հաս յօգնութիւն եւ այց արա։

«Եւ որպէս գթայիր հնոյ ժողովրդեան վասն Աբրահամու, Իսահակայ, Յակոբայ եւ վասն Դաւթի ծառայից քոց. գթա եւ այժմ նորոյ ժողովրդեանդ եւ փոքու հօտիդ, վասն Սրբուհւոյ Աստուածածնի անարատ ծնողի քոյ. Սրբոյն Յովհաննու Կարապետին եւ Մկրտչին քոյ, եւ սրբոց Առաքելոցն եւ յատուկ Լուսաւորչացն մերոց Թադէոսի եւ Բարթուղիմէոսի, եւ առաքելասարաս Հօրն մերոյ Գրիգորի բազմաչարչար Վկային քոյ, եւ Նորին Որդւոց եւ Թոռանց ընտրելոց ծառայից քոց Գրիգորեանց եւ Ներսիսեանց.

«Զի եթէ վասն բազում մեղաց մերոց եւ անօրէնութեանց առ ժամանակ մի թողեր զմեզ, դարձուցեր զերեսս քո ի մէնջ եւ տրտմեցուցեր. վասն պատուական Արեան քոյ՝ եւ վասն արդարութեան սիրելեաց քոյ երանելեաց Նախնեաց մերոց, դարձ առ մեզ, եւ

ողորմութեամբ քով մեծաւ ողորմեա՛ց մեզ. եւ ուրախացո՛ զմեզ՝ որպէս ասացեր առ Եսայեաւ։

«Լսեցի՛ եւ մեզ զայն երանաւէտ ձայնն թէ՝ Լուսաւորեա՛ց Եկեղեցիդ Հաստատնեայց եւ ուրախ լեր, զի հասեալ է լոյս քո։ Աճաւասիկ եւ դարձուցանեմ ի քեզ զխաղաղութիւն իբրեւ զգետ. եւ զմանկունս քո ի հեռաստանէ ի վերայ ուսոց խաւրեանց բարձեալ բերիցեն. Ցիրաւի այդպիսի ողորմութեան Ամենակարող Աստուծոյդ եմք միացեալ ապաստան ողորմած Աստուած։

«Ուրեմն հաշտեա՛ց ընդ միացորդաց ժողովրդեան քոյ. փրկեա՛ զմեզ մեծաւ սքանչելեօք, որպէս առ Մովսիսիւ, եւ ժողովեա զմեզ ի գոգ սիրոյդ, առաջնորդեա՛ մեզ լուսովդ քով սրբով եւ տար յերկիրն ցանկալի՝ ուր առաջին նշան Հաշտութեան եսուր մարդկան զերփնագեղ Ծիածանն պայծառափայլ.

«Աղաչեմ զքեզ, Տէր իմ եւ Աստուած իմ, վասն ամայացեալ եւ անչքացեալ Հայրենեաց, Վանորէից եւ Եկեղեցեաց մերոց, ծագեա զարեգակդ վերակենդանութեան ի նոսա. մի՛ յիշեր զմեղս մեր, որովք բարկացուցաք զքեզ. այլ յիշեա զՍուրբսն քո յորոց անուն կառուցան եկեղեցիք մեր, եւ որոց արեամբ շաղախեալ է ամենայն երկիր մեր, հեղեալ վասն անուանդ քում սրբոյ։

«Ուրեմն աղաչեմ զքեզ՝ ողորմած եւ գթած Աստուած, Ի սէր սրբոց եկեղեցեաց եւ սրբութեանց քոց. բարեխօսութեամբ քեզ հաճոյացեալ սրբոց Նախնեացն մերոց, եւ յիշատակաւ չարչարանաց եւ պատուական արեան եւ մաքուր Նշխարաց եւ Դամբարանաց նոցին, ողորմեա եւ այց արա։

Զի որպէս տեսին աչք մեր զամայութիւն եւ զաւերականութիւն նոցին վասն մեղաց մերոց, տուր մեզ տե-

*սանել վերստին զվերանորոգութիւն եւ զպայծառութիւն նոցին ։*

*Եւ որպէս հատան եւ լռեցին ձայնք օրհնութեանց եւ փառաբանութեանց ի նոցանէ, արա զի վերստին զօրասցին եւ բարձրասցին ի փառս անուան քոյ. զի ծանիցեն ամենեքեան թէ կոչեցեալ է անուն քո ի վերայ մեր՝ եւ եմք սեպհական ժողովուրդք Եդեմական դրախտին, նախասահմանեալք* ԳՈՐԾԵԼ ԶՆԱ ԵՒ ՊԱՀԵԼ։

*Փառք, Պատիւ եւ Երկրպագութիւն ի Բարձունս Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյդ Սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից Ամէն ։*



# ՎՐԻՊԱԿՔ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 15 | 16 | եւս իմ | եւ իմս |
| 15 | 28 | ժովովրդական | ժողովրդական |
| 17 | 12 | 24 ին | 27 ին |
| 97 | 20 | եպիսկոտոս | Եպիսկոպոս |
| 123 | 15 | զանձին | յանձին |
| 192 | 23 | Գլարիկս | Գարիկս |
| 251 | 2 | ՑՈՂԵԱԼ | ՑՕՂԵԱԼ |
| 251 | 13 | ՑՂՈՍՈՎ | ՑՈԻՍՈՎ |